ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ




9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1958 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



# ԴԵՊԻ ՍՄԿՊ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ընթացիկ տարվա Սեպտեմբերյան պլենումի որոշմամբ 1959 թվականի հունվարի 27-ին հրավիրվում է ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարը հետևյալ օրակարգով՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. կոնտրոլ թվերը»։ Այդ հարցի մասին համագումարում զեկուցումով հանդես է գալու ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովը։

Մեր երկրի աշխատավորները բուռն խանդավառությամբ ընդունեցին այդ հաղորդագրությունը, որը սովետական մարդկանց մոտ ստեղծագործական աշխատանքի նոր եռանդ ու կորով առաջացրեց։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի համագումարները միշտ էլ պատմական նշանավոր իրադարձություններ են հանդիսացել մեր պարտիայի և ամբողջ երկրի կյանքում, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման զարգացման մեջ։ Անցյալ տարի նոյեմբերին Մոսկվայում տեղի ունեցած սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Դեկլարացիայում ասված է. «ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները մեծ նշանակություն ունեն ոչ միայն ՍՄԿՊ-ի և ՍՍՌՄ կոմունիստական շինարարության համար, այլև դրեցին միջազգային կոմունիստական շարժման նոր էտապի սկիզբը, նպաստեցին նրա հետագա զարգացմանը մարքսիզմ-լենինիզմի հիման վրա»։

ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները հետևողականորեն կենսագործելու շնորհիվ սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վերջին տարիներին խոշոր հաջողություններ է ձեռք բերել սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր ճյուղերի զարգացման, աշխատավորների բարեկեցության հետագա վերելքի գործում։ Բարձր տեմպով է առաջ ընթանում սոցիալիստական արդյունաբերությունը, և ամենից առաջ՝ բովանդակ ժողովրդական տնտեսության հիմքը կազմող ծանր ինդուստրիան։ Այդ բանի վառ վկայությունն է այն, որ պարտիայի XX համագումարից հետո անցած երկու տարում (1956—1957 թվականներին) գործող ձեռնարկությունների շարքն անցան 1600 արդյունաբերական նոր ձեռնարկություններ։ Այս տարի լիովին ավարտվեց աշխարհի խոշորագույն՝ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի կառուցումը՝ 2,3 միլիոն կիլովատ կարողությամբ։ Միայն Կույբիշևի Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը 5 անգամ ավելի էլեկտրաէներգիա է տալիս, քան նախառևոլյուցիոն Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները միասին վերցրած։ Կույբիշևի հիդրոշինարարներին ուղղված իրենց ողջույնի մեջ ՍՄԿՊ Կենտկոմն ու ՍՍՌՄ Մինիստրների Սովետը նշել են, որ այդ հիդրոէլեկտրակայանի շինարարությունն ավարտելու և այն լրիվ

կարողությամբ գործարկելու շնորհիվ ևս մի խոշոր քայլ արվեց կոմունիզմի
նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում։

«Մեր պարտիայի ուժն այն է,— ասում է ընկ. Խրուշչովը,— որ նա,
առաջնորդվելով մարքս-լենինյան տեսությամբ, զարգացման յուրաքանչյուր նոր
պատմական փուլում կարողանում է գտնել այն գլխավոր օղակը, որից բռ-
նելով կարելի է հաջողությամբ լուծել կոմունիզմի ուղիով երկրի առաջընթացի
կարևորագույն խնդիրը»։ ՍՍՌՄ զարգացման արդի փուլում այդ օղակն էր
արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը, կոլ-
տնտեսային կարգի հետագա ամրապնդման ու ՄՏ կայանները վերակազմե-
լու միջոցառումները, որոնք իրականացվեցին պարտիայի կողմից։ Այդ մի-
ջոցառումներն արդեն հիանալի արդյունքներ են տալիս։

ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի 1958 թվականի
առաջին կիսամյա պլանը կատարված է 104 տոկոսով, կամ անցյալ տարվա
նույն ժամանակամիջոցի համեմատությամբ երկրի արդյունաբերական ար-
տադրանքի արտադրությունը աճել է 10,5 տոկոսով։ Ավելի արագ տեմպով է
զարգանում ծանր ինդուստրիան։

Այս տարվա առաջին կիսամյակին ՍՍՌՄ-ում արտադրվել է 19,3 միլիոն
տոննա չուգուն, 27 միլիոն տոննա պողպատ, 21,3 միլիոն տոննա գլանվածք,
այսինքն այնքան, որքան արտադրվել էր 1950 թ. ամբողջ տարվա ընթացքում։
1958 թվականի առաջին կիսամյակում արտադրվել է ավելի շատ քարածուխ,
(245 միլիոն տոննա), քան ամբողջ 1949 թվականի ընթացքում, ավելի շատ
էլեկտրաէներգիա է արտադրվել (114 միլիարդ կիլովատ ժամ), քան 1951
թվականին, համարյա նույնքան տրակտորներ (109 հազար ֆիզիկական
միավոր), որքան ամբողջ 1953 թվականին և մոտավորապես այնքան բրդյա
գործվածք (146 միլիոն մետր), որքան 1950 թվականին և մոտավորապես
այնքան կոշիկ (175 միլիոն զույգ), որքան 1937 թվականին։

Ներկայումս Սովետական Միությունն արդյունաբերական արտադրանքի
արտադրությամբ առաջ է անցել Եվրոպայի կապիտալիստական բոլոր երկրնե-
րից և խնդիր է դրել հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այդ ամբող-
ջովին ռեալ ու հնարավոր է, որովհետև մեր Հայրենիքը զգալիորեն ավելի արագ
է առաջ շարժվում, քան կապիտալիստական երկրները։ Անցած 40 տարում՝
1918 թվականից մինչև 1957 թվականը ՍՍՌՄ-ում արդյունաբերական ար-
տադրանքի աճման տարեկան միջին տեմպը կազմել է 10,1 տոկոս, իսկ
ԱՄՆ-ում՝ 3,2 տոկոս, Անգլիայում՝ 1,9 տոկոս, Ֆրանսիայում՝ 3,2 տոկոս։
Սովետական Միությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներից առաջ է անցել
ոչ միայն արտադրանքի տեմպով, այլև տարեկան միջին բացարձակ թվերով։
Այսպես, 1953—1957 թվականներին ՍՍՌՄ-ում երկաթահանքերի հանույթի
միջինը տարեկան ավելացել է 6,1 միլիոն տոննայով, չուգունի արտադրու-
թյունը՝ 2,4 միլիոն տոննայով, պողպատինը՝ 3,26 միլիոն տոննայով, քա-
րածխինը՝ 30,6 միլիոն տոննայով, ցեմենտինը՝ 3,2 միլիոն տոննայով, բրդե
գործվածքինը՝ 18,4 միլիոն մետրով, մինչդեռ այդ նույն ժամանակամիջոցում
ԱՄՆ-ում միջին հաշվով տարեկան երկաթահանքի հանույթը պակասել է 3,0
միլիոն տոննայով, չուգունի արտադրությունն ավելացել է ընդամենը 0,8
միլիոն տոննայով, պողպատինը՝ 0,3 միլիոն տոննայով, քարածխինը՝ 6,2
միլիոն տոննայով, ցեմենտինը՝ 1,2 միլիոն տոննայով, բրդե գործվածքինը՝
պակասել է 10,8 միլիոն մետրով։



Այս թվերը վառ կերպով ցուցադրում են տնտեսության սոցիալիստական
սիստեմի մեծ առավելությունը կապիտալիստականի հանդեպ և երաշխիք են,
որ մոտ ապագայում ՍՍՌՄ-ը կգերազանցի ԱՄՆ-ին արդյունաբերական ար-
տադրության ծավալով, որ երկու սիստեմների խաղաղ մրցակցությունում
սոցիալիզմը կհաղթանակի կապիտալիզմին։

Կոլտնտեսային կարգերի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային
կայանների վերակազմման ուղղությամբ պարտիայի ու կառավարության կող-
մից իրականացվող ձեռնարկումները ապահովեցին կոլտնտեսային գյուղա-
ցիության նախաձեռնության ու ակտիվության նոր վերելք։ Պարտիայի ու
ժողովրդի հաստատակամ ջանքերով հաղթահարվեց անասնաբուծության տե-
վական ետ մնալը։ 1958 թվականին, 1954 թվականի հունվարի մեկի համե-
մատությամբ ՍՍՌՄ-ում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավե-
լացել է 11 միլիոն գլխով (այդ թվում կովերինը՝ 6,2 միլիոնով), խոզերինը՝
11 միլիոնով, ոչխարներինը՝ 20,4 միլիոնով։ Երկրում կաթի արտադրությունը
1954 թվականի 38,2 միլիոն տոննայից 1957 թվականին բարձրացել է մինչև
54,7 միլիոն տոննայի։ Այս տարի երկրի դաշտերում աճեցված է հացահատի-
կի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների ավելի առատ բերք, քան երբևէ։
«Համարյա ամենուրեք,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— կոլտնտեսություններն
ու սովետական տնտեսությունները հավաքում են հացահատիկային և մյուս
գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք։ Երկիրը կստանա ավելի
շատ հացահատիկ, քան բերքատվության ռեկորդային 1956 թվականին, ավե-
լանում է կաթի, մսի, յուղի և անասնաբուծական մյուս մթերքների արտա-
դրությունը»։

Արդեն անցյալ տարի Սովետական Միությունը գյուղատնտեսական մի
շարք մթերքների արտադրությամբ մոտեցել և նույնիսկ գերազանցել է ԱՄՆ-ին։
Սովետական Միությունում կաթի արտադրությունը 1957 թվականին կազմեց
ԱՄՆ-ի արտադրության մոտավորապես 95 տոկոսը, կենդանական յուղի ար-
տադրությունը մի փոքր բարձր էր, քան ԱՄՆ-ում։ Սովետական Միությունը
Ամերիկայի Միացյալ Նահանգներին արդեն գերազանցում է ցորենի արտա-
դրության ծավալով՝ ավելի քան երկու անգամ, շաքարի ճակնդեղի արտա-
դրությամբ մոտավորապես երեք անգամ, բրդի արտադրությամբ՝ մոտավորա-
պես երկու և կես անգամ։ ՍՍՌՄ-ն ԱՄՆ-ին և աշխարհի մյուս բոլոր եր-
կրներին զգալիորեն գերազանցում է բամբակի բերքատվությամբ։

Սովետական պետության հոգատարության շնորհիվ սոցիալիստական
գյուղատնտեսության նյութա-տեխնիկական հզոր բազա է ստեղծված։ Եթե
1932 թվականի վերջերին ՍՍՌՄ ամբողջ գյուղատնտեսությունն ուներ 148
հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 14 հազար բեռնատար ավտոմո-
բիլ և 14 հազար հացահատիկային կոմբայն, ապա այս տարվա սկզբներին
կար մոտավորապես մեկ միլիոն 700 հազար տրակտոր, 660 հազար բեռնա-
տար ավտոմոբիլ և 450 հազար հացահատիկային կոմբայն։

Կոմունիստական պարտիան չունի այլ շահեր, քան ժողովրդի շահերն են։
Պարտիայի քաղաքականության, նրա ամբողջ պրակտիկ գործունեության նպա-
տակը եղել ու մնում է այն, որ տարեցտարի բարելավվի բանվորների, կոլ-
տնտեսականների, ինտելիգենցիայի կենսամակարդակը, ապահովվի մեր
երկրի գիտության ու կուլտուրայի անընդհատ առաջընթացը։ Միայն դրա
շնորհիվ է, որ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի բուռն

վերելքի հետ միասին զգալիորեն աճել է մեր Հայրենիքի ազգային եկամուտը, անշեղորեն բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը, բուռն կերպով զարգանում է սովետական գիտությունն ու կուլտուրան: Բավական է ասել, որ մեր երկրի բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1950 թվականից մինչև 1957 թվականը բարձրացել է մեկ ու կես անգամ: Աշխարհում առաջինը ՍՍՌՄ-ում կառուցվեց ատոմային էլեկտրակայան և ջրարկվեց ատոմային էներգիայով գործող սառցահատ նավ: Վերջերս Սովետական Միությունում գործարկվեց նոր հզոր ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը՝ 100 հազար կիլովատ կարողությամբ, որի հզորությունը մոտակա ապագայում հասցվելու է 600 հազար կիլովատի: Երկրի արհեստական 3 արբանյակները սովետական գիտության, համամարդկային գիտության փառքի գագաթնակետը հանդիսացան:

Սովետական Միությունն ապրում է տնտեսական ծաղկման և բարգավաճման աննախընթաց վերելք: Մեր երկրի աշխատավորները, որոնց ոգեշնչում և ուղղություն է տալիս Կոմունիստական պարտիան, հաջողությամբ լուծում են ՍՍՌՄ տնտեսական հիմնական խնդիրը, այն է՝ պատմական կարճ ժամանակամիջոցում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնել առավել զարգացած կապիտալիստական երկրներին:

Հենվելով սոցիալիստական կարգերի առավելությունների վրա, նախատեսվում է առաջիկա 15 տարում մեր երկրի ինդուստրիայի կարևորագույն ճյուղերի արտադրանքի թողարկման աճ 2—3 անգամ, այն հաշվով, որպեսզի տարեկան արտադրվի երկաթահանք՝ 250—300 միլիոն տոննա, չուգուն՝ 75—85 միլիոն տոննա, պողպատ՝ 100—120 միլիոն տոննա, քարածուխ՝ 650—750 միլիոն տոննա, նավթ՝ 350—400 միլիոն տոննա, բնական գազ՝ 270—320 միլիարդ խորանարդ մետր, էլեկտրաէներգիա՝ 800—900 միլիարդ կիլովատ ժամ, ցեմենտ՝ 90—110 միլիոն տոննա, շաքար՝ 9—10 միլիոն տոննա, բրդյա գործվածք՝ 550—650 միլիոն մետր, կոշիկեղեն՝ 600—750 միլիոն զույգ: Պարտիան ու կառավարությունը միջոցառումներ են ձեռնարկել առաջիկա 10—12 տարում զգալիորեն ավելացնելու բնակարանային ֆոնդը, այն հաշվով, որպեսզի երկրում վերջ տրվի բնակարանների պակասին:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության վարած լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ բուռն կերպով զարգանում են Սովետական բոլոր ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսությունն ու կուլտուրան: Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956—1957 թվականներին աճել է 20 տոկոսով: Առավելապես աճել են լեռնահանքային արդյունաբերությունը, մեքենաշինությունը և մետաղամշակումն ու քիմիական արդյունաբերությունը: Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի 1958 թվականի առաջին կիսամյա պլանը կատարված է 105 տոկոսով, կամ 1957 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է 13 տոկոսով: Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ռաֆինատ պղնձի արտադրությունն ավելացել է 19 տոկոսով, 100 կիլովատից բարձր կարողություն ունեցող գեներատորներինը՝ 134 տոկոսով, մետաղահատ հաստոցներինը՝ 153 տոկոսով, քիմիական արդյունաբերությունը՝ 123 տոկոսով:

ՀԿՊ Կենտկոմի օրերս տեղի ունեցած պլենումը որոշեց 1958 թվականի դեկտեմբերի 25-ին հրավիրել Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX



արտահերթ համագումար, որը քննության է առնելու «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսները և ընտրելու է պարտիայի XXI համագումարի պատգամավորներ:

Ամբողջ սովետական ժողովուրդը, նրա հետ միասին Հայաստանի աշխատավորները բուռն խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի՝ պարտիայի XXI արտահերթ համագումար հրավիրելու մասին որոշումը: Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջերմորեն ողջունեցին նաև Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX արտահերթ համագումար հրավիրելու վերաբերյալ Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի պլենումի որոշումը: Ամենուրեք հնչում է սովետական մարդկանց հայրենասիրական խոսքը՝ արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու իրենց փառապանծ պարտիայի արտահերթ համագումարը: Ղափանի հանքվարչության Նոր Բարաբաթում, կոմերիտմիության անվան, № 7—10 հանքերի ու Ֆլոտացիոն ֆաբրիկայի կոլեկտիվները, հաշվի առնելով իրենց հնարավորությունները, մրցություն են ծավալել ի պատիվ ՍՄԿՊ XXI համագումարի և պարտավորվել են տարեկան պլանները կատարել ժամկետից 20—25 օր շուտ: Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի կարբիդագործները ողջունելով ՍՄԿՊ XXI համագումար հրավիրելու մասին պարտիայի Կենտկոմի որոշումը՝ պարտավորվել են 1958 թվականի արտադրանքի թողարկման պլանը կատարել այս տարվա դեկտեմբերի 29-ին:

Ի պատիվ ՍՄԿՊ XXI համագումարի լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը կոլտնտեսային գյուղում: Հոկտեմբերյանի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսականները պայքարում են հեկտարից 24-ի փոխարեն 30 ցենտներ բարձրորակ բամբակ հավաքելու և մթերակայան ուղարկելու համար:

Սովետական Միությունն ապրում է տնտեսական և հոգևոր ուժերի ծաղկում: Մեր երկրի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի պրակտիկ գործունեության մեջ դրսևորվում է իսկական պայքար՝ հանուն կոմունիզմի, հանուն մարդկության երջանկության:

Պարտիայի XXI արտահերթ համագումարը նախապատրաստվում է այնպիսի պայմաններում, երբ մեր երկրի, ինչպես նաև սոցիալիզմի լագերի մյուս երկրների էկոնոմիկան չտեսնված վերելք է ապրում: ՍՍՌՄ-ի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս պետությունների հաջողությունները, նրանց եղբայրական համագործակցությունն ու փոխադարձ օգնությունն է՛լ ավելի են արագացնում մեր առաջընթացը դեպի կոմունիզմ և ամուր պատվար հանդիսանում ժողովուրդների ազատության ու խաղաղության համար:

Սովետական ժողովուրդը էլ ավելի սերտորեն համախմբված իր հարազատ, մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչ Կոմունիստական պարտիայի շուրջը, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, արտադրական բարձր ցուցանիշներով կդիմավորի ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարը:

---

# ԲԱՔՎԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԱՆ

Քառասուն տարի առաջ, 1918 թվականի սեպտեմբերի 20-ին, անդրկասպյան ավազուտներում անգլիական ինտերվենտների և նրանց ստոր գործակալ էսեռա-մենշևիկյան բանդիտների կողմից չարաննենգորեն գնդակահարվեցին Բաքվի հերոսական Կոմունայի բոցաշունչ ղեկավարները՝ 26 անմոռաց կոմիսարները։ Բաքվի Կոմունան հանդիսացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի դրոշակակիրն Անդրկովկասում, ժողովուրդների լենինյան բարեկամության խորհրդանիշը։ Հաղթական կոմունան նոր թափ հաղորդեց բոլշևիկյան կազմակերպությունների կողմից գլխավորվող Անդրկովկասի բանվորների և աշխատավոր գյուղացիների պայքարին՝ ընդդեմ ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի և օտարերկրյա իմպերիալիստական գայլթիչների, հանուն Սովետական իշխանության հաղթանակի։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը հաղթանակեց Կոմունիստական պարտիայի և նրա հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, նոր դարաշրջան բացեց մարդկության պատմության մեջ՝ կապիտալիզմի կործանման, կոմունիզմի կառուցման դարաշրջանը։

Մեծ Հոկտեմբերը ոչնչացրեց ազգային և սոցիալական շահագործումը, հնարավորություն տվեց ցարական Ռուսաստանի՝ գաղութային վիճակում ապրող ժողովուրդներին, այդ թվում՝ Անդրկովկասի բազմազգ ժողովուրդներին, կանգնելու ազգային վերածննդի սոցիալիստական ուղու վրա։

Բաքվի հերոսական պրոլետարիատը Անդրկովկասում առաջինն արձագանքելով Մեծ Հոկտեմբերին, անվերապահորեն կանգնեց նրա դրոշի տակ և զենքը ձեռքին պայքարի ելավ երկրամասում Սովետական կարգերի հաղթանակն ապահովելու համար։ 1917 թվականի հոկտեմբերի 31-ին Բաքվում հայտարարվեց Սովետական իշխանություն։ Անհապաղ ցրելով բուրժուական դիկտատուրայի օրգանները, Բաքվի Սովետը մի շարք միջոցներ ձեռնարկեց նոր իշխանությունը ամրապնդելու, ռևոլյուցիոն ալիքը երկրում ծավալելու նպատակով։

Բաքվի Սովետը 1917 թվականի նոյեմբերի 17-ի հրապարակած իր կոչում ազդարարում էր. «Քաղաքացինե՛ր, բոլորը, ովքեր ցանկանում են ժողովրդի բարօրության, խաղաղության և կարգի ամենաշուտ հաստատում տանջված ու խոշտանգված երկրում, պետք է անհապաղ ու վճռականորեն կանգնեն նոր կառավարության կողմը, Լենինի գլխավորած ժողովրդական կոմիսարների կառավարության կողմը» (Ստ. Շահումյան, Երկեր, հատ. 2, էջ 114—115, Մոսկվա, 1957 թ.)։

Բաքվի կոմունայի վարած բոլշևիկյան սկզբունքային գծի շնորհիվ, օր-



ըստօրե բարձրանում էր նրա հեղինակությունը աշխատավոր մասսաների աչքում։ Սակայն Անդրկովկասում ստեղծվել էին ներքին և արտաքին յուրահատուկ պայմաններ։ Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաների կոնտրռևոլյուցիոն բլոկը, օտարերկրյա իմպերիալիստների ակտիվ օգնությամբ վայրագ կռիվ էր մղում ռևոլյուցիոն շարժման դեմ։ Բաքվի Սովետում այդ ժամանակ մեծամասնություն էին կազմում էսեռները, դաշնակները, մենշևիկները։ Անդրկովկասյան կոմիսարիատը և ապա օրապակաս սեյմը Անդրկովկասը կտրելով Ռուսաստանից, իրենց հակաժողովրդական քաղաքականությամբ ամրապնդում էին բուրժուազիայի, ազնվականության ու խաների տիրապետությունը։ Նրանք դանակ էին խրում ռևոլյուցիայի թիկունքը, խեղդում մինչև իսկ փետրվարյան ռևոլյուցիայի շնորհիվ ձեռք բերած չնչին ազատությունները։

Կովկասը կանգնած էր անդունդի եզրին։ Ռևոլյուցիայի գործը, ինչպես նշել է Շահումյանն այդ օրերին, Ռուսաստանում ոչ մի տեղ այնպիսի վտանգավոր վիճակում չէր, ինչպես Կովկասում։ 1917 թվականի դեկտեմբերի 16-ին Սովետական Ռուսաստանի Ժողկոմսովետը Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկեց Կովկասում ստեղծված դրությունը և որոշեց՝ Բաքվի Սովետի Նախագահ Ստ. Շահումյանին նշանակել Կովկասի Գործերի Ժամանակավոր Արտակարգ Կոմիսար։

1917 թվականի դեկտեմբերի 10—23-ը Թիֆլիսում տեղի ունեցավ Կովկասյան բանակի 2-րդ համագումարը, որն անցավ բոլշևիկյան ոգով և որոշումներ ընդունեց երկրամասում սովետական կարգերի հաղթանակն ապահովելու համար։

Վ. Ի. Լենինը հետևում էր Կովկասի բոլշևիկների պայքարին, քաջալերում նրանց, օգնում միջազգային բարդ իրադրության մեջ ճիշտ կողմնորոշվելու, ճիշտ քաղաքականություն վարելու։ Հավանություն տալով Կովկասի Գործերի Արտակարգ Կոմիսար Ստ. Շահումյանի գործունեությանը, Վ. Ի. Լենինը 1918 թվականի փետրվարի 14-ին հեռագրել է.

«Թանկագին ընկեր Շահումյան։

Շատ շնորհակալ եմ նամակի համար, մենք հրճվանքի մեջ ենք ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— և մենք կհաղթենք։

Դժվարություններն անհաշիվ են։ Առայժմ մեզ փրկում են իմպերիալիստների հակասությունները, կոնֆլիկտներն ու պայքարը։ Կարողացեք օգտագործել այդ կոնֆլիկտները. առայժմ հարկավոր է դիվանագիտություն սովորել։

Լավագույն ողջույններ ու ցանկություններ և ողջույն բոլոր բարեկամներին» (Երկեր, հ. 35, էջ 359)։

Չնայած երիտասարդ Սովետական Ռուսաստանի ծանր պայմաններին, ՌՍՖՍՌ Ժողկոմսովետը փետրվարին Բաքվի Սովետին բաց թողեց 30 միլիոն 800 հազար ռուբլի դրամ։

Բաքվի և Անդրկովկասի աշխատավորների ռևոլյուցիոն պայքարի նոր վերելքը կատաղեցրեց կոնտրռևոլյուցիոներներին, որոնք օտարերկրյա գայլթիչների թելադրանքով Անդրկովկասի և Դաղստանի ռեակցիոն ուժերի հետ համագործակցած դավադրություն և խռովություն էին պատրաստում Սովետական իշխանության դեմ։ 1918 թվականի մարտի 30-ից մինչև ապրիլի 1-ը արյու-

նահեղ մարտեր տեղի ունեցան Բաքվում, որոնք հրահրել էին մուսավաթիստները։ Ռևոլյուցիայի և կոնտրռևոլյուցիայի ուժերի միջև ծավալված այդ պայքարն ավարտվեց կոնտրռևոլյուցիոն ուժերի ջախջախմամբ, Բաքվի պրոլետարիատի հաղթանակով։ Ապրիլի 1-ին Բաքվում հաղթանակեց Սովետական իշխանությունը՝ ստեղծվեց Կոմունան։ Մուսավաթիստական բանդաները պարտություն կրելով՝ նահանջեցին և ամրացան Ելիզավետպոլում։ Նրանք Թուրքիայից և Դաղստանից նոր համալրում ստանալով շարունակեցին հետագա արշավանքները Բաքվի վրա։

Կոմունայի հաստատումով Անդրկովկասը թևակոխեց զինված կռվի շրջանը։ Արյունահեղ մարտերում կոտրելով թշնամու կատաղի դիմադրությունը, հաղթանակեց Բաքվի Կոմունան, որի հաստատումից հետո բոլշևիկները բառիս բուն իմաստով Բաքվում դրության տերը դարձան։

Ապրիլի 25-ին Բաքվի Սովետը հաստատեց Բաքվի նահանգի ժողովրդական Կոմիսարների Սովետը, որն իր առջև խնդիր էր դրել սերտ կապ պահպանել համառուսաստանյան Կենտրոնական իշխանության հետ և հարմարվելով տեղական պայմաններին՝ կյանքի մեջ կիրառել Ռուսաստանի բանվորա-գյուղացիական Կառավարության ժողովրդական Կոմիսարների Սովետի դիրեկտիվներն ու կարգադրությունները։

Բաքվի ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ և Արտաքին Գործերի ժողովրդական Կոմիսար ընտրվեց Լենինի հավատարիմ զինակից, Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչ Ստեփան Շահումյանը, որն իր կյանքը նվիրեց բանվոր դասակարգի հաղթանակի մեծ գործին։

Բաքվի Կոմունայի փայլուն գործունեությունը լավագույն ապացույցը եղավ լենինյան այն թեզի, որ արթնացած Արևելքը հաստատ քայլերով ընթանալու է Մեծ Հոկտեմբերի ճանապարհով։

Այն խոր հմայքը, որը վայելում էր Բաքվի Կոմունան ողջ Անդրկովկասի աշխատավորների սրտերում, վկայում էր նրա լենինյան ղեկավարության մասին։ Խոշորագույն և պայծառ բոլշևիկ Ստ. Շահումյանի հետ, կոմունայի ղեկի մոտ էին կանգնած աննկուն բոլշևիկներ Ալ. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Իվ. Ֆիոլետովը, Գր. Կորգանովը, Ն. Կոլեսնիկովան, Ն. Նարիմանովը, Ա. Ամիրյանը, Յ. Զևինը, Ս. Հովսեփյանը, Իվ. Մալիգինը և ուրիշներ։

Մայիսի 1-ին Բաքվի ժողկոմսովետը հատուկ դեկլարացիա ընդունեց, ուր նշված էր Կոմունայի առջև ծառացած հիմնական խնդիրները։ Դեկլարացիայում հատկապես շեշտված էր բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման հարցը։

Կազմակերպելով քաղաքի ակտիվ պաշտպանությունը, անհավասար մարտեր մղելով ներքին ու արտաքին թշնամու հարձակումների դեմ, Բաքվի ժողկոմսովետը պատմական կարճ ժամանակամիջոցում իրականացրեց մի շարք սոցիալիստական միջոցառումներ։ Բաքվի Սովետն ամենից առաջ ձեռնամուխ եղավ հին պետական ապարատի փշրման և նոր, սովետական ապարատի ստեղծման դժվարին գործին։

Ապրիլի 20-ին Բաքվի Ռևոլյուցիոն Պաշտպանության Կոմիտեի դեկրետով ցրվեց քաղաքային դուման, որը հանդիսանում էր կոնտրռևոլյուցիոն ուժերի բույնը, ինքնավարության ֆունկցիաները հանձնվեցին բանվորների, զինվորների և նավաստիների դեպուտատների Սովետին։ Հրամանագիր ընդունվեց հայկական ազգային խորհուրդը ցրելու և նրա զորամասերը լուծար-



քելու մասին, որոշվեց հայկական հատուկ ազգային զորամասերը միաձուլել գոյություն ունեցող և նոր կազմվող ինտերնացիոնալ սովետական զորամասերի հետ։

Բաքվի ժողկոմսովետը ծրագրային դեկրետ ընդունեց հողի ընդերքն ազգայնացնելու մասին (մայիսի 29-ին), որի հիմքում ընկած էին հողի մասին լենինյան դեկրետների սկզբունքները, ձկնարդյունաբերությունը ազգայնացնելու մասին (մայիսի 18-ին) և այլն։

Տնտեսական-քաղաքական կարևոր նշանակություն ուներ նավթարդյունաբերության ազգայնացումը։ Բաքվի նավթն անհրաժեշտ էր Սովետական Ռուսաստանին երկրի պաշտպանունակությունը բարձրացնելու և ժողովրդական տնտեսության կարիքները հոգալու համար։ Բաքվի Կոմունան հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, կոտրելով կոնտրռևոլյուցիայի դիմադրությունը, ազգայնացրեց նավթարդյունաբերական ձեռնարկությունները։

Դեռևս ապրիլի 13-ին ժողկոմսովետին գրած նամակում Ստ. Շահումյանը նշում է, որ «Բաքվում մեր ունեցած հաղթանակից հետո, Սովետը վերջնականապես ամրացավ, մենք հնարավորություն ունենք անցկացնելու լուրջ միջոցառումներ, նավթարդյունաբերության ազգայնացման հարցը վաղուց է լուծված, որը պատրաստվում ենք իրականացնել։ Նավթն այժմ մեր տնօրինության տակ է»։

Մայիսի 22-ին Ռուսաստանի ժողկոմսովետը Վ. Ի. Լենինի առաջարկությամբ որոշեց ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդի վառելիքի բաժնին տրամադրել 100 միլիոն ռուբլի՝ Բաքվից նավթ արտահանելու և նավթահանքերի բանվորների աշխատավարձը վճարելու համար։ 1918 թվականի հունիսին Ռուսաստանի ժողկոմսովետը հաստատեց նավթարդյունաբերության ազգայնացման վերաբերյալ դեկրետը, որից անմիջապես հետո մեծ չափով ավելացավ նավթի փոխադրումը։ Թե որքան ճիշտ էր նավթարդյունաբերության ազգայնացման վերաբերյալ Կոմունայի քաղաքականությունը, կարող է վկայել թեկուզ այն փաստը, որ եթե մինչև ազգայնացումը՝ (մինչև 1918 թ. մայիսը) արտահանվել էր 180 հազար տոննա նավթ, ապա հունիսին, ազգայնացումից հետո, այն հասել էր 293 հազար տոննայի։

Բաքվի Կոմունան ազգայնացրեց կասպիական առևտրական նավատորմիղը (հունիսի 5-ի դեկրետով), վերացվեցին դատական հին օրգանները և ստեղծվեցին արդարադատության նոր օրգաններ։ Վերակառուցվեց ժողովրդական լուսավորության սիստեմը, բացվեցին բանվորական դպրոցներ և այլն։

Բաքվի Սովետը հատուկ ուշադրություն էր դարձնում ռևոլյուցիայի նվաճումների պաշտպանության, աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերին։ «Սոցիալիստական նոր կարգերին,— ասել է Շահումյանը,— պետք է համապատասխանի սոցիալիստական մտածելակերպը, զգացմունքների ու հոգեբանության սոցիալիստական կերպը։ Դեպի շրջապատը եղած մանր սեփականատիրական վերաբերմունքը պետք է զիջի իր տեղը հասարակական պետական սկզբունքին։ Երկրորդ հերթական խնդիրը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Այդ խնդրի հետ կապված է աշխատանքային կարգապահության հարցը։ Գիտակցության վրա հիմնված ռևոլյուցիոն կարգապահությունը ամրանալով ռևոլյուցիայի զինվորների, կարմիրբանակայինների և բանվորների շրջանում, հզոր դաշնակից կհանդիսանա բոլոր այն

լուրջ ու ահեղ իրադարձություններում, որոնք անխուսափելիորեն սպասում են մեզ» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 635, 1948 թ.)։

Բանվոր դասակարգի և գյուղացիության ռևոլյուցիոն դաշինքի ամրապնդման գործում վճռական դեր խաղաց հողի ազգայնացումը։ Ադրբեջանի գյուղացիությունը սրտաբաց ողջունեց Սովետական իշխանության սոցիալիստական ձեռնարկումները։ Ադրբեջանական գյուղացիության մեջ համառ և բեղմնավոր աշխատանք էին կատարում Մ. Ազիզբեկովը, Ն. Նարիմանովը, Մ. Վեզիրովը և ուրիշներ։

Այնուամենայնիվ Բաքվի Կոմունայի դրությունը խիստ ծանր էր, քաղաքի բնակչությունը քաղցում էր։

Կոմունարները ռևոլյուցիոն պատերազմ էին մղում երկու ճակատում՝ ռազմական և տնտեսական։ Ժողկոմսովետն ամեն ինչ անում էր բնակչության մատակարարման գործը բարելավելու, կաշառակերությունն ու սպեկուլյացիան լիկվիդացնելու ուղղությամբ։ Պայքար էր հայտարարված սովի ոսկրոտ ձեռքի դեմ։ Մարտերում կոփված լավագույն բոլշևիկ Ջափարիձեն գլխավորում էր պայքարը սովի դեմ։ Հաղթահարելով շատ դժվարություններ, Սովետական Ռուսաստանը ռազմական և տնտեսական օգնություն էր ցույց տալիս Բաքվի պրոլետարիատին։ Միայն հունիսին Ցարիցինից Բաքու էր ուղարկվել ավելի քան 23 հազար փութ հաց, իսկ Հյուսիսային Կովկասից՝ 158 հազար փութ։ Հուլիսի 13-ին Վ. Ի. Լենինը կարգադրեց ռազմանավեր փոխադրելու Կասպից ծով։ Հուլիսի 20-ին ուկրաինական ռազմաճակատից Բաքու ուղարկվեց Պետրովի ջոկատը, իսկ 24-ին Աստրախանից Բաքու հասավ մի հեծյալ մարտկոց։ Հուլիսի վերջին և օգոստոսի սկզբներին Սովետական Ռուսաստանից կոմունարները ստացան թնդանոթներ, գնդացիրներ, հրացաններ, զրահապատ ավտոմեքենաներ։ Ռազմա-տնտեսական օգնության հետ միասին Վ. Ի. Լենինը Բաքվի պրոլետարիատին ոգեշնչում էր իր իմաստուն ցուցումներով։ Գտնվելով Ցարիցինում, ժողկոմ Ի. Վ. Ստալինը պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ միջոցառումներ էր մշակում Բաքվին օգնելու համար։ Բաքվի պրոլետարիատը բոլշևիկների ղեկավարությամբ վճռական ճակատամարտ էր մղում կոնտրռևոլյուցիայի դեմ։ Կոմունայի զինված ուժերը կարճ ժամանակամիջոցում ազատագրեցին Սալյանը, Շամախին, Քյուրդամիրը, Ղուբան և այլ վայրեր։

1918 թվականի ամռանը եվրոպական իմպերիալիստներն ու ճապոնական միլիտարիստները ներխուժեցին Սովետական Ռուսաստանի տերիտորիան։ Սկսվեց օտարերկրյա զինված ինտերվենցիայի ծանր շրջանը։ Դեռևս 1917 թվականի վերջերին անգլիական զավթիչները խոշոր ուժեր էին կենտրոնացրել Պարսկաստանում՝ Անդրկովկասի վրա արշավելու համար։ Բաքուն կուլախնձոր էր դարձել գերմանա-թուրքական և Անտանտայի իմպերիալիստական պետությունների համար։

Նախապատրաստելով Անդրկովկասի զինված ինտերվենցիան, անգլիական իմպերիալիստներն իրենց գաղութային պլանների կենսագործման ճանապարհին մեծ խոչընդոտ էին համարում Սովետական իշխանության գոյությունը Բաքվում։ Իրանում գտնվող անգլիական էքսպեդիցիոն զորքերի հրամանատար Դենստերվիլը դեռևս Բաքվի Կոմունայի ստեղծման առաջին օրերին կապեր էր հաստատել էսեռների և դաշնակցականների հետ, նախապատրաստելով հակասովետական կառավարական հեղաշրջում Բաքվում։ Դենստերվիլի վկայու-



թյամբ, դեռևս 1918 թվականի ապրիլի 23-ին դաշնակցական Ազգային խորհրդի անդամներից մեկը հատուկ ձեռնարկությամբ ներկայացել էր անգլիական էքսպեդիցիոն զորքերի շտաբը, խնդրելով նրանց օգնությունը՝ Բաքվում հակասովետական հեղաշրջում կատարելու համար։

Անգլիացիների կողմից նախապատրաստվող ավանտյուրան նշանակված էր հունիսի 12-ին։ Դավադրությունը, ինչպես նշում է Ստ. Շահումյանը Բաքվի Սովետի 1918 թվականի հունիսի 15-ի արտակարգ նիստում, նպատակ ուներ ձերբակալել Ժողկոմսովետի նախագահ Շահումյանին, ցրել ամբողջ Սովետը, այն փոխարինելով նոր կառավարությամբ, որի գլուխ պետք է կանգներ աջ էսեռների պարտիայի անդամ ոմն Իվանովը։

Ստ. Շահումյանն այդ նիստում հրապարակեց մի շարք փաստաթղթեր, որոնք անհերքելի կերպով վկայում էին այն մասին, որ դավադրությունը կազմակերպել ու ոգեշնչել էին անգլիական իմպերիալիստները։ Սակայն Բաքվի ռևոլյուցիոն բանվորների, զինվորների ու նավաստիների աչալրջության հետևանքով դավադիրները խայտառակ պարտություն կրեցին։

Կոնտրռևոլյուցիան իր այս դավադրության պարտությունից հետո նոր ուժեր հավաքեց Սովետական իշխանության վրա հարձակվելու համար։ Հուլիսին Բաքվի Կոմունայի դրությունն էլ ավելի ծանրացավ։ Բաքվի Կոմունայի համար ստեղծված այդ ծանր պայմաններում բուրժուազիայի գործակալներ էսեռները, մենշևիկները, դաշնակները և կոնտրռևոլյուցիոն մյուս պարտիաները լկտիաբար պահանջում էին Բաքու հրավիրել անգլիացիներին։ Բաքվի Կոմունայի մարտական ղեկավարները մերկացրին այդ կործանարար քաղաքականությունը։ Համաձայնողական պարտիաների ճնշման տակ, Բաքվի Սովետը ձայների աննշան տարբերությամբ՝ 259-ը ընդդեմ 236-ի, հուլիսի 25-ին որոշեց անգլիացիներին հրավիրել Բաքու։ Բաքվի բոլշևիկները Շահումյանի գլխավորությամբ մինչև վերջ վարելով անկախ միջազգային քաղաքականություն, պաշտպանում էին իրենց դիրքերը, մերկացնելով պրոլետարիատի շահերի դավաճաններին։ Վ. Ի. Լենինը և նրա զինակիցները Շահումյանին հայտնում էին, որ հարկավոր է վճռական միջոցներ ձեռնարկել և որ Բաքվի Սովետի նարոդնիկական ֆրակցիայի ամեն մի գործողությունը դիտվելու է որպես ապստամբություն և դավաճանություն։

Իրականում Բաքվի ԺԿՍ կանգնած էր կրկնակի դավաճանության փաստի առաջ։ «Ժողկոմսովետը,— ասված է Վ. Ի. Լենինին և Յա. Սվերդլովին Շահումյանի տված հեռագրերից մեկում,— չէր կարող գտնվել նրանց թվում, ովքեր հանձնվում էին թուրքական փաշաների ողորմածությանը, ոչ էլ նրանց թվում, ովքեր կողմնակից էին անգլիացիների գալուն...»։ Դասակարգային մարտերի այդ ծանր օրերին, Բաքվի ռևոլյուցիոն բանվորներն ու զինվորները չէին կորցնում իրենց հավատը ապագա հաղթանակի նկատմամբ։

Վ. Ի. Լենինը հավանություն տալով անգլիացիների նկատմամբ Բաքվի բոլշևիկների վարած քաղաքականությանը, ասել է. «Անգլո-ֆրանսիական իմպերիալիստների հետ որևէ համաձայնություն կնքելուց վճռականորեն հրաժարվելը Բաքվի ընկերների միակ ճիշտ քայլն է, քանի որ չի կարելի նրանց հրավիրել, առանց ինքնուրույն սոցիալիստական իշխանությունը, թեկուզ և կտրված տերիտորիայում, վերածելու իմպերալիստական պատերազմի ստրուկի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 9)։

Անշեղորեն կենսագործելով մեծ Լենինի ցուցումները, քայլ առ քայլ գոր-

*ծի վերածելով սոցիալիստական ռևոլյուցիայի ծրագրային պահանջները՝ Բաք-*
*վի Կոմունան Արևելքի շեմքին կոմունիզմի վեհ իդեաների հոյակապ մարմնա-*
*ցումը, ազգերի լենինյան համերաշխության ու եղբայրության սքանչելի օրի-*
*նակը հանդիսացավ։*

*Խիզախելով միջազգային իմպերիալիզմի ու նրա վարձկան կովկասյան*
*և ուժերի դեմ, անհավասար, ծանր մարտերում խիզախի մահով ընկան*
*Բաքվի 26 կոմիսարները՝ լենինյան գվարդիայի անձնուրաց մարտիկները։*
*ընկան, «կեցցե կոմունիզմը» շուրթերին և անմահացան կոմունիզմ կերտող*
*միլիոնների սրտերում, անմահացան իրենց պատմական մեծ գործով։*
*Անդրկովկասի ժողովուրդն ընթանալով Բաքվի անմահ 26 ընկերների,*
*պրոլետարիատի և մարդկության ազատագրության համար զոհված մարտիկ-*
*ների ուղիով, նորանոր հաջողություններով են պսակում կոմունիզմի կառուց-*
*ման գործը։*

---

# ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆՈՐ ՆՅՈՒԹԵՐԸ

*Այս տարվա սեպտեմբերի 20-ին լրանում է Բաքվի 26 կոմիսարների շա-*
*րանենգ սպանության 40-ամյակը, իսկ հոկտեմբերի 13-ին Կոմունիստական*
*պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ, Վ. Ի. Լենինի հա-*
*վատարիմ աշակերտ և զինակից Ստեփան Գևորգի Շահումյանի ծննդյան*
*80-ամյակը։*

*Ստ. Շահումյանը պատկանում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների լե-*
*նինյան հին գվարդիային, Ռուսաստանի բանվորական շարժման այն լուսա-*
*պայծառ առաջնորդների համաստեղությանը, որոնց մասին Վ. Ի. Լենինն*
*ասել է. «առանց «մի տասնյակ» տաղանդավոր (իսկ տաղանդները հարյուր-*
*ներով չեն ծնվում), փորձված, պրոֆեսիոնալ կերպով պատրաստված և եր-*
*կարատև դպրոցում սովորած առաջնորդների, հիանալի կերպով միմյանց հա-*
*մամիտ առաջնորդների անհնարին է ժամանակակից հասարակության մեջ*
*որևէ դասակարգի տոկուն պայքարը» (Երկեր, հ. 5, էջ 614)։*

*Ստ. Շահումյանը ո՛չ միայն թողել է բարի հիշատակ, այլև տեսական,*
*գրական-գիտական հարուստ ժառանգություն, որը խոշոր ավանդ է հանդիսա-*
*նում մարքսիստական-լենինյան տեսության գանձարանում, հատու զենք աշ-*
*խատավորների, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիա-*
*րակության գործում։ Շահումյանի բոցաշունչ ճառերը, կոչերը, հոդվածները և*
*աշխատությունները հագեցված են մարքսիստական խոր բովանդակությամբ և*
*պահպանել են իրենց այժմեականությունն ու կենսունակությունը։*

*Ստ. Շահումյանը բոլշևիկյան պարտիայի խոշոր տեսաբաններից է, «թեո-*
*րետիկական մարքսիզմի ծանր հրետանին» (Գ. Կ. Օրջոնիկիձե)։ Նա իր աշ-*
*խատություններում հետևողականորեն պրոպագանդել է մարքսիզմ-լենինիզմը։*
*Ստ. Շահումյանի աշխատություններում կարմիր թելի պես անցնում են մարք-*
*սիստական պարտիայի ղեկավար դերի, պրոլետարիատի դիկտատուրայի, բան-*
*վոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, պրոլետարական ինտերնացիո-*
*նալիզմի և մարքսիզմի այլ կարևորագույն դրույթների պաշտպանությունը։*
*Շահումյանը շատ ջանքեր է ներդրել բոլշևիկյան պարտիայի ստեղծման, նրա*
*միասնության, մարքսիստական անաղարտության պահպանման ուղղությամբ,*
*հետևողականորեն պայքարել է օպորտունիզմի, ռևիզիոնիզմի, մենշևիզմի և*
*հակամարքսիստական ամեն գույնի հոսանքների դեմ։ Լինելով ազգային հար-*
*ցի խոր գիտակ, Շահումյանն իր աշխատություններում, հատկապես «Ազգա-*
*յին հարցը և սոցիալ-դեմոկրատիան» (1906 թ.), «Ազգային կուլտուրական*
*ավտոնոմիայի մասին» (1914 թ.), «Ազգային հարցը և ռևոլյուցիոն սոցիալ-*
*դեմոկրատիան» (1916 թ.), Վ. Ի. Լենինին 1913—1914 թթ. գրած մի շարք*
*նամակներում քննարկել է ազգային հարցը, ակտիվորեն մասնակցել է Կո-*

մունիստական պարտիայի ազգային ծրագրի և քաղաքականության մշակմանը:

Ստ. Շահումյանը գրել է փիլիսոփայական մի շարք աշխատություններ («Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ» 1905 թ., «Էվոլյուցիոնիզմը ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ», 1905 թ. և այլն), որոնց մեջ պաշտպանում է դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի հիմնական դրույթները, դրսևորում է մարքսիստ-թեորետիկի իր խոշոր ստեղծագործական ընդունակությունները: Շահումյանը գտնում էր, որ դիալեկտիկական մեթոդը բոլշևիկյան պարտիայի «ուժն ու հզորությունն է»:

Արժեքավոր ավանդ են հանդիսանում Ստ. Շահումյանի՝ Վ. Ի. Լենինին և Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներին գրած նամակները: Դրանք պարտիական-քաղաքական կարևորագույն փաստաթղթեր են, որոնց մեջ փայլուն կերպով երևան են գալիս Շահումյանի տեսական բազմակողմանի ունակությունները, երկաթյա տրամաբանությունը, ռևոլյուցիոն անսպառ եռանդը:

Ստ. Շահումյանի գրական ժառանգության ի մի հավաքման ուղղությամբ մեծ աշխատանք է կատարվել: ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը, նրա Հայկական, Ադրբեջանական, Վրացական ֆիլիալները ծավալուն գործ են արել Ստ. Շահումյանի աշխատությունները հայտաբերելու և հրատարակելու ուղղությամբ: Վերջին տասնամյակում հայերեն լեզվով լույս են տեսել Ստ. Շահումյանի «Ընտիր երկեր»-ը (1948 թ.), «Գրականության մասին» (1948 թ.), «Հոդվածներ և ճառեր»-ը (1953 թ.), Երկերի առաջին հատորը (1955 թ.), երկրորդ հատորը (1957 թ.), իսկ 3-րդ հատորը լույս կտեսնի այս տարվա հոկտեմբերին և այլն: 1957 թվականին Հայկական ՍՍՌ Ա. Ֆ. Մյասնիկյանի անվան պետական ռեսպուբլիկական գրադարանը հրատարակեց «Ստեփան Շահումյան» բիբլիոգրաֆիան, որի նպատակն է ընթերցողներին և Ստ. Շահումյանի կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունն ուսումնասիրողներին օգնել՝ օգտվելու ինչպես Շահումյանի աշխատություններից, այնպես էլ հայերեն և ռուսերեն լեզուներով նրա մասին եղած գրականությունից: 1955 թվականին Մոսկվայում 50.000 օրինակ տպաքանակով ռուսերեն լեզվով երկրորդ անգամ հրատարակվեց Ստ. Շահումյանի «Գրական-քննադատական հոդվածներ» ժողովածուն, իսկ 1957—1958 թթ. նույնպիսի տպաքանակով Շահումյանի երկերի երկհատորյակը: Շահումյանի ռուսերեն երկհատորյակը, հայերեն եռհատորյակը մինչ այդ եղած հրատարակություններից ամենից առաջ տարբերվում են նրանով, որ ավելի լիակատար և ամբողջական պատկերացում են տալիս Շահումյանի գրական ժառանգության մասին: Նրանցում զետեղված են ավելի քան 100 նոր նյութեր, փաստաթղթեր, նամակներ, որոնք հայտաբերել են ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը և նրա ֆիլիալների գիտական աշխատողները, Շահումյանի զավակները և պետական այլ աշխատողներ: Բայց Շահումյանի գրչին պատկանող ոչ բոլոր աշխատություններն են հայտաբերված: Մոսկվայի, Լենինգրադի, Բաքվի, Ռիգայի, Աստրախանի, Սարատովի, Թբիլիսիի, Երևանի և մեր երկրի պետական ու պարտիական այլ արխիվներում Շահումյանի շատ նյութեր կան, որոնք սպասում են իրենց հետազոտողներին: Շահումյանի վաղ շրջանի որոշ նյութեր գտնվում են արտասահմանյան, հատկապես Բեռլինի, և այլ արխիվներում: Անհրաժեշտ է շարունակել պրպտումները Շահումյանի անհայտ նյութերը հայտաբերելու



և հրապարակելու ուղղությամբ: Շահումյանի աշխատությունները մեծ հետաքրքրություն են ներկայացնում Անդրկովկասի կոմունիստական և ռևոլյուցիոն շարժումների պատմության ուսումնասիրության գործում:

Ստորև ընթերցողների ուշադրության են ներկայացվում Ստ. Շահումյանի 11 նոր նամակ և հոդված, որոնք առաջին անգամ են հրատարակվում հայերեն*: Հրատարակվող նյութերը վերաբերում են 1908—1918 թվականներին:

Հակառակ լիկվիդատորների՝ «ստոլիպինյան բանվորական պարտիայի» ջատագովների, Շահումյանը պրոլետարական, մարքսիստական պարտիայի պահպանման լենինյան գիծ էր վարում: 1908 և 1910 թթ. Մ. Ցխակայային գրած նամակներում (տես փաստաթուղթ № 1—2, «Սուրեն» ստորագրությամբ), Շահումյանը պատմում է ռեակցիայի տարիներին Բաքվի բոլշևիկյան կազմակերպության գործունեության մասին, նշում է, որ Բաքվի պրոլետարիատը միասնական մարքսիստական պարտիայի պահպանման կողմնակից է:

1911 թվականին Ն. Կրուպսկայային գրած նամակում (տե՛ս փաստաթուղթ № 3) Շահումյանը պատմում է Պրագայի կոնֆերենցիայի նախապատրաստման ուղղությամբ Գ. Կ. Օրջոնիկիձեի կատարած աշխատանքի մասին, ցասումով է խոսում կոնֆերենցիան նախապատրաստող Արտասահմանյան Կազմակերպական Հանձնաժողովում եղած հաշտվողականների մասին, որոնք նույնիսկ նյութական օգնությունից զրկել էին Գ. Օրջոնիկիձեին:

Հայտնի է, որ 1916 թվականի վերջերին, տասնամսյա կալանքից հետո, Շահումյանին Բաքվից աքսորեցին Պովոլժյե՝ Սարատով քաղաքը, ուր նա մնաց մինչև 1917 թվականի Փետրվարյան ռևոլյուցիան: Սարատովյան աքսորում Շահումյանը շարունակում էր իր ռևոլյուցիոն գործունեությունը, հարազատներին և ընկերներին գրած նամակներում ուժ ու կորով էր ներշնչում ապագայի նկատմամբ: Դժբախտաբար Շահումյանի այդ ժամանակաշրջանի գրավոր գործերից շատ քիչ բան է հասել մեզ: Մինչև այժմ 1917 թվականի փետրվարին երեխաներին գրած մի փոքրիկ նամակ է հրապարակված, որը վկայում է երեխաների նկատմամբ Շահումյանի ցուցաբերած սիրո և հոգատարության մասին: 1917 թվականի փետրվարի 7-ին Ն. Ն. Կոլեսնիկովային գրած նամակը (տե՛ս. փաստաթուղթ № 4) որոշ տեղեկություններ է պարունակում Սարատովում Շահումյանի անցկացրած օրերի մասին, ցույց է տալիս, որ նա շարունակել է կապը Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների և նրա գործիչների հետ: 1917 թվականի հոկտեմբերին Շահումյանը Բաքվում մի շարք անգամ զեկուցումներով հանդես է եկել «Ի՞նչ բան է առանց անեքսիայի և ռազմատուգանքների հաշտությունը» թեմայով: Հենց այդ զեկուցման ոգով էլ նա «Սվոբոդնոյե սլովո» թերթի հոկտեմբերի 15-ի համարում հրապարակել է մի հոդված (տե՛ս փաստաթուղթ № 5), որը տոգորված է լենինյան գաղափարներով:

Բոլշևիկյան պարտիայի հնագույն անդամ Արշավիր Մելիքյանի այրին՝ Ե. Ն. Սոկոլովսկայա-Մելիքյանը 1957 թվականին Ա. Մելիքյանի անձնական արխիվի որոշ նյութեր հանձնեց ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվին: Ստացված նյութերի մեջ է

* Այդ աշխատությունները հիմնականում մտցված են Շահումյանի Երկերի 3-րդ հատորում, որը հրատարակության է պատրաստել ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալը:

*Ստ. Շահումյանի մի անձնական այցետոմսը՝ ուղղված Ա. Մելիքյանին (տե՛ս*
*փաստաթուղթ № 6)։ «1918 թվականին,— գրել է Մելիքյանը,— Երևանում Շա-*
*հումյանից ստացա Թիֆլիսից գրած մի փոքրիկ նամակ, որով հրավիրում էր*
*ինձ տեղափոխվել Բաքու» («Նոր Աշխարհ», № 2, 1922 թ., Թիֆլիս)։*
*1913—1914 թվականներին Վ. Ի. Լենինի և Ստ. Շահումյանի միջև ծա-*
*վալված նամակագրությունը, ինչպես նշեցինք, գլխավորապես նվիրված է ազ-*
*գային հարցին, բոլշևիկյան պարտիայի ծրագրի և ազգային քաղաքականու-*
*թյան մշակմանը։ Շահումյանը Աստրախանի աքսորավայրում Վ. Ի. Լենինից*
*ստանալով ՌՍԴԲՊ Կենտկոմի անդամների և պարտիական աշխատողների Պո-*
*րոնինոյի խորհրդակցության բանաձևը՝ ազգային հարցի մասին, նոյեմբերի*
*15-ին այդ առթիվ նամակ է գրում (Շահումյանի այդ նամակը մինչև այժմ*
*չի հայտաբերված) Վլադիմիր Իլյիչին, նրանում շոշափելով պետական լեզվի,*
*ֆեդերացիայի, ավտոնոմիայի և այլ հարցերը։ Վ. Ի. Լենինը, ծանոթանալով*
*Շահումյանի առաջադրած խնդիրներին, իր նոյեմբերի 23-ի (դեկտեմբերի 6-ի)*
*նամակում (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 19, էջ 623—627) կետ առ կետ*
*քննարկում է դրանք, բարեկամական դիտողություններ է անում և օգնում*
*Նրան ճիշտ մոտեցում հանդես բերելու ազգային հարցի լուծման գործում։*
*1918 թվականի մարտի 16-ին (3-ին) Շահումյանը Բաքվի մամուլում հրա-*
*պարակում է Վ. Ի. Լենինի վերոհիշյալ նամակի տեքստը, տալով որոշ մեկ-*
*նաբանություններ։ «Վ. Ի. Լենինի՝ ազգային հարցի վերաբերյալ նամակի առ-*
*թիվ» (տե՛ս փաստաթուղթ № 8) հոդվածում Շահումյանը նշում է, որ «Մեր*
*կողմից տպագրվող նամակը մեծ նշանակություն ունի որպես Լենինի՝ ազ-*
*գային հարցի վերաբերյալ հայացքների որոշակի և պարզ արտահայտու-*
*թյուն»։ Շահումյանը ցույց է տալիս, որ ազգերի ինքնորոշման իրավունքի*
*մասին բոլշևիկյան պարտիայի պաշտպանած հայացքները «ճշգրտորեն ար-*
*տահայտել է Վ. Ի. Լենինը դեռ 1913 թվականին», որ «ընկ. Լենինի նամակից*
*պետք է հասկանալի լինի, որ մենք կողմնակից ենք լինելու անջատման և ան-*
*ջատումը պաշտպանելու ենք այն դեպքում, երբ այդ թելադրում են աշխա-*
*տավոր մասսաների շահերը, և երբ պահանջում են իրենք, ազգի մեծամաս-*
*նությունը կազմող մասսաները»։ Շահումյանի վերոհիշյալ մեկնաբանություն-*
*ները հարստացնում են ազգային հարցի շուրջը նրա պաշտպանած հայացք-*
*ները, օգնում են ճիշտ հասկանալու նրա դիրքը ազգային հարցում։*
*Բաքվի կոմունայի տարեգրության շատ էջեր մինչև այժմ էլ անհրաժեշտ*
*չափով չեն լուսաբանված։ Ընթերցողի ուշադրությանը ներկայացվող նյութե-*
*րը (տե՛ս փաստաթուղթ № 9—11) պատմում են Շահումյանի և նրա մարտա-*
*կան ընկերների 1918 թվականի ռևոլյուցիոն գործունեության մասին, այն*
*լարված պայքարի մասին, որ Անդրկովկասի բոլշևիկները մեծ Լենինի ցու-*
*ցումներով մղել են երկրամասում սովետական կարգերի հաղթանակն ապա-*
*հովելու համար։*

**Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**



## № 1

## ՆԱՄԱԿ Մ. ՑԽԱԿԱՅԱՅԻՆ[1]

*Թանկագին Միխա։ Քո նամակը մեծ [ուշացումով] հասավ ինձ, և ես էլ դեռ*
*իմ կողմից ուշացրի պատասխանը, այնպես որ դու, հավանորեն, վճռել ես,*
*որ նամակդ չի հասել հասցեատիրոջը։ Շնորհակալություն Լուն[աչարսկու[2]]*
*ռեֆերատի մասին հաղորդելուդ համար։ Ի միջի այլոց, պարտիայի և միու-*
*թյունների վերաբերյալ այդ հայացքը մենք, բաքվեցիներս, լիովին բաժանում*
*ենք, այսինքն՝ այն, որ միությունները պետք է ստիճանաբար համակվեն*
*քաղաքականությամբ ու սոցիալիզմով, որ պետք է ստիճանաբար տեղի ունե-*
*նա պրոլետարական պայքարի բոլոր ձևերի միաձուլում որպես մեկ միաս-*
*նական ամբողջություն, որ Շտուտգարդի բանաձևը, որը «հավասարապես ան-*
*հրաժեշտ է» համարում կարծես հավիտյանս հավիտենից առանձին գոյու-*
*թյուն ունեցող պարտիան ու միությունները, կոմպրոմիսային բանաձև է և*
*այլն։ Ինձ դուր չի գալիս միայն այն արտահայտությունը, թե մեր պարտիան*
*գոյություն ունի ժամանակավորապես՝ որպես դաստիարակիչ կազմակերպու-*
*թյուն և որ նա դադարելու է գոյություն ունենալուց, անհետանալու է իր դե-*
*րը կատարելուց հետո։ Ինձ թվում է, որ մեր պարտիան ավելի յուրիվ կերպով է*
*ներկայացնում դասակարգային պայքարը, քան միությունները, և որ եթե*
*«ժամանակավոր» գոյության և անհետացման մասին խոսելու լինենք, ապա*
*այդ ավելի շուտ պետք է ասել միությունների մասին, որքան որ նրանք դեռ*
*չեն համակվել սոցիալիզմով։ Սոցիալիստական պարտիային են միանալու*
*միությունները, և ստեղծվելու է պրոլետարիատի մի միասնական դասակար-*
*գային կազմակերպություն, որը պայքար է մղելու բոլոր ձևերով ու բոլոր աս-*
*պարեզներում։ Լավ կլիներ, եթե դու ժամանակ առ ժամանակ մեզ հաղոր-*
*դեիր, թե ինչ է կատարվում այդտեղ, ինչպես այս անգամ։ Ընկերները բոլորն*
*ուրախ են, որ դու առողջ ես և քեզ լավ ես զգում։ Շատ ափսոս (բաց թո-*
*ղում*)... դանդաղ... (բացթողում) նախ՝ դու հայտնիր, թե դեռ ինչքան ես*
*ուզում մնալ այդտեղ և մի քիչ պարապել, և երկրորդ՝ մենք սարսափելի ժա-*
*մանակ ենք ապրում ֆինանսական տեսակետից՝ պրոֆեսիոնալները քաղցի են*
*մատնված բառիս տառացի իմաստով։ Հենց որ հնարավոր լինի և դու համա-*
*ձայն լինես, փող կփոխադրենք քեզ ճանապարհի համար։ Ինչ վերաբերում է*
*քո խնդրին՝ հիմա որևէ բան ուղարկելու մասին, պետք է, դժբախտաբար,*
*ասեմ, որ մոտ օրերս, համենայն դեպս, որևէ բան անելու ոչ մի հնարավորու-*
*թյուն չկա։ Այն ժամանակից հետո, երբ մենք հեռացել ենք, այդ մի ամբողջ*
*տարի է, ես միայն երկու ամիս եմ աշխատանք ունեցել։ Սարսափելի կերպով*
*պարտքի տակ եմ ընկել և հիմա ամենանեղ պայմաններում եմ գտնվում,*
*սրանից հետո ավելի լավ կլինի և, համենայն դեպս, կարելի կլինի որևէ բան*
*անել։*
*(բացթողում) Կուղարկեմ քեզ նաև № №... «Пр.[3]» ստացվում է համարյա*
*թե (բացթողում) միայն վերջին օրինակը 29-րդն էր։ (Մի՞թե դուք չունեք հաս-*
*ցեներ)։ Ինչո՞ւ այս համարում չկա երրորդ համարն ստանալու մասին։ Չէ որ*
*այդ համարն ուղարկվել է ձեզ։*
*Բարևս հաղորդիր բոլոր ընկերներին։ Քեզ սրտագին բարև են ուղարկում*
*մերոնք բոլորը։ Կ-ն[4]... նստած է, Ն-կոն նույնպես, Ալ. մի շաբաթ նրա-*
*նից, և բաց թողին, նստած են նաև ընկերներից շատերը, Նամակիդ սպաս-*
*ման՝*

Սուրեն

*Գրիր նույն հասցեով 24. V. Բաքու (1908 թ.)*

Տպագրվում է ըստ բնագրի տեքստի

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի
ինստիտուտի Կենտրոնական Պարտիական արխիվ,
ֆ. 157, ցց. 2, գ. 54, թ. 6—8, բնագիրը։

* *Նամակի բնագրում որոշ բառեր անընթեռնելի են, քայքայված են։*

## № 2

## ՆԱՄԱԿ Մ. ՑԽԱԿԱՅԱՅԻՆ

ԹԱՆԿԱԳԻՆ ՄԻԽԱ.

Ստացա նամակդ և ապա բացիկդ: Նրանք ինձ շատ ուրախացրին և միաժամանակ շատ վշտացրին: Շատ եմ ցավում, որ դու վատ ես ապրում և հիվանդ ես: Դու գրում ես, թե ես մոռացել եմ քեզ: Այդ ճիշտ չէ: Ես շատ հաճախ և սիրով ու հարգանքով եմ հիշում քեզ, որպես սակավաթիվ ազնիվ ու անբասիր ընկերներից մեկին: Այդ հատկությունները առանձնապես արժեքավոր են իմ աչքում ներկայումս, երբ անտարբեր կամ թույլ ընկերների մեծամասնությունը բարոյականության տեսակետից խիստ ընկել է: Մի 50 ֆր. ուղարկելու համար որևէ բան կազմակերպելու իմ ամբողջ ցանկությամբ հանդերձ... գուցե հետագայում դեռ որևէ բան հաջողվի: Թեև ծառայում եմ, բայց պետք է պարտքերս հատուցեմ, այդ անիծյալ պարտքերը մի ժամանակ հասել էին խոշոր գումարի՝ 3300 ռուբլու, հիմա էլի դեռ մնում է հազար հինգ հարյուր, որ կլանում է ամբողջը: Պարտքերս բոլորն էլ անհետաձգելի են ու խեղդող: Բացի դրանից, ընտանիքս, և դեռ հայրս ու մայրս էլ Թիֆլիսում խիստ կարիքի և խոր ծերության մեջ են: Նախշիր-օղլին էլ հիմա ինչ-որ ծանր հիվանդ ունի, որը նրան թանկ է նստում: Գ-Կ-ը թողնում է ծառայությունը և նույնպես առատաձեռն չէ: Փող գտնելն առհասարակ սարսափելի դժվարացել է:

Դու քո նամակում խնդրել էիր կոստրոմացիներին բավարարել մեր պրոֆմիությունների «փայլուն» վիճակի առթիվ: Դժբախտաբար վերջինների դրությունը իսկապես այն աստիճան փայլուն չէ, որ մարդ անգամ չկա, որին հաղորդեմ քո խնդիրը: «Նավթ. բանվորների միությունը» համարյա այլևս գոյություն չունի: Մի ժամանակ եղած 9000 մարդուց հիմա մնում է մի 20 մարդ, դեռ նրանից էլ քիչ: Վարչության անդամները ցրվել են, նույնիսկ գույքի մասին մտածող չկա: Շենքը մոտ մի ամիս է, ինչ փակ է: Ամենահիմնական պատճառը միության դեմ եղած հալածանքն է: Հինգ քարտուղար իրար հետեվից մի տարվա ընթացքում ձերբակալվեցին և նրանցից ոմանք էլ աքսորված են: Մեխանիկների միությունը բաց է, բայց նույնպես իր վերջին օրերն է ապրում: Մյուս միությունների մասին խոսելու հարկ իսկ չկա: Ահա թե ինչպես «փայլուն են» գործերը:

Ընդունիր սրտագին բարևս և լավագույն ցանկություններ: Իմ հասցեն վերցրու Նիկոյից, ես նրան գրել եմ այսօր:

Քո Սուրեն

5/I—1910

Տպագրվում է ըստ բնագրի տեքստի

ՍՄԿԿ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Կենտրոնական Պարտիական արխիվ. ֆ. 157, ցուց. 2, գ. 54, բնագիրը:

## № 3

## ՆԱՄԱԿ Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻՆ [5]

Մեծարգո ընկեր: Վերջին ժամանակներս ինչ-որ հազվադեպ եք գրում: Ճիշտ է, մենք էլ առջի չենք ընկնում նամակ գրելու պարտաճանաչությամբ, բայց կուզեինք ավելի հաճախ ու ավելի կանոնավորապես տեղեկություններ ստանալ ձեզնից: Առանձնապես ցավալի էր ձեր լռությունը Ս-ոյի [6] նկատ-



մամբ, իսկ նրան ուղարկողների կողմից ուղղակի հանցանք էր: Մոտ մի ամիս մարդուն թողել էին աշխատանքը շարունակելու համար առանց փողի, բոլորովին անտեղյակ վիճակում: Նա ստիպված է եղել ամենաանախորժ ենթադրությունները անելու: Նկատի ունենալով Կազմ. Կոմ.-ի այդպիսի վերաբերմունքը դեպի գործն ու մարդիկ, մենք այժմ քիչ ենք հավատում նրա աշխատունակությանը: Ս-ոյի առաջարկը՝ եղածներից արդեն Ռուս. կոլ. կազմելու մասին մենք մերժեցինք մասամբ, թերևս, և գլխավորապես, այդ անվստահության պատճառով: Այս մասին խնդրում եմ հայտնել նրանց: Բացի անվստահությունից, նրանց վերաբերմունքը վրդովմունք է առաջացրել բոլոր ընկերների մեջ: Ի միջի այլոց, շատ անհաջող ձևով էր ուղարկված նաև փողը: Այդպիսի հասցեատեր գոյություն չունի, այդ պատճառով էլ մեծ դժվարությամբ ու ռիսկով հաջողվեց փողն ստանալ: Խնդրում եմ այդ հասցեով սրանից հետո ոչինչ չուղարկեք: Խնդրում եմ այս մասին հայտնել բոլորին, ում մոտ հասցեն կա: Որպեսզի նույնպիսի պատմություն չկրկնվի Ս-ոյի հետ, հարկավոր է անհապաղ նոր գումար փոխադրել, քանի որ նրա ունեցածը երկար ժամանակ չի հերիքի: Կոլ. հավաքելու համար նրան էլի փող է հարկավոր: Նա այսօր մեկնում է հյուսիս, իսկ փողի համար նա ուզում էր գրել, կարծեմ, որ այստեղ փոխադրեն: Նա դրա մասին հավանորեն, հասցե էլ է ուղարկել: Ես հետևյալ խնդիրն էլ ունեմ Ձեզնից: Դուք գիտեք, իհարկե, Կ-ոյի [7] վիճակի մասին, նրան անհրաժեշտ է այստեղից արտակարգ կերպով 50 ռուբլի փոխադրել: Ես Ս-ոյից վերցրի, խոստանալով գրել ձեզ և ձեզնից ստանալ: Ես այդ արի միանգամայն վստահ, որ մերժում չի լինի: Խնդրում եմ այդ գումարն առանձին փոխադրել և գրել ինձ այդ մասին: Ուղարկել կարելի է նույն հասցեով. որով ուղարկելու եք Ս-ոյին. տեղական գործերն ընթանում են սովորական կարգով, այսինքն՝ վերջին ժամանակների համար ոչ վատ: Կան նոր լավ ձեռնարկումներ, բայց անհարմար եմ համարում նրանց մասին գրել: Հավատացեք ասածիս: Լիկվիդատորները շարժվել են սկսել վերջին ժամանակներս, բայց ոչ երկար ժամանակով և շատ անհաջող: Այստեղ նրանք հունձ ընդհանրապես չեն ունենա: Այսօր իմացա, որ եկել է երկրորդ Կազմ. Կոմ.-ից մեկը՝ պրավդիստ [8]: Կհեռանա, իհարկե, դատարկաձեռն: Մենք ոչ մի տեղեկություն չունենք նրանց աշխատանքի, ինչպես և ձեր գործերի մասին... Ունե՞ք արդյոք որևէ բանաձև կոնֆերենցիայի համար: Եթե այո, ուղարկեք: Ինչո՞ւ մինչև այժմ չկա «Раб. газ.» [9]-ի 6-րդ №-ը, ինչո՞ւ չկա Կենտ. օրգ. [10] «Раб. газ.»-ի պահանջը շատ մեծ էր, իսկ դուք ստիպեցիք արդեն մոռանալ նրա մասին, այնքան երկար ժամանակ չեք հրատարակում: Ես 25 ռուբ. ունեի «Раб. газ.»-ի համար, որի մի մասն ինձնից վերցրեց Ս-ն: Դա այն գումարից դուրս, որի մասին նա արդեն գրել է ձեզ. երևի այդ գումարի մասին էլ կգրի, որպեսզի դուք հրապարակեք: Ինձ մոտ մնացած գումարն էլ նրան կհանձնեմ: Ինչո՞ւ մինչև այսօր մեր բանաձևի [11] մասին ոչինչ չկա: Մի՞թե 2-րդ ծանուցումից հետո Կազմ. Կոմ. այլևս ոչինչ չի հրատարակել: Ընդունեցեք և Վլադիմիր Իլյիչին հաղորդեցեք բարեկամական ողջույնն ինձնից, Ալ-ից [12] և մյուսներից:

Սուրեն

[1911 թ. սեպտեմբեր]

Տպագրվում է ըստ բնագրի տեքստի

ՍՄԿԿ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Կենտրոնական Պարտիական արխիվ, ֆ. 37, ցուց. 2, գ. 35819, թ. 1, բնագիրը:

## № 4

## ՆԱՄԱԿ Ն. Ն. ԿՈԼԵՍՆԻԿՈՎԱՅԻՆ [13]

*Բացատրում եմ նախ և առաջ, թե ինչու այսպես ուշ եմ պատասխանում
Ձեր նամակին։ Ես այստեղ ժամանակավոր աշխատանք գտա—կազմում (կամ
գծում էի) Սարատովի գաղթականների դրությունը պատկերող դիագրամներ
Տատյանինսկայա կոմիտեի կազմակերպած ցուցահանդեսի համար։ Ծայրա-
հեղ շտապողականության (վաղը չէ մյուս օրը այստեղ բացվում է առայժմ
տեղական ցուցահանդեսը) և անսովոր լինելու պատճառով ես ամբողջովին
կլանված եմ այդ դիագրամներով։ Վախենում էի՝ խայտառակվեմ, բայց հա-
մենայն դեպս կարողացա անել։ Ինձ մոտ մեծ թվով նամակներ են կուտակ-
վել, որոնք պատասխանի են սպասում, այդ թվում նաև Ձերը, որի համար
խնդրում եմ, նկատի ունենալով վերոհիշյալ հանգամանքը, ներեք։ Բացիկով
պատասխանել չէի ուզում։ Նամակից երևում է, որ Ձեր դրությունն այժմ բա-
վարար է։ Ես գիտեի դատախազի բողոքի մասին և վախենում էի, որ այդ
կփչացնի Ձեր տրամադրությունը, բայց, ինչպես երևում է, Դուք պատշաճ
հանգստությամբ եք վերաբերվում դրան, որի համար գովում եմ։ Եվ իրոք,
եթե նույնիսկ նոր դատաքննություն նշանակվի, երբ է լինելու և կլինի՞ արդ-
յոք։ Այսօր ստացա «Պայքարի» [14] համարը և այստեղ կարդացի Բաքվի ժամ.
գեն. — նահանգապետի հայտարարությունը Բաքվի գործադուլների մասին։
Ոչ մի տեղեկություն չունեմ, բայց հայտարարությունից երևում է, որ բանը
լուրջ է։ Ափսոս, որ Բաքվի թերթերը չեմ ստանում, երևի նրանց մեջ մանրա-
մասնություններ կան։ «Պայքարը» հիանալի է հրատարակվում։ Ի միջի այլոց,
Բաքվի ժող. տան շուրջը մեծ բանակռիվ է մղվում։ Հայ նացիոնալիստները
արշավանք են սկսել վարչության դեմ, ղեկավարներին մեղադրելով հայ դեմո-
կրատիայի շահերն անտեսելու մեջ։ Դրա համար նրանց հայհոյում են
ԱՐ-ը և ինչ-որ մեկը Բաքվից։ Բաքվեցիներից ես էլ մանրամասն, ճիշտն
ասած, նույնիսկ ոչ մի նամակ չունեմ, բացի ԵԿ. Ս-ի [15] և զավակների նա-
մակներից։ Աշխատավարձի իմաստով ես այստեղ մինչև այժմ չեմ կարողացել
գործերս կարգավորել։ Մի հանձնարարություն եղավ Գրոզնուց, որի համար
ինձ 150 ռուբլի տվեց, և ահա այս դիագրամները, որի համար, երևի, մի 200
ռուբլի կստանամ։ Ինչ է լինելու այնուհետև, չգիտեմ։ Շատ ծանր է, որ չեմ
կարողանում ընկերներիս ու ծանոթներիս ազատել անհրաժեշտ դրամական
օգնությունից, որ նրանք այնպես երկար ցույց են տալիս ինձ։ Բարեբախտու-
թյուն էր համենայն դեպս, որ ես ընկա Սարատով։ Անտոնն ինձ գրել է, որ
խմբագրին աքսորել են մի ինչ-որ հեռավոր ու խուլ գյուղ, իսկ Կիրյակինին՝
Չիտա՝։ Ես, անկասկած, կկործանվեի։ Իմ առողջությունը, ըստ երևույթին,
առանց այն էլ սաստիկ խախտված է, ստիպված եմ այստեղ սիստեմատիկ
կերպով բժշկվելու։ Այսօր, ի միջի այլոց, մի անախորժ պրոցեդուրա կատա-
րեցին իմ նկատմամբ՝ ստամոքսային հյութը հանեցին անալիզի համար։ Եթե
ես մի փոքր էլ տանջվեի, չէի դիմանա։ Այստեղ քիչ ծանոթներ կան, եթե
ճիշտն ասեմ՝ ես նրանց առանձնապես չեմ էլ փնտրում։ Հանդիպում եմ Վոր-
նաչևին, որն այստեղ աշխատում է շոգենավի վրա։ Բացիկով ես, կարծեմ, գրել
եմ Ձեզ, որ զինապարտությունից առայժմ ազատ եմ, բայց եթե իմ թվականը
զորակոչվի Կովկասում, ինձ էլ կվերցնեն։ Կարդացի՞ք, այսօր գրում են, որ
Գերմանիայում կանանց արդեն զորակոչում են։ Տեսեք, հերթը Ձեզ էլ կհասնի։
Ձեր Շուրիկի համար շատ ուրախ եմ, որ նա առողջ է և ծաղկափթիթ։ Ցան-
կանում եմ, որ նա միշտ էլ Ձեզ ուրախացնի, ինչպես իմ Սերյոժիկը՝ ինձ։
ԵԿ. Ս-ի նամակներում առաջին տեղը միշտ, իհարկե, հատկացվում է Սերյո-
ժային։ Նա գրում է, որ նա շարունակ լավանում ու ավելի հետաքրքիր է դառ-
նում, անընդհատ խնդրում է, որ իրեն ուղարկեն «Սարատով» հայրիկի մոտ։
Հիլֆերդինգը մի ծանոթ կին Մոսկվայում արդեն գնել է ինձ համար, օրերս
կստանամ, ուրեմն արդեն կարիք չկա, որ դուք որոնեք։ Լրագրեր, իհարկե,
կարդում եք։ Հետաքրքիր ժամանակ է։ Էհ, վերջացնում եմ, Նադ. Նիկ., սպա-*



*սելով Ձեր հետագա նամակներին։ Ինչպես է բելետրիստիկայի հարցը. օգտվե-
ցեք աքսորից և գարձեք Կաշիրայի գրող, հաջողություն եմ ցանկանում այդ
ուղղությամբ։ Հղում եմ ջերմ ողջույնս։*

Ձեր Ստեփան

*7/II—917*

Տպագրվում է ըստ մեքենագիր տեքստի

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի
ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ,
ֆ. 7, գ. 153, մեքենագիր օրինակը։

## № 5

## Ի՞ՆՉ ԲԱՆ Է ԱՌԱՆՑ ԱՆԵՔՍԻԱՆԵՐԻ ՈՒ ՌԱԶՄԱՏՈՒԳԱՆՔՆԵՐԻ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ

*Բոլոր ինտերնացիոնալիստները ռևոլյուցիայի հենց սկզբից ժամանակա-
վոր կառավարությունից պահանջում են ու պահանջում էին, որ նա բոլոր պա-
տերազմող կողմերին առաջարկի անհապաղ հաշտություն կնքել առանց
անեքսիաների ու ռազմատուգանքների, ազգերի ինքնորոշման իրավունքի հիմ-
քի վրա։*

*Բայց ի՞նչ բան է, «առանց անեքսիաների ու ռազմատուգանքների» հաշ-
տությունը, և ինչո՞ւ պետք է բոլոր ուժերով հասնել դրան։*

*Անեքսիան մեկ պետության հողերի բռնի միացումն է մի ուրիշ պետու-
թյան, իսկ ռազմատուգանքը պարտված պետության վրա բռնությամբ դրամա-
կան տուգանք դնելն է։*

*Եթե մենք գերմանացիներից խլեինք նրանց հողերի մի մասը և նրանց
հարկադրեինք մեծ փող վճարել մեզ, ինչպես այդ ուզում է բուրժուազիան,
ապա այդ կհամարվեր, որ մենք անեքսիայով ու ռազմատուգանքով հաշտու-
թյուն կնքեցինք։*

*Բայց հարց է ծագում՝ հարկավո՞ր է արդյոք մեզ ուրիշի հողը։ Իսկապե՞ս
այդ մեզ այնպես անհրաժեշտ է, որ արժե նրա համար մեր եղբայրների ու
հայրերի այնքան արյունը թափել։*

*Ամեն ոք, ով նայի երկրագնդի քարտեզին, իսկույն կտեսնի, թե ինչ ահա-
գին տարածություն է բռնում նրա վրա ռուսական պետությունը։ Ռուսաստա-
նին է պատկանում ցամաքի մոտավորապես մեկ վեցերորդ մասը, և իր չա-
փերով նա երկրորդ տեղն է գրավում Անգլիայից հետո (գաղութների հետ)։*

*Մեզանից կհարցնեն՝ իսկ ինչո՞ւ, եթե մենք այդքան շատ հող ունենք,
գյուղացին տառապում է հողասակավությունից։*

*Պատասխանը պարզ է՝ գյուղացին տառապում է հողասակավությունից,
որովհետև հողի ահագին տարածություններ կալվածատերերն ու պետությունն
են զբաղեցնում։*

*Ահա նրանցից էլ հենց պետք է խլել հողը և հանձնել գյուղացիներին, և
ոչ թե մեր եղբայր գերմանացի կամ որևէ այլ գյուղացիներից։*

*Եվ այսպես, անեքսիան մեզ հարկավոր չէ. հիմա հարկավո՞ր է արդյոք
ռազմատուգանքը։ Ո՛չ, ռազմատուգանքը մեզ հարկավոր չէ։ Չէ՞ որ, եթե մենք
աղքատ ենք, ապա այդ դեռ չի նշանակում, թե մենք պետք է մեր ձեռքը կո-
խենք առաջին իսկ հանդիպած գրպանը։ Չէ՞ որ այդ կլիներ գողություն կամ
կողոպուտ։ Պետք է աշխատել պարզել, թե ով է մեր աղքատության իսկական
պատճառը, և ուրիշին չվերցնելով՝ մերը պահանջել։*

*Տվյալ դեպքում, իսկ ում հայտնի չէ, որ ժողովրդական աղքատության
իսկական պատճառը ոչ թե օտարերկրյա «թշնամիներն են», այլ մեր «եղբայր»
վաճառականը, կուլակը, կալվածատերը, գործարանատերը։ Ահա թե ում վրա
պետք է դարձվի ժողովրդի ուշադրությունը, ահա թե ում դեմ ժողովուրդը*

*պետք է պայքար մղի, որպեսզի նրանց կողոպտած հարստությունները պատկանեն ամբողջ պետությանը, ամբողջ ժողովրդին:*

*Եվ այսպես, մեզ հարկավոր չեն ո՛չ անեքսիաներ, ո՛չ ռազմատուգանքներ: Բայց բացի նրանից, որ նրանք մեզ հարկավոր չեն,— նրանց կիրառումը ամենահսկայական վնասը կհասցնի մեզ, առաջ բերելով պարտված ժողովուրդների սաստիկ գրգռում և կորցրած մարզերը վերադարձնելու ցանկություն: Այդ է ասում պատմությունը:*

*1871 թվականին Գերմանիան հաղթեց Ֆրանսիային և նրանից խլեց Էլզաս-Լոթարինգիան, բացի դրանից՝ նրա վրա դնելով 5 միլիարդ ռազմատուգանք: Դրա հետևանքը եղավ այն, որ վիրավորված ինքնասիրությունը հանգիստ քնել չէր թողնում ոչ մի ֆրանսիացու, և 1914 թվականին, երբ սկսվեց համաշխարհային սպանդը, որը մինչև այժմ էլ շարունակվում է, ամբողջ Ֆրանսիային համակեց կորցրած Էլզաս-Լոթարինգիան վերադարձնելու ձգտումը:*

*Նույնիսկ Ֆրանսիայի սոցիալիստները, որոնք միշտ պայքարել են իրենց հայրենակից կապիտալիստների ռազմաշունչ ձգտումների դեմ, ոչ միայն չկարողացան Ֆրանսիային ետ պահել ելույթներից, այլ նաև իրենք ենթարկվելով ընդհանուր ոգևորությանը, նպաստեցին հայրենասիրական կրքերի բորբոքմանը:*

*Միայն առանց անեքսիաների ու ռազմատուգանքների հաշտությունը կարող է հավասարապես և հավասարապես ընդունելի արդարացի լինել բոլոր պատերազմող պետությունների համար:*

*Ապագա հաշտության պայմանագրի հիմքը պետք է կազմի ազգերի ինքնորոշման իրավունքը, այսինքն՝ յուրաքանչյուր ժողովրդի՝ իր բախտը ինքնուրույն կերպով որոշելու իրավունքը:*

*Վիճելի մարզերը, ինչպես Էլզաս-Լոթարինգիան, Մերձբալթյան երկրամասը, Լիտվան, Լեհաստանը և Հայաստանը պետք է իրենք ընդհանուր քվեարկությամբ որոշեն՝ արդյոք ուզում են միանալ պետություններից որևէ մեկին, թե ինքնուրույն կերպով գոյություն ունենալ:*

*Այդ նրանց իրավունքն է, և բացի դրանից՝ այդ է վիճելի մարզերի ստեղծված չափազանց խճճված դրությունից դուրս գալու միակ էական ելքը:*

Ժողովուրդների ինքնորոշման հիմքի վրա առանց անեքսիաների ու ռազմատուգանքների հաշտության պահանջը ամբողջ աշխարհի գիտակից դեմոկրատիայի պահանջն է և այն էլ՝ այսօրվա պահանջը:

Ս. Շ–յան

Տպագրվում է ըստ թերթի տեքստի

«Свободное слово»[16] № 1, 15 նոյեմբերի, 1917 թ.:

## № 6
## [ԱՐՇԱՎԻՐ ՄԵԼԻՔՅԱՆԻՆ][17]
## ՀԱՐԳԵԼԻ ԸՆԿԵՐ

*29/I [1918]**

*Շատ սպասեցի, որ կերևաք մեր հորիզոններում, չերևացիք: Խնդրում եմ — կարծելով, որ առաջվա նման մեզ հետ եք Ձեր հայացքներով — գաք Տփխիս — գոնե ժամանակավորապես, որ խոսենք:*

*Շատ բարևներով*

Ձեր Ս. Շահումյան:

Տպագրվում է ըստ բնագրի տեքստի

ՍՄԿԿ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի
ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ,
տես Ս.. Մ. Մելիքյանի անձնական գործը: Բնագիրը:

* *Քառակուսի փակագծերում վերցվածը տրված է մեր կողմից:*



## № 7

## ԿՈՎԿԱՍՅԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՏ ՔԱՇՎՈՂ ԶՈՐՔԵՐԻՆ

*Ընկեր զինվորներ:*

*Հաշտության բանակցությունները գերմանական կառավարության հետ ընդհատված են, բայց մենք այսօր ավելի ենք մոտ հաշտությանը, քան երբևիցե: Պատերազմն արդեն դադարեցված է, և Ժողովրդական Կոմիսարների Սովետը բանակի լրիվ զորացրում է հայտարարել: Իր բացահայտ ու ազնիվ ժողովրդական քաղաքականությամբ մեր բանվորագյուղացիական կառավարությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի առաջին իսկ օրերը զինադադար ձեռք բերեց և սկսեց հաշտության բանակցությունները: Թե՛ զինադադարը և թե՛ հաշտության բանակցությունները գերմանական իմպերիալիստների հետ նպատակ ունեին չփում ստեղծել գերմանական զինվորների ու բանվորների հետ և նրանց մեջ ապստամբություն բարձրացնել Վիլհելմի դեմ:*

*Այդ նպատակն իրագործված է: Ռուսական իմպերիալիստների և նրանց լաքեյներ Կերենսկու, Ծերեթելու և Ընկ. հետ կազմված կոալիցիայի ոչնչացումը, գաղտնի դաշնագրերի հրապարակումը և խզումը դաշնակցային իմպերիալիստների հետ, համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիայի սկսվելն ազդարարելը և վերջապես, լայն ագիտացիան գերմանական զինվորների ու բանվորների մեջ — այդ ամենը հասավ իր նպատակին: Գերմանական ու ավստրիական պրոլետարիատը ապստամբության դրոշ բարձրացրեցին իրենց կառավարությունների դեմ և եղբայրական ձեռք մեկնեցին ռուս զինվորին ու ռուս բանվորին:*

*Եվ Ժողովրդական Կոմիսարների Սովետը իրավացի է, երբ հայտարարում է, թե պատերազմն արդեն դադարել է: Բանակցությունները Գերմանիայի պաշտոնական ներկայացուցիչների հետ ընդհատված են, ինչպես և պետք էր սպասել, բայց դրա փոխարեն հաշտությունը կնքված է ռուս և գերմանական զինվորների ու բանվորների սրտերում, և արդեն ոչ մի ուժ նրանց չի հանի միմյանց դեմ:*

*Ժողովրդական Կոմիսարների Սովետի թշնամիները — և սկսված կադետները, և շաղակրատ պաշտպանողականները — չարությամբ են լցված իրենց համար անհասկանալի այդ քաղաքականության դեմ, այդ անսպասելի հետևանքների դեմ:*

*Ապստամբությունը Գերմանիայում ու Ավստրիայում կատարված փաստ է, հաշտությունն ապահովված է անպայման,— թվում էր, թե այլևս բան չկա խոսելու, էլ ինչի համար են չարանենք քծիծաղը, զրպարտությունը, բամբասանքները:*

*Բայց չկան ավելի արհամարհելի արարածներ, քան պաշտպանողականների ու համաձայնողականների սնանկացած ու խայտառակված առաջնորդները:*

*Նրանք անընդունակ են ուրախանալու Գերմանիայում սկսված ռևոլյուցիայի առթիվ, նրանք չեն կարող տանել ռուսական ռևոլյուցիայի տարած հաղթանակը, նրանք չեն տեսնում, որ սկսվում է խաղաղությունը, որը ոչ ոք չի կարող խլել մեզնից:*

*Նրանք դեռևս շարունակում են խռովություն սերմանել բանվորների մեջ և ուզում են թունավորել զինվորների ուրախությունը:*

*Ընկեր զինվորներ:*

*Թո՛ղ ձեզ չշփոթեցնեն բուրժուական ու պաշտպանողական թերթերի ծախու գրչակները:*

*Գերմանիայում ու Ավստրիայում ապստամբություն է, խորտակվում են վերջին բռնակալների գահերը:*

Պատերազմը չկա և այլևս չի լինի:

*Թո՛ղ խրամատներում չորս տարի մնալուց տանջված ձեր սրտերը լցվեն յուսաշող ուրախությամբ: Վերադարձեք ձեր տները և հիմա զբաղվեցեք նոր կյանք կառուցելով երկրի ներսում:*

Արտաքին թշնամին ընկճված է։ Մենք կարող ենք այժմ մեր ամբողջ ուժերը և մեր ամբողջ միտքը դարձնել ներքին թշնամուն խորտակելու վրա, կալվածատերերի ու կապիտալիստների կոնտրռևոլյուցիան ճնշելու վրա։

Ընկեր զինվորներ։

Այս տեսակետից ևս հեռավոր վերջին ժամանակներն ուրախալի լուրեր է բերում մեզ։ Ռուսաստանում վերջնականապես հաստատվում է Սովետական իշխանությունը։ Ուկրաինայում ցրված է բուրժուական Ռադան, բոլոր պարագլուխները ձերբակալված են, Կիևը և Մալոռուսիայի մյուս կենտրոնները ճանաչել են Ժողովրդական Կոմիսարների Սովետի իշխանությունը, ռուս և ուկրաինական զինվորները նորից միավորվել են և մեկ եղբայրական դաշինք են կազմել։

Կազակների կողմից լքված Կալեդինը ինքնասպանություն է գործել։ Կարաուլովը դրանից առաջ է սպանվել։ Աշխատավոր կազակության և Ժողովրդական Կոմիսարների զորքերի միջև նույնպիսի եղբայրական դաշինք է հաստատվել։

Կովկասյան ռազմաճակատից ձեզնից շուտ Հյուսիսային Կովկաս գնացած ձեր ընկերների օգնության շնորհիվ այնտեղ վճռական հարված է հասցված կոնտրռևոլյուցիային։ Ստավրոպոլի նահանգը և Կուբանի մարզը համարյա ամբողջովին Ժողովրդական Կոմիսարների զորքերի ձեռքում են։

Ընկեր զինվորներ։

Արդեն շատ բան է արված, բայց թշնամին դեռ վերջնականապես ջախջախված չէ։ Եվ ձեր բաժին աշխատանքը մնում է։

Գործերի դրությունը ամենից վատ է մեզ մոտ, Անդրկովկասում։ Անդրկովկասյան Կերենսկիները, Կալեդինները, Կարաուլովները, այսպես կոչված Գեգեչկորին ու նրա դաշնակից մուսուլմանական բեկերը դեռ իշխանության գլուխ են կանգնած։ Բայց այստեղ էլ է մոտենում նրանց տիրապետության վերջը։ Բանվորները, գյուղացիները և նրանց հետ միասին ազգային գնդերի զինվորներից շատերն արդեն գալիս են իրենց շահերի գիտակցությանը։ Մոտ է ժամը, երբ անդրկովկասյան պաշտպանողական հանցագործ կոմիսարիատի վրա ևս խաչ կդրվի, և Թիֆլիսի վրա կծածանվի սովետական ռևոլյուցիայի դրոշը։

Ընկեր զինվորներ։

Անդրկովկասյան այդ իշխանությունը արյունալի ուղերթ սարքեց ձեր եղբայրների համար Ելիզավետպոլի տակ։ Այժմ, երբ շնորհիվ ձեր ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեների ջանքերի դուք կազմակերպված ու նախապատրաստված եք այդ դավաճաններին հանդիպելու և նրանց հետ դատաստան տեսնելու, նրանք չեն համարձակվի այնպես հեշտությամբ հարձակվել ձեզ վրա։ Բայց աչալուրջ եղեք։ Գնացեք՝ լիովին պատրաստ խորտակելու բեկերի կոնտրռևոլյուցիոն բանդաներին, եթե նրանք կհամարձակվեն ձեր ճանապարհը կտրել։

Բացի Ելիզավետպոլում բուն դրած անդրկովկասյան կոնտրռևոլյուցիոներներից ձեզ կոնտրռևոլյուցիոն բանդաներ են սպասում Խասավյուրտ, Դաղստանի ու Թերեքի մարզերում։

Գնացեք, ոչ թե թշնամուն անձնատուր լինելու, այլ ճանապարհին ամեն մի հարձակում, ամեն մի դիմադրություն ոչնչացնելու հաստատ վճռողականությամբ։

Սրանից հետո, պատերազմը վերջանալուց և լրիվ զորացրում հայտարարելուց հետո այլևս ոչինչ չի կարող ձեզ պահել Կովկասում։ Խաղաղությամբ գնացեք տուն, բայց շարունակեցեք հավատարմությամբ ծառայել բանվորագյուղացիական մեծ ռևոլյուցիայի գործին։

Եղեք կազմակերպված ու տոկուն, և համարձակ առա՜ջ, ընկերներ։

Կորչի՛ կոնտրռևոլյուցիան։

Կեցցե՛ հաշտությունը։

Կեցցե՛ բանվորա-գյուղացիական ռևոլյուցիան։



Կեցցե՛ Ժողովրդական Կոմիսարների Սովետը։

Կովկասի գործերի ժամանակավոր Արտակարգ
կոմիսար՝ Ս. Շահումյան

Տպագրվում է ըստ թերթի տեքստի.
«Кавказский рабочий» № 27, 6(19) փետրվարի, 1918 թ.։

## № 8

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ՝ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ՆԱՄԱԿԻ ԱՌԹԻՎ

Ստորև մենք տպում ենք ընկեր Լենինի ազգային հարցի մասին 1913 թ. դեկտեմբերին գրած նամակը[18]։ Որպեսզի այդ նամակն ավելի հասկանալի լինի ընթերցողի համար, բերում ենք մի քանի պարզաբանումներ։

1913 թ. սեպտեմբերին արտասահմանում կայացավ բոլշևիկների կոնֆերենցիան, որը, ի միջի այլոց, բանաձև ընդունեց ազգային հարցի մասին։ Այդ բանաձևում, որպես նախկին հարցադրման համեմատությամբ ինչ-որ մի նոր բան, մատնանշվում էր, որ անհրաժեշտ է Ռուսաստանի խոշոր մարզերին ու ազգություններին ավտոնոմիա տալ մարզային ինքնավարության փոխարեն, որը մինչև այդ հանձնարարում էր մեր պարտիայի ծրագիրը։ Այնուհետև, կոնկրետ մեկնաբանություն էր արվում «ինքնավարություն» կետին, որը բանաձևը բացառապես ըմբռնում էր որպես անջատման իրավունք։ Բանաձևը մատնանշում էր նաև պարտադիր պետական լեզվի անկարևորությունը և հանձնարարում էր պարտիական կենտրոններին առանձին ազգային ծրագրի նախագիծ մշակել ու ներկայացնել մոտակա պարտիական համագումարին։

Ընկ. Շահումյանը, որի անունով գրված է տպագրվող նամակը, այդ բանաձևն ստացավ (աքսորավայրում) Լենինից՝ բանաձևի մասին իր կարծիքը հայտնելու խնդրանքով։ Այդ կարծիքը հաղորդվեց մի նամակով, և նրան ի պատասխան ստացվեց ստորև բերվող նամակը։

Ընկ. Լենինը մեջ է բերում Շահումյանի նամակի որոշ տեղեր և քննադատության է ենթարկում դրանք։ Կարևոր չէ այն, որ որոշ կետեր, որոնց առթիվ նա առարկում է, այնքան էլ ճիշտ չի հասկացել ընկեր Լենինը։ Մեր կողմից տպագրվող նամակը մեծ նշանակություն ունի որպես Լենինի՝ ազգային հարցի վերաբերյալ հայացքների որոշակի պարզ արտահայտություն։

Երբ բոլշևիկների պարտիան պատերազմի ժամանակ առաջադրեց ու սկսեց ուժեղ կերպով ընդգծել ինքնորոշման իրավունքը, մեր հակառակորդները բողոքում էին, թե մենք այդ անում ենք դեմագոգիական նպատակով և Կերենսկու կառավարությունը վարկաբեկելու համար։ Այս նամակը ցույց է տալիս, որ մեր պարտիայի կողմից ներկայումս պաշտպանվող հայացքները ճշգրտորեն արտահայտել է Լենինը դեռ 1913 թվականին։

Մյուս կողմից, ինքնորոշման վերաբերյալ մեր կետը հակառակորդները բոլորովին խեղաթյուրված ձևով էին մեկնաբանում, մեզ վերագրելով Ռուսաստանը մի շարք առանձին անկախ մարզերի ու ազգային միավորումների բաժանելու ցանկությունը։ Լենինի նամակից ընկերները կտեսնեն, որ մենք չենք հանձնարարում, չենք քարոզում անջատում, այլ ընդունում ենք միայն անջատման իրավունքը որպես տարրական դեմոկրատական իրավունք, որը թույլ չի տալիս բռնություն այն մանր ազգերի նկատմամբ, որոնք ճնշվում էին ցարական կառավարության և վելիկոռուսական նացիոնալիստների կողմից։ Ընկ. Լենինի նամակից պետք է հասկանալի լինի, որ մենք կողմնակից ենք լինելու անջատման և անջատումը պաշտպանելու ենք այն դեպքերում, երբ այդ թելադրում են աշխատավոր մասսաների շահերը, և երբ պահանջում են իրենք, ազգի մեծամասնությունը կազմող մասսաները։ Ամեն մի զրպարտչական հարձակում բոլշևիկների հասցեին, որոնք իբր թե, իշխանության գլուխ կանգնելով, դավաճանել են ինքնորոշման վերաբերյալ իրենց հայացքներին,— վերանում են ինքնին։

*Մենք ընկեր բանվորներին հանձնարարում ենք խորը ուշադրությամբ կարդալ ընկեր Լենինի այդ նամակը, որովհետև ազգային հարցը մեր ռևոլյուցիայի կարևորագույն հարցերից մեկն է։*

Շ.

Տպագրվում է ըստ թերթի տեքստի

«Известия Бакинского Совета»[19] № 49,
16(3) մարտի, 1918 թ.:

## № 9

## ԲԱՔՈՒ ՔԱՂԱՔԻ ԵՎ ՆՐԱ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԴԻՄՈՒՄԸ

*1918 թ. մարտի 31-ից հետո*

*Սովետական իշխանության թշնամիները Բաքու քաղաքում գլուխ են բարձրացրել։ Չարությունն ու ատելությունը, որով նրանք վերաբերվում էին բանվորների ու զինվորների ռևոլյուցիոն օրգանին, վերջին ժամանակներս սկսել էին բացահայտ կոնտրռևոլյուցիոն ելույթների ձև ընդունել։ «Վայրի դիվիզիայի» շտաբի հայտնվելը մերկացված Տալիշխանովի գլխավորությամբ, Լենքորանի, Մուղանի, Շամախու դեպքերը, Պետրովսկի գրավումը դաղստանյան գնդի կողմից և Բաքու եկող հացի բեռների պահումը, Գանձակի, իսկ վերջին օրերը նաև Թիֆլիսի սպառնալիքները Բաքու՝ Սովետական իշխանության դեմ գնալու մասին, Անդրկովկասյան կոմիսարիատի զրահագնացքի ագրեսիվ գործողությունները Հաջիքաբուլում և, վերջապես, «վայրի դիվիզիայի»՝ մեր ընկերներին գնդակահարած ջոկատի լպիրշ վարքագիծը «Էվելինա» շոգենավի վրա,— այս ամենն ասում է, թե ինչպիսի ոճրագործ պլաններ ունեն կոնտրռևոլյուցիոներները, որոնք համախմբված են գլխավորապես բեկական «Մուսավաթ»[20] պարտիայի շուրջը և նպատակ ունեն տապալելու բուրժուազիայի և կալվածատերերի համար ատելի Սովետական իշխանությունը։*

*Բանվորների, զինվորների և նավաստիների դեպուտատների Բաքվի Սովետի Գործադիր կոմիտեն և Կովկասյան բանակի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն հայտնում են բոլոր ընկերներին ու քաղաքացիներին, որ սովետական իշխանությունը Բաքվում վտանգի մեջ է, և կոչ է անում բոլորին զենքը ձեռքներին նրան պաշտպանելու ժողովրդի թշնամիներից։*

*Զինված ուժերի բոլոր գործողություններն այսուհետև ղեկավարելու է մատնանշված կազմակերպությունների ստեղծած* Բաքու քաղաքի և նրա շրջանների պաշտպանության Ռևոլյուցիոն կոմիտեն:

*Մենք կոչ ենք անում ռևոլյուցիայի հավատարիմ բոլոր ընկերներին և բոլոր քաղաքացիներին համախմբվել կոմիտեի շուրջը և պատրաստ լինել մինչև արյան վերջին կաթիլը կռվելու Սովետի դրոշի ներքո։*

*«Մուսավաթ» պարտիայի նացիոնալիստները և նրանց հետևից ընթացող կոնտրռևոլյուցիոն տարրերը արդեն ռազմական գործողություններ են սկսել Սովետի դեմ։ Մենք այդ ոճրագործ տարրերին արժանի հակահարված կտանք։ Մենք դրա հետ միասին կմերկացնենք ամբողջ մուսուլմանական ազգի անունից խոսող ռևոլյուցիայի այդ թշնամիներին այն բանում, որ նրանք ամենից առաջ մուսուլմանական աշխատավոր մասսաների թշնամիներն են։*

*Մենք կոչ ենք անում մուսուլմաններին և հայերին, բոլոր ազգությունների բանվորներին և դեմոկրատական տարրերին չենթարկվել շովինիստական տարրերի պրովոկացիային և իսկական վճռական րոպեին բացահայտորեն, անվախ կերպով զենքը ձեռքին կանգնել Բաքու քաղ. Ռևոլյուցիոն պաշտպանության կոմիտեի կարմիր դրոշի տակ։*

*Կորչե՛ն նացիոնալիստներն ու կոնտրռևոլյուցիոներները.*

*Կեցցե՛ ռևոլյուցիոն Սովետական իշխանությունը։*



*Կովկասի գործերի ժամանակավոր Արտակարգ կոմիսար՝ Ս. ՇԱՀՈՒՄՅԱՆ*

*Բանվորների, զինվորների և նավաստիների դեպուտատների Բաքվի Սովետի նախագահ՝ Պ. ՋԱՓԱՐԻՁԵ*[21]

*Կովկասյան բանակի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահ՝ Գ. ԿՈՐԳԱՆՈՎ*[22]

*Բաքու քաղ. Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահ՝ Ի. ՍՈՒԽԱՐՑԵՎ*[23]

Տպագրվում է ըստ բնագրի տեքստի

Ադրբեջանի Կենտկոմի պարտարխիվ,
ֆ. 276, ոպ. 1, գ. 94 ժ.:

## № 10

## ԲԱՔՈՒ ՔԱՂ. ԵՎ ՆՐԱ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԿՈՂՄԻՑ ՕՐԴԵՐ Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆԻՆ

***2 մայիսի 1918 թ.***

### ՕՐԴԵՐ *

*Սրանով Ռևոլյուցիոն պաշտպանության կոմիտեն կարգադրում է ընկ. Անաստաս Միկոյանին ձերբակալել «Նոբել եղբ. ընկ.» ֆիրմայի վարչության անդամ՝ քաղաքացի Լեսներին և նրան ուղարկել Ռևոլյուցիոն պաշտպանության կոմիտեի տրամադրության տակ։*

*ԲԱՔՈՒ ՔԱՂԱՔԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ*
*ԿՈՄԻՏԵԻ ԱՆԴԱՄՆԵՐ՝*
*Գ. ԿՈՐԳԱՆՈՎ, Պ. ՋԱՓԱՐԻՁԵ, Ս. ՇԱՀՈՒՄՅԱՆ*
*Քարտուղար*՝ Ն. Կուզնեցով[24]

Տպագրվում է ըստ մեքենագիր տեքստի

Ադրբեջանի Կենտկոմի պարտարխիվ,
ֆ. 276, ոպ. 3, գ. 64, թ. 9

## № 11

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ

*24 մայիսի 1918 թ.*

*Հարգելի ընկերներ։*

*Երեկ ես ռադիո ուղարկեցի ձեզ համառոտ հաղորդումով Անդրկովկասում տիրող դրության մասին։ Այդ արդեն 4-րդ ռադիոն է, որ ուղարկվում է ձեզ Տաշքենդով ու Աստրախանով, բայց նրանք, ըստ երևույթին, ձեզ չեն հասնում։ Դժբախտաբար, մինչև այժմ մենք ձեզնից չստացանք մի ավելի հզոր կայան, թեև արդեն երրորդ ամիսն է՝ ինչ դիմում ենք։*

*Ես արդեն ձեզ հաղորդել եմ, որ թուրքերը գրավել են Ալեքսանդրոպոլը և զորքեր են փոխադրում Ջուլֆա։ Այդ ունի երկու նպատակ՝ Հյուսիսային Պարսկաստանի գրավումը և Բաքվի վրա շարժվելը։ Մեր տեղեկություններով, նրանք ուզում են Հյուսիսային Պարսկաստանում կազմակերպել 200000 մարդուց բաղկացած մի բանակ։ Տեղական քրդերի ու շախսևանների մոտ 40000 ավին արդեն կա և նրանք Ալեքսանդրոպոլ — Ջուլֆա ճանապարհով զենք կփոխադրեն զորք կազմելու համար։ Պետք է ասել, որ Հյուսիսային Պարսկաստանը խիստ թուրքասեր է։ Նրանց ազդեցության տակ է ընկնում նաև Քուչուկ-խանը։ Տվյալ պահին մեզ ավելի շատ հետաքրքրում է մյուս նպատակը՝ զորքերի փոխադրումը դեպի Բաքու։ Ջուլֆայից մինչև Բաքու երկաթուղի էր կառուցվում։ Այժմ ամբողջ հողային պատվարն արդեն պատրաստ է, պատրաստ է Քուռ վրայի կամուրջը, ռելսերը գցված են Ալյաթ կայարանից (Բաք-*

* Ա. Ի. Միկոյանին նման օրդերներ տրվեցին Ղուկասովին, Մերգուլովին, Լանդաուին, Տեր-Գրիգորյանին ու Թաղիանոսովին ձերբակալելու համար,— Խ. Բ.:

*վից ոչ հեռու) 30 վերստ տարածությամբ։ Պատրաստված է ամբողջ նյութը՝ ռելսերը, կոճերը և այլն, ամբողջը տեղերում։ Բացի դրանից, պաստառին զուգահեռ լավ գետնուղի կա Ջուլֆայից Արաքսի ափերով և այնուհետև Մուղանով մինչև Բաքու։ Այդ ամենը մեծ հարմարություններ են հակառակորդի համար։ Դրա հետ միասին գծի երկու կողմում էլ մուսուլմանական հոծ բնակչություն կա։ Ջուլֆայից մինչև Բաքու տարածությունը, կարծեմ (ճշգրտորեն չեմ ստուգել) 320 վերստ է։ Հնարավոր ու հավանական է, որ իրանք այդ ուղղությամբ կշարժվեն անմիջապես։ Մենք միջոցներ ենք ձեռք առնում ճանապարհը փակելու համար, ուժեղացնում ենք մեր ջոկատները Հաջիքաբուլում, 1 գումարտակ ենք ուղարկում Բաքու — Ջուլֆա ճանապարհով, դուրս ենք բերում երկաթուղու համար պատրաստված ամենահարուստ գույքը։*

*Միաժամանակ մենք Թիֆլիսից հաղորդումներ հաղորդումների հետևից ենք ստանում այն մասին, որ Բաթումում թուրքերի ու գերմանացիների գլխավոր պահանջը զորքերի փոխադրումն է Բաքու։ Թիֆլիսում ուժեղանում է գերմանա-թուրքական «օրիենտացիան»։ Երեկ անգլիական հյուպատոսը կարդում էր ինձ Թիֆլիսի անգլիական հյուպատոսից ստացված մայիսի 10-ի (այսօր 24-ն է) թվակիր նամակը, որի մեջ նշվում էր, որ նույնիսկ անգլիացիների ամենահավատարիմ բարեկամները (ըստ երևույթին հայերը) երես են դարձնում նրանցից, իսկ անգլիացիներին ոչինչ չի մնում բացի այնտեղից փախչելը։ Դուք, հավանորեն, գիտեք արդեն, որ Գեգեչկորիի կառավարությունը չափազանց «ձախ» դուրս եկավ և նրան փոխարինել է Ջխենկելին։ Կցում եմ* «Бакинский рабочий»*-ի կտրուքը մամուլի տեսությամբ, որտեղ բերվում է Թիֆլիսի մենշևիկյան հայերեն «Պայքար» թերթի (մենշևիկների մարզային կոմիտեի օրգանի) կարծիքը։ Դաշնակցականները Թիֆլիսից հաղորդում են ստացել, թե իբր Բաթումում վրացիներին ավտոնոմիա են խոստանում Վիլհելմի պրոտեկտորատով։ Մնացած ամբողջ Անդրկովկասը պետք է ներկայացնի ավտոնոմ Ադրբեջան։ Ուղարկում եմ ձեզ ընկ. Ս. Քավթառաձեի[25] մայիսի սկզբներին գրած նամակ-հոդվածը։ Նամակը հնացել է, բայց նկարագրում է Վրաստանում տիրող դրությունը, և, կարծում եմ, հետաքրքիր կլինի ընկ. Ստալինի համար։*

*Դիմում եմ մեր մերձավոր ռազմական նպատակների հարցին։ Ինչպես արդեն հաղորդել եմ ձեզ, մենք պատրաստվում ենք ամենամոտ ժամանակներում գնալ Ելիզավետպոլի վրա։ Մենք բռնել ենք Ելիզավետպոլից հաղորդվող հեռագրական խոսակցություններ այն մասին, որ այնտեղից պատրաստվում է շարժում Բաքվի վրա կանոնավոր զորքերով (տեղեկությունների համաձայն նրանք մոտ 6 հազար հոգի արդեն Ելիզավետպոլում են վրացի իշխան Մագալովի գլխավորությամբ)։ 4 օր առաջ մեր ջոկատները Հաջիկաբուլում արդեն ընդհարումներ են ունեցել նրանց հեծելազորի հետ։ Հնարավոր է, որ նրանք կանխեն մեզ։ Եթե դրանք միայն Ելիզավետպոլի ուժերը լինեն, հեշտ կլինի նրանց ջարդել այստեղ և անմիջապես մաքրել ճանապարհը մինչև Ելիզավետպոլ, իսկ գուցե նաև մինչև Թիֆլիս։ Եթե նրանց հետևից գալու էլ լինեն թուրքական զորքերը Բաթումից (և հարավից), համենայն դեպս մեզ անհրաժեշտ կլինի գրավել Եվլախի կամուրջը և պաշտպանական գիծը Քուռ ափի երկարությամբ։ Պետք է շտապել Ելիզավետպոլ, այնտեղ, իսկ հետո և նրանից այն կողմը հայերի ապստամբություն բարձրացնելու համար։ Այդ կազդի նաև վրացական գյուղացիության վրա, և Սեյմը կցրվի։ Եթե այդ ապստամբությունը տեղի չունենա և թուրքերը մինչև այդ կարողանան ամրացնել իրենց ձեռքում Վրաստանն ու Թիֆլիսը, այն ժամանակ մենք բոլորովին կմեկուսանանք և ստիպված կլինենք միայն Ապշերոնյան թերակղզին պաշտպանել։ Շարժումը Ելիզավետպոլի վրա մենք մինչև այժմ չենք կարողանում սկսել, որովհետև պատրաստ չենք։ Ինչպես կտեսնեք մեր ռազմածովային գործերի կոմիսար ընկ. Կորգանովի՝ իմ կողմից կցվող զեկուցումից, մեր ուժերը ցրված են Բաքվի նահանգում ու Դաղստանի մարզում։ Հրամանատարական կազմ չկա, չենք կարողանում նույնիսկ այն զորքերի հրամանատար գտնել,*



*որոնք պետք է դեպի Ելիզավետպոլ շարժվեն։ Այս պայմաններում շատ սուր ձևով է ծառացած Բիչերախովի հարցը, որի մասին ես արդեն մի քանի անգամ գրել եմ ձեզ։*

*Հիմա ես ձեզ ուղարկում եմ Բիչերախովին վերաբերող երեք փաստաթուղթ...*

*— Մենք ընկերներ ենք ուղարկել Հյուսիսային Կովկաս անմիջական օգնություն խնդրելով։ Երեկ Պետրովսկից հաղորդում ստացանք (ռադիոյով), որ մեր 2000 մարդուց բաղկացած ջոկատը Նանեյշվիլու[26] գլխավորությամբ (Ստալինը նրան ճանաչում է) արդեն մաքրել է ճանապարհը մինչև Ջերվլյոննայա։ Այսպիսով, հարաբերությունը Հյուսիսային Կովկասի հետ հեշտանում է։ Եթե այնտեղից մեզ օգնություն հասնի, ապա մենք հանգիստ կլինենք Անդրկովկասի համար (միաժամանակ օգնություն ստանալով Բիչերախովից)։*

*Սպասելով փողով, զենքով, մարդկանցով, ցուցումներով օգնության՝*

*Ջերմ ողջույններով՝* Ս. Շահումյան

*Նահանգում ու մարզում մեր ունեցած ձեռնարկությունների՝ ձկնարդյունաբերության, բերքահավաքի, ամբողջ բամբակը Ռուսաստանի համար բռնագրավելու, նավթարդյունաբերության և մյուս բաների մասին կհաղորդեմ հաջորդ անգամ։*

P. S. *Դեկրետավորել ենք նավթային ընդերքի ազգայնացումը, բարձրացրել ենք նավթի գինը մինչև 2 ռ. 35 կոպ.։ Այս մասին ես ձեզ հաղորդել եմ ռադիոյով։*

Ս. Շ.

Տպագրվում է ըստ բնագրի տեքստի

ՍՍՌՄ Կարմիր Բանակի Կենտրոնական Պետական արխիվ, ֆ. 1, ցպ. 1, գ. 82, թթ. 490, 491, 493, 494, բնագիրը։

ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. ՑԽԱԿԱՅԱ Մ. Գ. (1865—1950)— Կոմունիստական պարտիայի հնագույն անդամներից մեկը։ Ստոլիպինյան ռեակցիայի տարիներին կարճ ժամանակով հարել է օտզովիստներին և աստվածաշինարարներին։ 1907 թ. մինչև 1917 թվականը ապրել է արտասահմանում՝ էմիգրացիայում։ 1917 թ. Ռուսաստան է վերադարձել Վ. Ի. Լենինի հետ միասին։ Ստ. Շահումյանը երկար ժամանակ նամակագրություն է ունեցել Մ. Ցխակայայի հետ, հատկապես 1908—1910 թվականներին։*

*2. ԼՈՒՆԱՉԱՐՍԿԻ Ա. Վ. (1875—1933)— 17 տարեկան հասակից մտել է ՌՍԴԲՊ շարքերը, պարտիայի II համագումարից հետո մասնակցել է բոլշևիկյան «Վպերյոդ», «Պրոլետարի», «Նովայա ժիզն» և այլ թերթերի գործունեությանը, ՌՍԴԲՊ IV և V համագումարներին։ Ստոլիպինյան ռեակցիայի տարիներին հարել է մախիզմին, օտզովիստներին։ 1917—1929 թթ. եղել է ՌՍՖՍՌ Լուսավորության ժողկոմ, այնուհետև ՍՍՌՄ ԿԳԿ Գիտական կոմիտեի նախագահ, 1933 թ. Իսպանիայում սովետական դեսպան։*

*3. «ՊՐՈԼԵՏԱՐԻ»— Բոլշևիկյան անլեգալ թերթ, լույս է տեսել 1906 թ. օգոստոսի 21-ից (սեպտեմբերի 3-ից) մինչև 1909 թ. նոյեմբերի 28-ը (դեկտեմբերի 11-ը), Վ. Ի. Լենինի խմբագրությամբ։ Լույս է տեսել 50 համար։ «Պրոլետարի» թերթին Բաքվից աշխատակցում էր Ստ. Շահումյանը։*

*4. Խոսքը Ի. Վ. Ստալինի մասին է (Կոբա)։*

*5. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ Ն. Կ. (1869—1939)— Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության աչքի ընկնող գործիչ, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ, ականավոր մանկավարժ, Վ. Ի. Լենինի կինն ու հավատարիմ բարեկամը։*

*6. Խոսքը Գրիգորի Կոնստանտինովիչ (Սերգո) Օրջոնիկիձեի մասին է։*

*7. Խոսքը Ի. Վ. Ստալինի մասին է (Կոբա)։*

*8. Խոսքը Վիեննայում 1908—1912 թվականներին Տրոցկու հրատարակած մենշևիկյան-լիկվիդատորական, ֆրակցիոն «Պրավդա»-ի մասին է։ Քողարկվելով «արտաֆրակցիոնականության» դիմակով, թերթը պաշտպանում էր օտզովիստներին և ուլտիմատիստներին։ 1912 թ. Տրոցկին և նրա «Պրավդա»-ն հանդիսացան հակապարտիական օգոստոսյան բլոկի կազմակերպիչները։*

*9. «Ռաբոչայա գազետա»—Բոլշևիկների մաս-*

ղի ունեցած այլ ռևոլյուցիաների նման բուրժուական է իր բովանդակությամբ: «Սակայն,— շարունակում է նա,— ռուսական Ռևոլյուցիան միաժամանակ խիստ տարբերվում է հիշյալ ռևոլյուցիաներից մի ուրիշ կողմով։ Բոլոր այդ եվրոպական ռևոլյուցիաները կատարվել են բուրժուազիայի ղեկավարությամբ։ Ռուսական մեծ ռևոլյուցիան կատարվում է պրոլետարիատի ղեկավարությամբ» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1948, էջ 74)։ Նա այս հանգամանքը համարում է ռուսական ռևոլյուցիայի հսկայական առավելությունը եվրոպական բուրժուական ռևոլյուցիաների նկատմամբ, քանի որ ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի հեգեմոն լինելու հանգամանքը կապահովեր դեմոկրատական ռևոլյուցիայի լիակատար ու հետևողական կատարումը և կհեշտացներ բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի սոցիալիստականի վերաճման գործը։

Ստ. Շահումյանն անվերապահորեն բաժանում էր լենինյան այն հայացքը, որ ռուսական ռևոլյուցիան հատուկ տեսակի բուրժուական է, այն գյուղացիական բուրժուական ռևոլյուցիա է։ Նրա տնտեսական հիմքը ագրարային հարցն է։ Պատահական չէ, որ ռուսական բուրժուական ռևոլյուցիայի ժամանակաշրջանում Ռուսաստանի բոլոր հիմնական սոցիալական ուժերն ու նրանց համապատասխան պարտիաները պայքարում էին իրար դեմ՝ գյուղացիության հարցի, ապա, ուրեմն, նաև ագրարային հարցի շուրջը։ Այդ պարտիաներից յուրաքանչյուրը մշակել էր իր ագրարային ծրագիրը։ Ագրարային ծրագիր ունեին թե՛ կադետները, թե՛ օկտյաբրիստները, թե՛ էսեռները և թե՛, վերջապես, ռուսական սոցիալ-դեմոկրատիան։ Հայ բոլշևիկները պրոպագանդելով ագրարային հարցի լենինյան ըմբռնումը մեր իրականության մեջ, հատկապես ընդգծում էին, որ ագրարային հարցը Ռուսաստանում ամենակարևոր, ամենահրատապ հարցերից մեկն է և իր վրա գրավել է բոլոր քաղաքական պարտիաների լուրջ ուշադրությունը։ Պարտիաների այդ պայքարի բովանդակությունն ըստ էության Ռուսաստանի կապիտալիստական զարգացման հնարավոր երկու ուղիներից (ամերիկյան և պրուսական) մեկի ընտրության հարցն էր։ Իսկ այդ ընտրության մեջ գյուղացիությանը պատկանում էր վճռական պատմական դեր՝ կապիտալիզմի զարգացման, ռուսական ռևոլյուցիայի հաղթանակի գործում:

Մեծ Լենինի աշակերտ և զինակից Շահումյանը քաջ գիտակցում էր, որ Ռուսաստանում կատարվող պատմական մեծ իրադարձություններում՝ բռնակալության դեմ մղվող օրհասական կռվում, գյուղացիությունը կատարում է և կկատարի ահագին ու վճռական դեր։

Ագրարային հարցը, գյուղացիական հարցը Լենինի և լենինյանների համար, ըստ էության նաև ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի ռեզերվի, դաշնակցի հարցն էր։ Ահա թե ինչու, հետևելով Լենինին, Շահումյանն այնքան մեծ ուշադրություն է նվիրել ագրարային, գյուղացիական հարցին։

Իսկ ո՞րն էր պրոլետարիատի, նրա պարտիայի՝ սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը։

Ռուսական ռևոլյուցիայի այս արմատական խնդրում ևս ռուսական սոցիալ-դեմոկրատիայի մեջ միասնություն չկար։ Մենշևիկները, ինչպես կազմակերպական և տակտիկական հարցերում, նույնպես և ագրարային հարցում, հեռացան ռևոլյուցիոն մարքսիզմից։

Ռուսական ռևոլյուցիայի բնույթի, նրա էության, ռևոլյուցիայի շարժիչ



ուժերի գնահատման մեջ մենշևիկյան թյուր, հակագիտական, հակապրոլետարական հայացքները ոչ մի խնդրում այնպիսի ցայտունությամբ չեն դրսևորվել, որքան ագրարային հարցում։ Այստեղ, ինչպես կիզակետում, արտահայտվել է մենշևիկների վարած տակտիկայի հակապրոլետարական ամբողջ էությունը։ Մենշևիկները գյուղացիական հարցում որդեգրելով հողի մունիցիպալիզացիայի տեսակետը, ըստ էության ձայնակցում էին կալվածատիրական հողատիրության ու միապետության պաշտպան կադետներին։

Այն հարցին, թե ինչ է իրենից ներկայացնում հողի մունիցիպալիզացիան, պարտիայի IV (Միավորիչ) համագումարի բոլշևիկ պատգամավորները, հետևաբար նաև այդ համագումարի պատգամավոր Շահումյանը, Լենինի գլխավորությամբ, պարտիայի բոլոր անդամներին ուղղած իրենց դիմումում գրում էին. «Մունիցիպալիզացիա նշանակում է՝ գյուղացիների սեփականությունն իրենց հողաբաժինների նկատմամբ և զեմստվոներին հանձնված կալվածատիրական հողերի վարձակալությունը գյուղացիների կողմից... Որպես լիբերալ-չինովնիկական ռեֆորմ, ամենևին այն չի տա գյուղացիներին, ինչ նրանց պետք է, և միևնույն ժամանակ նոր ուժ, նոր ազդեցություն կընձեռի զեմստվոներում տիրապետող բուրժուական հակապրոլետարական տարրերին, փաստորեն նրանց ձեռքը հանձնելով հողերի ֆոնդի բաշխումը» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, I մաս, էջ 150)։ Այնուհետև դիմումի հեղինակները, մերկացնելով մենշևիկների կադետացումը նաև ագրարային հարցում, գրում էին, թե «Ըստ էության դա (մունիցիպալիզացիան—Տ. Ա., Մ. Մ.), ինչ-որ մի միջին բան է իսկական ագրարային ռևոլյուցիայի և կադետական ագրարային ռեֆորմի միջև» (նույն տեղում)։

Շահումյանը հողի մունիցիպալիզացիայի հարցում եռանդագին պաշտպանում էր լենինյան այն հարցադրումը, որ ռևոլյուցիոն գյուղացիությունը ձգտում է հողը գյուղացիական եղանակով մաքրել կապիտալիզմի զարգացման համար, իսկ հողի մունիցիպալիզացիայի կենսագործումը կնշանակեր՝ հողի կալվածատիրական մաքրում կապիտալիզմի համար: Հետևաբար, մենշևիկներն ըստ էության կողմնակից էին հողի կալվածատիրական մաքրմանը կապիտալիզմի համար։

Լենինյան ագրարային ծրագրի պաշտպանության դիրքերից Շահումյանը 1905—1907 թվականների ռևոլյուցիայի ժամանակաշրջանում ռևոլյուցիոն գործունեության ամբողջ թափն ու բոցաշունչ ռևոլյուցիոներ հրապարակախոսի գրչի ուժն ուղղում էր ինչպես միապետության, կադետացող մենշևիկների ագրարային քաղաքականության, այնպես էլ կադետների ծրագրի հակաժողովրդական բնույթի անխնա մերկացմանը։

Պաշտպանելով ստոլիպինյան ագրարային ռեֆորմի լենինյան ըմբռնումը և մինչև արմատները մերկացնելով այդ ռեֆորմի հակառևոլյուցիոն էությունը, Ստ. Շահումյանը «Իրականություն և հեռանկարներ» իր հոդվածում գրում էր. «Ամենից խոշոր ու կարևոր ռեֆորմը այդ ճանապարհին (կապիտալիզմի զարգացման—Տ. Ա., Մ. Մ.) անկասկած նոյեմբերի 9-ի ռեֆորմն էր։

...Դժբախտաբար այդ օրենքը կրում է իր վրա նույն դասակարգային ծայրահեղ սահմանափակության ու շահամոլության կնիքը, ինչ որ 61 թվականի ռեֆորմը» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1948, էջ 328)։

Ստ. Շահումյանի համար միանգամայն պարզ էր, որ ագրարային հարցի լուծման միապետական-ստոլիպինյան եղանակը անկարող էր բարելավել ռուսական գյուղացիության վիճակը, Ռուսաստանը ներգրավել կապիտալիստական զարգացման ոլորտը։ «Քանդված ու քայքայված գյուղացուն,— գրում էր Շահումյանը,— հարկավոր էր ոչ թե, կամ ավելի ճիշտ՝ ոչ միայն՝ դուրս գալ համայնքից, այլ հարկավոր էր խոշոր նյութական օժանդակություն իր տնտեսությունը վերականգնելու համար։ Հարկավոր էին... միլիարդների ծախսեր պետության կողմից հօգուտ գյուղացիության։ Իսկ նոյեմբերի 9-ի «ռեֆորմը» ընդհակառակը նոր գումարներ է ուզում ստանալ գյուղացիներից հօգուտ պամեշչիկների, որոնք «գյուղացիական բանկի» օգնությամբ եռապատիկ ու քառապատիկ գներով ծախում են գյուղացիներին իրենց հողերը» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1948, էջ 328)։

Ուշի ուշով հետևելով ցարական կառավարության ագրարային քաղաքականությանը, Ստեփան Շահումյանը բացահայտում է դրա հակաժողովրդական, ռեակցիոն էությունը։ Ուշագրավն այն է, որ յուրովի մեկնաբանելով ու պրոպագանդելով ցարական ագրարային քաղաքականության լենինյան ըմբռնումը, Ստեփան Շահումյանը գորեմիկինյան ագրարային օրինագծի քննադատության միջոցով, օրինագիծ, որի բուն նպատակն էր հողը գյուղացիներին վաճառելու միջոցով կասեցնել գյուղացիական շարժումը, իր մտքերի ամբողջ հարստությամբ բանվորական ու գյուղացիական մասսաներին զինում է պատմականորեն հասունացած խնդիրների լուծման անհրաժեշտության գիտակցությամբ։

Շահումյանի այս պրոպագանդան պարարտ հող ուներ գյուղացիական մասսաների մեջ, որոնց ներկայացուցիչները Պետական դումայում, հակադրվելով գորեմիկիններին, հայտարարում էին. «Ինչո՞ւ հողը գնենք, մի՞թե մենք եկել ենք Անգլիայից և կամ այլ վայրերից։ Մենք այստեղացի ենք. հողը մերն է. է՛, էլ ինչո՞ւ պետք է գնենք մեր իսկ հողը։ Այդ հողը տասն անգամ մենք արդեն մշակել ենք մեր արյունով, քրտինքով ու փողով»։

Ստեփան Շահումյանը քննադատում է Գորեմիկինի ագրարային օրինագիծը, և դրանով իսկ մերկացնում կոնտրռևոլյուցիոն կադետների երկերեսանիությունը։ «Պետական դումայի նոր քայլը» հոդվածում նա նշում է, որ թեև Գորեմիկինի այդ օրինագծի կապակցությամբ կադետական դուման հոխորտում էր դիմել ժողովրդին, բայց հենց որ խոսքից գործին անցնելու մոմենտը հասավ, կադետներն արմատապես փոխեցին իրենց մտադրությունը, անցան սեհարյուրակայինների և օկտյաբրիստների կողմը։ «Այդպիսով,— ամփոփում է իր միտքը Շահումյանը,— այս հարցումն էլ կադետները գնացին աջակողմյանների հետ, նրանց վրա հենվեցին...

Կադետները ամեն մի խնդրում, ուր խոսքից պետք էր անցնել գործի — պարզ ցույց են տալիս, որ իրանք դեմ են ռևոլյուցիային, որ նրանք ուզում են զինաթափ անել ռևոլյուցիան, խաղաղացնել երկիրը, և դաշն կապել հին ռեժիմի հետ» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1948, էջ 175)։

Մերկացնելով կադետների ագրարային ծրագրի էությունը, Ստ. Շահումյանը գրում էր, որ բուրժուական լիբերալիզմը «...ձգտում էր իր խնամակալության տակ առնել, զսպել, և չափավորել գյուղացիական շարժումը» (նույն տեղում, էջ 116)։ Նա որոշակիորեն տեսնում էր, որ կադետների նպատակն է կտրել գյուղացիությանը ռևոլյուցիայից, տանել նրան ռեֆորմների ճանա-



պարհով, գրավել նրան իր կողմը։ Նա էական տարբերություն չէր գտնում կադետների գծի և սեհարյուրակային ու օկտյաբրիստական միապետության՝ ագրարային հարցում վարած քաղաքականության միջև։

Պատմական զարգացման ամբողջ ընթացքը գնալով ավելի պարզում էր գյուղացիության համար կադետների այդ գծի հակառևոլյուցիոն էությունը։ «Այժմ պետական Դումայում տեղի ունեցած վերջին դեպքերը (ագրարային հարցի շուրջ եղած վիճաբանությունները—Տ. Ա., Մ. Մ.),—գրում է Շահումյանը, ավելի ու ավելի պարզում են գյուղացիների համար իրերի դրությունը... Բանվորների և «աշխատավորների» (գյուղացիների) գրուպաները միացած կռվում են Դումայում թե՛ կառավարության դեմ, հանձին նրա ստոր ու զզվելի մինիստրության, և թե՛ Դումայի մեծամասնությունը կազմող ժողովրդական ռևոլյուցիայի և ժողովրդական ազատության թշնամի կադետների դեմ» (նույն տեղում)։

Կադետները, ժխտելով դասակարգային պայքարը, կոչ էին անում գյուղացիությանը՝ ընթանալ ռեֆորմների ուղիով, տվյալ դեպքում «պատմական մեծ նշանակություն ունեցող» 1861 թվականի ռեֆորմի ուղիով։ Հակադրվելով կադետների այդ ռեֆորմատորությանը, Շահումյանը պաշտպանում էր հարցի լենինյան ըմբռնումը և ասում, որ ոչ թե պետք է ռեֆորմներ աղերսել, այլ դասակարգային պայքարի, ռևոլյուցիայի միջոցով է, որ գյուղացիությունը կարող է բավարարել իր կենսական պահանջը՝ ստանալ «հող և ազատություն»։ «Ձե՛ն օգնի կառավարությանը այն չնչին ռեֆորմները, որ — ինչպես հաղորդում են հեռագրերը — կառավարությունը որոշել է մտցնել գյուղացիների իրավական դրության մեջ,— ասում էր Շահումյանը։

Ռևոլյուցիայի այս հուժկու և փոթորկոտ օրերում ապարդյուն և ծիծաղելի են այն խղճուկ ռեֆորմները, որոնցով ուզում է ազատել իրան՝ մեռնող միապետությունը։

Ամբողջ հողը և ամբողջ ազատությունը — որոտում է գյուղացիությունը, իսկ այդ կարող է տալ նրան ոչ թե մեռնող բյուրոկրատիան, այլ միայն և միայն հաղթական ռևոլյուցիան» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1948, էջ 211)։

Հատկանշական է, որ Շահումյանը, հետևելով Լենինին, գյուղացիության տնտեսական և քաղաքական կենսական պահանջները դիտում է անխզելի միասնության մեջ։ «Ամբողջ հողը և ամբողջ ազատությունը — դրանք մեկը մյուսին ծնող, մեկը մյուսին պայմանավորող պահանջներ են»,— գրում է Շահումյանը։ Այս միտքը պատկերավոր ձևով այսպես է արտահայտել Սպանդարյանը, գրելով, որ «գյուղացին պետք է հասկանա, որ հողը և ազատությունը ամենասերտ կերպով կապված են միմյանց հետ և եթե շաղկապ «և»-ը չքանա, կկորչեն և՛ հողը և՛ ազատությունը» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 211, Ս. Սպանդարյան — Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր, էջ 80)։

Կադետներն իրենց ագրարային ծրագրով անջատում էին գյուղացիության տնտեսական ու քաղաքական այդ պահանջները և դրանով իսկ փաստորեն, քողարկված ձևով գյուղացիությանը մերժելով քաղաքական ազատությունը, նրան զրկում են նաև հողից։

Ըստ էության նույն դիրքերում էին կանգնած նաև մենշևիկները։ Այս տեսակետից բոլորովին պատահական չէր, որ մենշևիկները քրտնաջան կերպով հորդորում էին գյուղացիներին, որ կադետական դուման հող կտա նրանց, որ

*նրանք իրենց հույսը պետք է դնեն Պետական դումայի վրա և ոչ թե դիմեն բռնի միջոցների։ Մերկացնելով մենշևիկների, մասնավորապես Գ. Վ. Պլեխանովի այդ կարգի քարոզները, Ստ. Շահումյանը «Պլեխանովի նամակի առթիվ» իր հոդվածում, 1906 թվականի հունիսին, այսինքն՝ պարտիայի IV (Միավորիչ) համագումարից անմիջապես հետո գրում էր. «Դուման հող է պահանջում գյուղացիության համար, ասում է Պլեխանովը, հետևապես գյուղացիությունն էլ պետք է գոհ լինի և «միահամուռ կերպով» պաշտպան հանդիսանա Պետական դումային։ Դա... սխալ է։ Հող պահանջել գյուղացիության համար, նշանակում է պահանջել՝ գրավումն (կոնֆիսկացիա) բոլոր արքունական, կայսերական, կալվածատիրական և այլ հողերի։ Այդ տեսակ պահանջ չեն դրել երբեք կադետները և Դուման. նրանք ուզում են միայն գնել կալվածատերերից նրանց հողերը, ուրիշ խոսքով ծախել գյուղացիությանը իրեն պատկանելիք հողերը։ Պլեխանովը նորից կրկնում է կադետների սուտը, նորից,— չնայած իր բարի ցանկություններին,— խաբում է գյուղացիներին ու բանվորներին, և մթագնում նրանց քաղաքական գիտակցությունը» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 109)։*

*Ստեփան Շահումյանը պայքարելով մենշևիկների կադետականացման դեմ և պաշտպանելով ռուսական կոմունիստների ագրարային ծրագիրը, միաժամանակ ռևոլյուցիայի հեգեմոն պրոլետարիատի առաջ, որպես մերձավոր հեռանկար, դնում էր այն հարցը, որ բավական չէ տապալել կալվածատերերի ու բյուրոկրատիայի տիրապետությունը, այլ գյուղացիական չքավորությանը պետք է կազմակերպել, համախմբել պայքարելու հանուն լիակատար դեմոկրատական կարգերի, ապա և հանուն սոցիալիզմի։ Նա հատկապես նշում էր, որ այս խնդրի անտեսումը մենշևիկների գործունեության հիմնական արատներից մեկն է։*

*Ստեփան Շահումյանը տեսնում և քաջ ըմբռնում է պրոլետարի և մանր տնտեսատեր գյուղացու միջև եղած բոլոր տարբերությունները։ Եվ հակադրվելով մենշևիկներին, նա ընդգծում է լենինյան այն գաղափարը, թե հանուն դեմոկրատիզմի և հանուն սոցիալիզմի պրոլետարիատի մղած պայքարի պայմանները կլինեն տարբեր, քանի որ նա մեկի և մյուսի համար պայքարելիս կունենա տարբեր դաշնակիցներ։ Հանուն դեմոկրատիզմի պայքարը պրոլետարիատը կմղի բուրժուազիայի, հատկապես մանր-բուրժուազիայի հետ միասին, իսկ հանուն սոցիալիզմի պայքարը մղում է ընդդեմ ամբողջ բուրժուազիայի։ Ընդդեմ կալվածատերերի ու չինովնիկների նա պայքարում է ամբողջ գյուղացիության հետ միասին, իսկ ընդդեմ բուրժուազիայի, հանուն սոցիալիզմի պայքարը նա կարող է մղել միայն գյուղական պրոլետարիատի հետ միասին։ Խորապես համոզված լինելով դրանում, Շահումյանը անդուլ կերպով պրոպագանդում է Լենինի այն միտքը, թե գիտակից բանվորի պարտքն է՝ գիտակցել դեմոկրատական և սոցիալիստական պայքարի տարբերությունը, թե նա՝ գիտակից բանվորը, պետք է ըմբռնի ու իր համար հիմնական սկզբունք դարձնի այն, որ «...չկա և ներկայումս չի կարող լինել սոցիալիզմը մոտեցնելու մի այլ միջոց, քան քաղաքական լիակատար ազատությունը, քան դեմոկրատական ռեսպուբլիկան, քան պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան» (Վ. Ի. Լենին, Երկեր հ. 9, էջ 129)։ Նրա համար աներկբայելի ճշմարտություն էր Վ. Ի. Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» հանճարեղ*



*աշխատության այն խոսքերը, թե՝ «ամբողջ ժողովրդի, և առանձնապես գյուղացիության գլուխ անցած՝ լիակատար ազատությա՛ն համար, դեմոկրատական հետևողական հեղաշրջմա՛ն համար, ռեսպո՛ւբլիկայի համար։ Բոլոր աշխատավորների և շահագործվողների գլուխ անցած՝ սոցիալիզմի՛ համար։ Իրոք, այսպես պետք է լինի իրականում ռևոլյուցիոն պրոլետարիատի քաղաքականությունը, այս է դասակարգային լոզունգը, որ պետք է թափանցի և իրենով որոշի յուրաքանչյուր տակտիկական հարցի լուծումը, բանվորական պարտիայի յուրաքանչյուր գործնական քայլը ռևոլյուցիայի ժամանակ» (Նույն տեղում, էջ 132)։ Նա պարզորոշ տեսնում է, որ ռուսական բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակի միակ երաշխիքը, անպայմանական նախադրյալը հանդիսացող բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, դրա կոնկրետ քաղաքական արտահայտությունը՝ «պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան» կարող է և պետք է հիմնվի հողի նացիոնալիզացիայի միջոցով ագրարային կնճռոտ հարցի լուծման վրա։ Հենց այս դիրքերից էլ Ստեփան Շահումյանը բոլշևիկյան կրքոտությամբ պայքարում էր մենշևիկների ագրարային ծրագրի դեմ, որի հիմքում ընկած էր գյուղացիության՝ որպես պրոլետարիատի դաշնակցի՝ դերի թերագնահատումն ու անտեսումը և լիբերալ բուրժուազիայի դաշինքի գաղափարը վերջինիս հեգեմոնիայի պայմաններում։ Դրանով իսկ նրանք օժանդակում էին լիբերալ բուրժուազիային՝ գյուղացիությանը գրավելու իր կողմը և դառնալու ռևոլյուցիայի հեգեմոն։ Այս լույսի տակ հասկանալի է դառնում, թե ինչու Շահումյանն իր բոլոր ուժերն ու ռևոլյուցիոն եռանդը գործադրում էր, որպեսզի մերկացվի մենշևիկների կադետականությունը և ռևոլյուցիայի մեջ ապահովվի բանվորների ու գյուղացիների դաշինքը։*

*Գյուղացիական հարցը, ինչպես հայտնի է, ներքուստ սերտորեն կապված է ազգային հարցի հետ։ 1905—1907 թվականների ռևոլյուցիայի ժամանակաշրջանում Անդրկովկասի կոնկրետ պայմաններում առանձնապես ցայտուն դրսևորվեց ազգային և ագրարային հարցերի այդ ներքին կապը։ Ահա թե ինչու Շահումյանը գյուղացիական հարցին նվիրված իր աշխատություններում ցույց է տալիս, որ գյուղացիության ռևոլյուցիոն թափը զսպելու և խափանելու նպատակով, ռեակցիոն հակառևոլյուցիոն բանակը ժողովուրդների միջև սերմանում է ազգային թշնամանք, հրահրում ազգամիջյան կռիվներ։ Դիմակազերծ անելով բանվորական ու գյուղացիական դեմոկրատիայի երդվյալ թշնամիների այդ տակտիկան՝ Շահումյանը գրում էր. «Մեր երկրի ամենամեծ դժբախտություններից մեկը ներկայումս ազգայնական կռիվն է... Թուրք և հայ գյուղացիությունը՝ փոխանակ համերաշխությամբ կռվելու հանուն հողի և ազատության, անմիտ, եղբայրասպան կոտորածներով են զբաղված, սոսկալի է այդ և անմտություն է, ողբերգական անմտություն» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 120, 125)։*

*Նրա հայացքից չէր վրիպում այն, որ բանվորական և գյուղացիական մասսաների դասակարգային ինքնագիտակցության զարգացման ցածր մակարդակի պայմաններում, հակաժողովրդական, բուրժուա-նացիոնալիստական պարտիաները ազգային և գյուղացիական հարցերի այդ կապն օգտագործում էին մասսաների մեջ ազգային թշնամանք սերմանելու և այդ միջոցով դասակարգային պայքարը ազգային պայքարով նենգափոխելու համար, դրանով իսկ*

գյուղացիությանը պրոլետարիատի ռևոլյուցիայի ռեզերվից դարձնելու բուրժուազիայի ռեզերվ։

Մենշևիկները ռևոլյուցիայի մեջ իրենց տակտիկայի կեղծ տրամաբանության դիրքերից չէին կարող և չըմբռնեցին ո՛չ ռևոլյուցիայի բնույթը, ո՛չ էլ նրա շարժիչ ուժերը։ Նրանք չէին կարող և չըմբռնեցին նաև ռուսական ռևոլյուցիայի ընթացքը, իրադարձությունների պատմական իմաստը։ Շահումյանը ռևոլյուցիայի մեջ լենինյան տակտիկայի սկզբունքների պաշտպանության դիրքերից ուշի-ուշով հետևում էր կադետների և կադետացող մենշևիկների հակաժողովրդական գործունեության ամեն մի քայլին։ Այն ժամանակ, երբ մենշևիկները ձայնակցելով կադետներին 1905 թվականի հոկտեմբերի 17-ի ստրահռչակ մանիֆեստը հայտարարում էին ռևոլյուցիայի լիակատար հաղթանակ, նա զգուշացնում էր ռևոլյուցիոն մասսաներին, որ դա ռևոլյուցիայի միայն առաջին հաղթանակն է։ Ռևոլյուցիայի լիակատար հաղթանակի համար հարկավոր էր տապալել միապետությունը։ Այդ մասին է խոսում Շահումյանը մասնավորապես «Ռուսական ռևոլյուցիայի տրամաբանությունը» հոդվածում։

Ստ. Շահումյանը զինված պարտիայի V համագումարի որոշումներով, եռանդուն պայքար է ծավալում՝ մերկացնելու կադետների երկերեսանիությունը, անհետևողականությունն ու կիսատ-պռատությունը, մասնավորապես նրանց հաշտարար դերի ռեակցիոն էությունը։

«Ֆրանկֆուրտյան խոսարան» որակելով կադետական Պետական դուման, նա մերկացնում է կադետներին ու մենշևիկներին և անդուլ պրոպագանդում այն միտքը, որ «այդ անբան հիմնարկը» ոչինչ չի կարող անել ժողովրդի տրկական շղթաները վերջնականապես ոչնչացնելու համար, որ նա անզոր է ազատագրություն ձեռք բերելու ժողովրդի համար։ Ժողովրդին նախազգուշացնելով «կոնստիտուցիոն պատրանքներով» տարվելուց, նա հատկապես դիմակազերծ է անում կադետներին, «նրանց կիսատ-պռատ և ըստ էության կոնտրռևոլյուցիոն քաղաքականությունը»։

Հիրավի, կադետներն ու մենշևիկները, ինչպես նաև ժողովրդին թշնամի մյուս հոսանքները ամեն կերպ արգելակում էին ռևոլյուցիոն ժողովրդի ինքնագործունեության, պատմական նախաձեռնության ծավալմանը։ Ստեփան Շահումյանը կոչ էր անում ժողովրդին՝ է՛լ ավելի ծավալել ռևոլյուցիոն ինքնագործունեությունը։ Նա մեծ ոգևորությամբ ապրում էր 1905 թվականի հոկտեմբեր-դեկտեմբերյան պատմական օրերի ռևոլյուցիոն եռուզեռը, դրա մեջ տեսնելով մասսաների՝ միապետությունը տապալելու վճռական կամքի, քաղաքական կրքի բարձր դրսևորումը։

Հայտնի է, որ դեկտեմբերյան զինված ապստամբությունը պարտություն կրեց։ Հայտնի է և այն, որ մենշևիկները, այդ «լավ օրերի սպասողները», «բուրժուազիայի ձախանալուն սպասողները» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, «Լ. Մարտովի նոր հայտնագործությունը» հոդվածը) պատմական հեռանկարը կորցրած, նվնվում էին ժողովրդի ռևոլյուցիոն գործողությունների առթիվ, հանդես գալով Պլեխանովի այն ստրահռչակ թեզով, թե «հարկավոր չէր զենք վերցնել»։

Ստ. Շահումյանը հաստատ կանգնած էր լենինյան այն տեսակետին, որ «ավելի վճռականորեն» — «ափսոս զենք քիչ վերցրինք»։

Պատմական զարգացման օրինաչափությունների գիտական իմացությու-



նը լենինյաններին, մասնավորապես Շահումյանին, համակում է խոր հավատով ու լավատեսությամբ ռևոլյուցիայի ապագայի նկատմամբ, ժողովրդական մասսաների ստեղծագործական ուժի ու եռանդի նկատմամբ, ռևոլյուցիայի անխուսափելի հաղթանակի նկատմամբ։

Հենց այդ լավատեսությամբ էր համակված Շահումյանը նաև ռևոլյուցիայի վայրէջքի տարիներին, ստոլիպինյան ռեակցիայի օրերին, երբ ռևոլյուցիայի ուղեկիցների շրջանում տիրապետող էին դարձել հուսահատությունն ու անկումայնությունը։ Դեռևս 1905 թվականին Շահումյանը գրում էր, որ «պատմությունը երբեք տեղիք և իրավունք չի տալիս իրեն ճշմարիտ ընբռնողներին, հոռետես լինելու իր վերաբերմամբ», իսկ ռեակցիայի տարիներին «Գորկու մասին» իր հայտնի հոդվածում նա արձանագրում և ընդգծում է «մասսաների ստորին խավերի զվարթ, կենսունակ տրամադրությունը» ի հակակշիռ իրականությանը «անձնական հիասթափության և ջղայնության ակնոցների միջով նայող մարդկանց»։

Շահումյանի լավատեսությանը հատուկ է մարտնչող ոգին։ Նա քաջ գիտակցում է, որ ռևոլյուցիայի հաղթանակը տարերայնորեն, ինքնահոսի կարգով չի գա։ Այլ այդ հաղթանակի համար պետք է կազմակերպել մասսաներին նոր գրոհի՝ ընդդեմ միապետության։ Եվ իրոք, նա իր ամբողջ գործունեությամբ հանդես եկավ որպես մասսաների այդ նոր ռևոլյուցիոն գրոհը կազմակերպող լենինյան գվարդիայի աննկուն մարտիկ։ Դրա մասին է վկայում այն անհաշտ ու սկզբունքային պայքարը, որ ծավալեց Շահումյանը ստոլիպինյան ռեակցիայի տարիներին մենշևիկ-լիկվիդատորների, օտզովիստների դեմ՝ մարքսիզմի թեորիայի բնագավառում։

Լենինի զինակից Շահումյանի լավատեսությունը պատմականորեն արդարացավ։ Ռուսական ռևոլյուցիան, անցնելով ստոլիպինյան ռեակցիայի և և ապա առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի դաժան բովով, հաղթանակեց. միապետությունը Ռուսաստանում տապալվեց։ Ստ. Շահումյանը ապրեց և տեսավ ո՛չ միայն միապետության տապալումը, այլև հանդիսացավ բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճման ականավոր առաջամարտիկներից մեկը, սովետական կարգերի ստեղծման լենինյան կազմակերպիչներից մեկը Անդրկովկասում։

Հավատարիմ լենինյան Ստեփան Շահումյանն իր արժանի տեղն ունի միջազգային կոմունիստական շարժման զարգացման գործում. և այստեղ էլ նա իր մարքս-լենինյան գաղափարական ամբողջ ժառանգությամբ սոցիալիզմ և կոմունիզմ կառուցող մասսաների հետ է։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մեր երկիրը ձեռնամուխ է եղել կոմունիստական շինարարության այն հոյակապ տնտեսական ու կուլտուրական խնդիրների կատարմանը, որ առաջադրել է պարտիայի XX համագումարը։ Այդ խնդիրների իրականացման համար պահանջվում է է՛լ ավելի բարձրացնել ժողովրդական տնտեսության ղեկավարման մակարդակը։ Տնտեսության կազմակերպման ու ղեկավարման ամբողջ աշխատանքը կատարում է Սովետական պետությունը։ Ուստի և Սովետական պետության հետագա ամրապնդումը, նրա աշխատանքի կատարելագործումը կոմունիստական շինարարության ներկա էտապի ամենահրատապ խնդիրներից մեկն է։

Այս հարցը ո՛չ միայն վիթխարի գործնական նշանակություն ունի, այլև առաջնահերթ տեսական նշանակություն է ձեռք բերում մեր օրերում, երբ ռևիզիոնիզմը անպատկառ ու ցինիկ կերպով անտեսում է սոցիալիստական պետության զարգացման այն հիմնական օրինաչափությունները, որոնք հայտնագործել են Մարքսը, Էնգելսը և Լենինը, որոնք զարգացվել ու հարստացվել են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների պրակտիկայով, սոցիալիզմի շինարարությամբ ու սոցիալիստական պետությունների գործունեությամբ։ Ներկա հոդվածում սոցիալիստական պետության մարքս-լենինյան թեորիայի որոշ հարցեր քննության են առնվում կոմունիստական շինարարության տվյալ էտապի պրակտիկայի, պարտիայի XX համագումարի պատմական որոշումների, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումների լույսի տակ։

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԱՌԱՋՆԱՅՆՈՒԹՅՈՒՆ, ԲԱՅՑ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՋՆՈՒԹՅՈՒՆ

Մարքսիզմ-լենինիզմը բացահայտել է հասարակության զարգացման օրինաչափությունները, հասարակական կյանքի տարբեր կողմերի փոխադարձ կապն ու փոխներգործությունը։ Մարքսի գիտական մեծ սխրագործությունն այն էր, ինչպես ասում է Էնգելսը, որ նա հայտնագործեց պատմության մատերիալիստական ըմբռնումը, որի համաձայն «...գոյության անմիջական նյութական միջոցների արտադրությունը և դրանով իսկ ժողովրդի կամ էպոխայի տնտեսական զարգացման յուրաքանչյուր տվյալ աստիճանը կազմում են այն



հիմքը, որից զարգանում են տվյալ մարդկանց պետական հաստատությունները, իրավական հայացքները, արվեստը և նույնիսկ կրոնական պատկերացումները, ուստի և որով դրանք պետք է բացատրվեն,— և ոչ թե ընդհակառակը...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 206, Հայպետհրատ, 1950 թ.)։

Բայց եթե Մարքսը և Էնգելսը ապացուցել են պետության ածանցված լինելը տնտեսական բազիսից, ապա դա ամենևին չի նշանակում, որ նրանք ժխտել են պետության դերն ու նշանակությունը նույն այդ տնտեսական պատվանդանի զարգացման գործում։ Ընդհակառակը, նրանք իրենց շատ աշխատություններում գրել են, որ եթե որևէ մեկը էկոնոմիկայի առաջնայնության և վերնաշենքի երկրորդայնության դրույթն աղավաղում է այն իմաստով, «որ իբր տնտեսական մոմենտը միակ որոշիչ մոմենտն է, այն ժամանակ այդ պնդումը կվերածվի ոչինչ չասող մի աբստրակտ, անմիտ ֆրազի» (նույն տեղը, էջ 628)։

Բացահայտելով տնտեսական բազիսի և վերնաշենքային երևույթ հանդիսացող պետության դիալեկտիկան, Մարքսը և Էնգելսը ցույց տվին, որ պետությունը, մեկ անգամ արդեն հանդես գալով, դառնում է ինքնուրույն մի ուժ, որը, ընդհանուր առմամբ հետևելով էկոնոմիկայի, արտադրության շարժմանը, միաժամանակ ներգործում է նաև արտադրության շարժման վրա՝ արագացնելով կամ արգելակելով նրա զարգացումը։

Զարգացնելով մարքսիզմի այդ դրույթը, Վ. Ի. Լենինը մշակեց այն տեսությունը, ըստ որի պետությունը, այսինքն՝ քաղաքական ուժը ո՛չ միայն ակտիվ ներգործություն է ունենում տվյալ էկոնոմիկայի վրա, այլև այնպիսի մի քաղաքական ուժի օգնությամբ, ինչպիսին է պրոլետարիատի դիկտատուրան, ստեղծում է նոր տնտեսակարգ։

Իր բազմաթիվ երկերում Վ. Ի. Լենինը ցույց է տվել սոցիալիստական ռևոլյուցիայից բխող պրոլետարիատի դիկտատուրայի պատմական անհրաժեշտությունը, դերն ու խնդիրները։ Պրոլետարիատը բուրժուական հասարակության մեջ չի կարող պատրաստի ձևով սոցիալիստական արտադրական հարաբերություններ գտնել, նա միայն իր քաղաքական տիրապետության ուժով է ստեղծում այդ հարաբերությունները և այդ իսկ պատճառով սոցիալիստական ռևոլյուցիայի ժամանակ, ինչպես գրում է Վ. Ի. Լենինը, «խորտակման խնդիրներին ավելանում են նոր չլսված դժվար խնդիրներ՝ կազմակերպական խնդիրներ» (Երկեր, հ. 27, էջ 90)։ Ահա հենց այդ կազմակերպական խնդիրները, այսինքն՝ նոր հասարակության շինարարության կազմակերպման խնդիրներն է կատարում պրոլետարիատի նոր պետությունը։ Պրոլետարիատի դիկտատուրայի, որպես պետության, էությունն արդեն ոչ միայն և ոչ այնքան ճնշումն է, որքան ստեղծագործումը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը։ Պարզաբանելով այդ դրույթը, Վ. Ի. Լենինը գրում է. «...պրոլետարական դիկտատուրայի էությունը միմիայն բռնության մեջ չէ և ոչ էլ գլխավորապես բռնության մեջ։ Նրա գլխավոր էությունը աշխատավորների առաջավոր ջոկատի, նրա ավանգարդի, նրա միակ ղեկավարի, պրոլետարիատի կազմակերպվածությունն ու կարգապահությունն է։ Նրա նպատակն է՝ ստեղծել սոցիալիզմ...» (Երկեր, հ. 29, էջ 476)։

Ելնելով պրոլետարիատի դիկտատուրայի փորձից և սոցիալիզմի շինարարության ասպարեզում նրա ունեցած դերից, զարգացնելով մարքսիզմը

տնտեսական բազիսի և քաղաքական վերնաշենքի հարաբերակցության հար-
ցում, Վ. Ի. Լենինը ձևակերպեց իր հանճարեղ սահմանումը այն մասին, որ
թեև էկոնոմիկան առաջնայնություն ունի քաղաքականության նկատմամբ,
բայց քաղաքականությունն առաջնություն ունի էկոնոմիկայի հանդեպ: «Քա-
ղաքականությունը,— գրում է Վ. Ի. Լենինը,— չի կարող առաջնություն չու-
նենալ էկոնոմիկայի նկատմամբ։ Այլ կերպ դատել՝ նշանակում է մարքսիզմի
այբուբենը մոռանալ» (Երկեր, հ. 32, էջ 88)։

Վ. Ի. Լենինի այս խոսքերն առանձնակի ուժով են հնչում մեր օրերում,
երբ ռևիզիոնիստները, հատկապես հարավսլավական ռևիզիոնիստները նորից
ձգնում են «զարգացնել» մարքսիզմը պետության տեսության հարցերում, մո-
ռանալով ընդամին մարքսիզմի այբուբենը։ Չէ՞ որ մարքսիզմ-լենինիզմի արդի
ռևնեգատների թեզիսների մեջ ամենամոդայականը կապիտալիզմից դեպի
սոցիալիզմը կատարվող անցման շրջանում պետության մահացման թեզիսն է։
Ընդ որում, ինչպես ասում են նրանք, պրոլետարական պետության մահացու-
մը պետք է սկսվի նրա կազմակերպական, տնտեսական ֆունկցիաների վե-
րացումից։ Այսպիսով, նրանք ցանկանում են պրոլետարիատի դիկտատուրայի
էությունը զրկել նրա ամենահիմնական գծերից, նրա գործունեության բովան-
դակությունից, փորձում են աշխատավոր մասսաներին զրկել սոցիալիզմի և
կոմունիզմի կառուցման այդ միակ զենքից։ Քողարկվելով մարքսիստական-
լենինյան ֆրազներով, կեղծելով Վ. Ի. Լենինի մտքերը, նրանք իրենց ծրագ-
րում հրամցնում են ինչ-որ խառնաշփոթ ճամարտակություններ, որոնք ամ-
բողջապես հակասում են պրոլետարիատի դիկտատուրայի դերի, խնդիրների,
նրա զարգացման հեռանկարների ու մահացման լենինյան ուսմունքին։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԱՀԱՑՈՒՄ ՆՐԱ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՄԻՋՈՑՈՎ

Ո՞րն է պրոլետարական պետության մարքս-լենինյան ուսմունքի էու-
թյունը։

Կատարելով սոցիալիստական ռևոլյուցիա, պրոլետարիատը կազմակերպ-
վում է որպես տիրապետող դասակարգ, այսինքն՝ ստեղծում է պրոլետարիա-
տի դիկտատուրա։ Պրոլետարիատի դիկտատուրայի պատմական միսիան է՝
պաշտպանել ռևոլյուցիայի նվաճումները և կառուցել կոմունիզմ։ Նա իր այդ
միսիան իրականացնում է երկրի ներսում դասակարգային թշնամուն ճնշելու,
արտաքին դասակարգային թշնամու հարձակումներից երկիրը պաշտպանելու
ֆունկցիաների, ինչպես նաև իր տնտեսական-կազմակերպչական և կուլտուր-
դաստիարակչական ֆունկցիայի շնորհիվ։ Երկրորդ և Երրորդ ֆունկցիաները
հսկայական դեր ունեն և նրանք, ըստ ամենայնի, ամրապնդվում ու զարգաց-
վում են, քանի դեռ գոյություն ունի արտաքին հարձակման վտանգը, և քանի
դեռ չի ավարտվել լիակատար կոմունիզմի կառուցումը։ Այլ կերպ է ընթանում
երկրի ներսում թշնամուն ճնշելու ֆունկցիայի զարգացումը։ Այդ ֆունկցիան
բավական ուժեղ զարգացած է լինում սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջա-
նում, իսկ սոցիալիզմի շինարարության, շահագործողական դասակարգերի
լիկվիդացման հետ զուգընթաց այդ ֆունկցիան սպառում է իրեն ու աստիճա-
նաբար հեռանում քաղաքական թատերաբեմից։

Հիրավի, ներքին թշնամիներին ճնշելու ֆունկցիան ՍՍՌՄ-ում ամեն կերպ



զարգանում և ուժեղանում էր սոցիալիզմի կառուցմանը նախորդող շրջանում
և վճռական դեր խաղաց սոցիալիզմի շինարարության գործում։ Ներքին դա-
սակարգային թշնամու ճնշման դերը (անկախ այդ ճնշման ձևերից ու մեթոդ-
ներից) առանձնապես մեծ է ժողովրդական դեմոկրատիայի երկրներում,
որոնք գտնվում են կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պրոցեսում։ Բայց
հարցն արմատապես փոխվում է սոցիալիզմի հաղթանակից, շահագործո-
ղական դասակարգերի լիկվիդացումից հետո։ Այդ անցումն իրականացրած
երկրում չքանում է ճնշման, մի դասակարգի նկատմամբ մյուսի գործադրած
բռնության օբյեկտիվ դասակարգային հիմքը։ Եվ իսկապես, սոցիալիզմի
կառուցումից հետո մեզանում մնացին երկու աշխատավորական, բարեկամա-
կան դասակարգեր՝ բանվորներ և գյուղացիներ, որոնց միջև չկա և չի կարող
լինել ոչ մի հակամարտություն։ Էլ ո՞ւմ ճնշել։ Ո՞ր դասակարգին։ Ճնշման
համար մնացել է միայն մի բնագավառ, այն է՝ բռնություն գործադրել (պա-
տժել) սոցիալիստական համակեցության նորմերը խախտողների, սոցիալիս-
տական գույքը հափշտակողների նկատմամբ, մի բան, որը, իհարկե, դասա-
կարգային բնույթ չի կրում։ Բնական է, ուրեմն, որ այդ իմաստով դասակար-
գային թշնամուն ճնշելու ֆունկցիան մեր երկրի ներսում մահացել է։ Այդ
ֆունկցիան նույնպես կվերանա բոլոր այն երկրներում, որտեղ կհաղթանակի
սոցիալիզմը։ Եվ պրոլետարական պետությունն այդ առումով (որպես քաղա-
քական տիրապետության ու դասակարգի ճնշման գործիք) սոցիալիզմի հաղ-
թանակից հետո դադարում է պետություն լինելուց բառիս տրադիցիոն իմաս-
տով, այսինքն՝ սկսվում է պետության մահացման պրոցեսը։

Ամերիկյան ժուռնալիստ Հենրի Շապիրոյի հետ ունեցած զրույցում
Ն. Ս. Խրուշչովն ասում էր. «Այդ պրոցեսը (մահացման պրոցեսը — Ռ. Վ.),
հիրավի արդեն ընթանում է։ Սովետական պետության զարգացման ընթացքում
փոխվում են պետական կառավարման ֆունկցիաները, փոփոխություններ են
կրում հարկադրանքի որոշ օրգանները... Մենք ասել ենք և կասենք, որ հար-
կադրանքի պետական օրգաններն աստիճանաբար կմահանան և վերջիվերջո
կմահանան, ինչպես կմահանա նաև ինքը՝ պետությունը»։

Սակայն սոցիալիստական պետության ֆունկցիաներից մեկի մահանալը
բնավ էլ չի նշանակում, թե մահանում է այդ պետությունը, որի հիմնական
էությունը, ինչպես ուսուցանում էր Լենինը, նոր հասարակարգ կերտելն է։

Կոմունիստական շինարարության տնտեսական ու քաղաքական նոր հո-
յակապ խնդիրները անհրաժեշտաբար պահանջում են ավելի ամրապնդել ու
զարգացնել պրոլետարիատի դիկտատուրան, մասնավորապես նրա պաշտպա-
նության և տնտեսական-կուլտուրական շինարարության կազմակերպման
ֆունկցիաները։ Դեռ ավելին։ Մահացող ֆունկցիաների փոխարեն հանդես են
գալիս նոր, նախկինում գոյություն չունեցած ֆունկցիաներ։ Սովետական պե-
տության այդպիսի նոր ֆունկցիաներից է՝ սոցիալիստական երկրների ընկե-
րական փոխօգնությունը և նրանց միջև կյանքի բոլոր բնագավառներում հա-
մագործակցություն հաստատելու, ամրապնդելու ու զարգացնելու ֆունկցիան։
Այդ ֆունկցիայի առաջացման օբյեկտիվ հիմքը սոցիալիզմի համաշխարհային
սիստեմի կազմավորվելն էր։ Եթե Սովետական պետության համար այդ ֆունկ-
ցիան առաջացավ սոցիալիզմի հաղթանակին հաջորդած ժամանակաշրջա-
նում, ապա մյուս սոցիալիստական երկրներում այն հանդես եկավ նախքան
սոցիալիզմի կառուցումը, անցման շրջանում։ Հետևաբար, պրոլետարական

պետության ֆունկցիաները բնական անհրաժեշտությամբ ծագում են նույն այդ պետության գոյության արտաքին ու ներքին կոնկրետ օբյեկտիվ պայմաններից և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման կոնկրետ խնդիրներից։

Բայց մեզ կարող են առարկել, թե կոմունիստական շինարարության ներկա էտապում Սովետական պետության տնտեսական-կազմակերպական ֆունկցիան իրականում նեղանում է իր ծավալով, իսկ մենք խնդիր ենք դրել ամեն կերպ ամրապնդել պետությունը և զարգացնել նրա այդ հիմնական ֆունկցիան։ Հայտնի է, որ մեր երկրում մշտապես մեծանում է արհմիությունների և հասարակական այլ կազմակերպությունների դերը արտադրության կառավարման գործում։ Այստեղ հակասություն կարող է լինել միայն նրանց համար, ովքեր պետությունը և հասարակական կազմակերպությունները դիտում են իրարից կտրված, չտեսնելով նրանց սերտ, կարելի է ասել՝ փոխադարձաբար իրար թափանցող ու տոգորող կապը։ Պրոլետարիատի դիկտատուրան, նրա խնդիրներն ու գործունեությունը սոսկ պետությամբ չի սահմանափակվում։ Պրոլետարիատի դիկտատուրան պետական օրգանների, քաղաքական, արհեստակցական և աշխատավորության մյուս հասարակական կազմակերպությունների սիստեմն է։ Պրոլետարիատի դիկտատուրայի ղեկավար և ուղղություն տվող ուժը Կոմունիստական պարտիան է, որը Սովետների (բառիս բուն իմաստով՝ պետության), արհմիությունների, կոմերիտմիության և մյուս հասարակական կազմակերպությունների հետ սերտ կապ հաստատած՝ լուծում է պրոլետարիատի դիկտատուրայի պատմական խնդիրները կոմունիզմի կառուցման ասպարեզում։

Այսպիսով, պրոլետարիատի դիկտատուրայի գործունեության բազմազան կողմերն իրականանում են ո՛չ միայն պետությամբ (կոնկրետ՝ պետական ապարատով), այլ այդ դիկտատուրայի ամբողջ ընդարձակ ու լայն սիստեմով։ Ուստի, մեր հասարակության դեպի կոմունիզմը կատարող առաջընթացի ներկա էտապում պրոլետարիատի դիկտատուրայի զարգացման ներքին լոգիկան թելադրում է մի շարք ֆունկցիաներ պետական ապարատից փոխանցել հասարակական կազմակերպություններին, օրինակ՝ արհմիություններին և այդ բանը նպաստում է ինչպես հիշյալ առաջընթացի արագացմանը, այնպես էլ պրոլետարիատի դիկտատուրայի, ուրեմն և պետության ամրապնդմանը։

Կոմունիստական պարտիայի դերը գնալով ավելի ու ավելի է աճում երկրի հասարակական, տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում։ Եվ այդ դերը, ինչպես նշում է Ն. Ս. Խրուշչովը «Թայմս» թերթի խմբագիրներից մեկի՝ Ա. Մակդոնալդի հետ ունեցած զրույցում, կոմունիստական առաջընթացի պայմաններում ավելի ու ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում։ Այդ պրոցեսը ոչ թե թուլացնում, այլ, ընդհակառակը, ուժեղացնում, ամրապնդում է մեր սոցիալիստական պետությունը, Սովետական պետության համար նոր հնարավորություններ է ստեղծում բացահայտելու իր էությունը որպես կոմունիստական շինարարության գործիքի։ Եվ երբ վերջնականապես ավարտվի կոմունիստական հասարակության կառուցումը, երբ առատ գետի պես հորդեն կյանքի բարիքները, երբ ավելորդ դառնա խստագույն վերահսկողությունը աշխատանքի չափի ու սպառման չափի նկատմամբ, այսինքն՝ երբ հասարակությունն իր դրոշի վրա կգրի մարդկային ամենավսեմ սկզբունքը՝ «յուրաքանչյուրին՝ ըստ իր պահանջմունքների», ահա այդ ժամանակ տնտեսական ու կուլտուրական կառավարումն այլևս չի ունենա օրենսդրությամբ (իրավունքով) կարգավորվող պետական կառավարման բնույթ և կդադարի պետության ֆունկցիա լինելուց։ Ահա այդ ժամանակ պետությունը, սպառելով իր ամենահիմնական էությունը, կզրկվի գոյության տնտեսական հիմքից և կմահանա։



Մենք տեսնում ենք, որ պետության մահացման կամ ամրապնդման ու զարգացման մասին խոսել կարելի է միայն էկոնոմիկայի օբյեկտիվ զարգացման առնչությամբ։ Իսկ ինչպես ցույց է տվել ՍՍՌՄ-ի փորձը, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման տնտեսական անհրաժեշտությունը պահանջում է ամեն կերպ զարգացնել ու ամրապնդել պետությունը։ Միմիայն պետության ամրապնդման միջոցով կարելի է ճետագայում հասնել նրա մահացման։ Եվ ով չի հասկանում պետության շարժման այս դիալեկտիկան, այն է՝ ամենայն կերպ պետությունն ամրապնդելու ուղիով ընթանալ դեպի նրա մահացումը, նա երբեք չի կարող մարքսիստ-լենինյան լինել։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՅՈՒՐԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆԸ

Այսպես, ուրեմն, Սովետական (ընդհանրապես սոցիալիստական) պետության ամրապնդումը կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրն է, որովհետև միայն այդ միջոցով կարելի է քաղաքական անհրաժեշտ պայմաններ ստեղծել սոցիալիզմի ու կոմունիզմի տնտեսական ու կուլտուրական խնդիրների կենսագործման համար։

Բայց պետության ամրապնդում էլ կա, ամրապնդում էլ։

Ամրապնդման են ձգտում, ինչպես հայտնի է, նաև իմպերիալիստական երկրների պետությունները։ ԱՄՆ-ում, ԳՖՌ-ում, Ֆրանսիայում և այլ երկրներում ավելի ու ավելի են ուժեղացվում հարկադրանքի օրգանները, ռեակցիոն ընտրական սիստեմների միջոցով ավելի ու ավելի է նվազում պետական օրգաններին մասնակցող անձանց, հատկապես աշխատավորության ներկայացուցիչների թիվը։ Կապիտալիստական երկրների պետություններն ամրապնդվում են պետական ապարատը մոնոպոլիաների քմահաճույքին ենթարկելու միջոցով, պետական ապարատի բացահայտ ֆաշիզացումով, որի պրոցեսը վերջին տարիներս այնքան ուժեղացել է ԱՄՆ-ում, ԳՖՌ-ում և այլ երկրներում։ Այդ իմպերիալիստական երկրների պետությունների ամրապնդման ուղին միայն բռնությունների ուժեղացնելու, կոնստիտուցիան ամլացնելու, մասսաներից է՛լ ավելի կտրվելու (իբրև ճնշման մեքենայի) ուղի է։ Եվ այդ այն պատճառով, որ այդ երկրների պետությունը սոսկ ճնշման մեքենա է, մի մահակ՝ տիրապետող դասակարգի ձեռքին։ Իսկ պատմության մեջ երբեք չի եղել, որ բռնադատիչները թեթև մահակ բանեցնեն։ Եվ երբ հարավսլավական ռևիզիոնիստները, անտեսելով բուրժուական հասարակության բոլոր իրական փաստերը, անցյալ դարի գերմանացի բուլվարային վիպասաններին սազական սենտիմենտալությամբ փառաբանում են արդի բուրժուական պետության «բարերար» դերը, ինչ-որ «վերդասակարգային օրգան» անվանելով այն և ձգնելով շղարշել բուրժուազիայի տեռորիստական դիկտատուրայի ժանտ դեմքը, ապա ակամայից ցանկանում ես նրանց պատասխանել գերմանացի մեծ բանաստեղծ Հայնրիխ Հայնեի բառերով. «Ես լսում եմ, սոխակ, սմբակներիդ գոփյունը»։

Այսպիսով, բուրժուական պետության ամրապնդման ուղին հենց նրա շահագործող ու կեղեքող էությամբ է թելադրվում։

Պրոլետարիատի դիկտատուրայի պետության ամրապնդումը կատարվում է տրամագծորեն հակառակ առումով, բայց դարձյալ նրա էության բացահայտման միջոցով։

Լինելով դեմոկրատիայի բարձրագույն տիպ, ինչպես գրում է Վ. Ի. Լենինը, պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդվում է հենց սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ու կատարելագործման միջոցով։ Սովետական պետությունը՝ այդ մասսայական, միլիոնավոր աշխատավորների մասնակցության վրա հիմնված քաղաքական ձևը կարող է ամրապնդվել հենց իր էության բազմակողմանի զարգացմամբ՝ որպես մասսայական կազմակերպություն և նույն այդ մասսաների կազմակերպիչ։ Հետևապես, պրոլետարական պետության ամրապնդումն ընթանում է պետական կառավարման մեջ աշխատավոր մասսաներին ավելի ու ավելի մեծ չափով ընդգրկելու, նրանց նախաձեռնությունը ծավալելու ուղիով, որի դեպքում անհամեմատ մեծանում է պետության դերը՝ որպես մասսաների կազմակերպչի և տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարի։

ՍՄԿՊ XX համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումները տալիս են Սովետական պետության ամրապնդման տեսական պրոբլեմի մարքս-լենինյան ստեղծագործական լուծման օրինակ և արտացոլվում են պետության ամրապնդման գծով վերջին տարիներս իրականացրած գործնական միջոցառումներում։

### ՍՄԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սովետական պետության՝ կոմունիստական շինարարության այդ գործիքի հետագա ամրապնդման համար պարտիայի մղած պայքարն ընթանում է մեր սովետական սոցիալիստական պետական սիստեմի առավելությունների լիակատար գործադրման ուղիով։

Պարտիայի իրականացրած միջոցառումների վերլուծությունը մեզ ցույց է տալիս Սովետական պետության զարգացման տվյալ էտապում նրա ամրապնդման հետևյալ հիմնական ուղիները։

#### ա) դեմոկրատական ցենտրալիզմի բոլոր առավելությունների բացահայտումը, ամրապնդումն ու զարգացումը:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ու ամրապնդման ամենագլխավոր հարցը դեմոկրատիզմի և ցենտրալիզմի հարաբերակցության հարցն է։ Այդ գործնական պրոբլեմի ճիշտ լուծումից է մեծապես կախված կոմունիստական առաջընթացի արագացումը։

Դեմոկրատական ցենտրալիզմը սոցիալիստական դեմոկրատիայի բնորոշ օրինաչափությունն է՝ անկախ երկրի պայմաններից ու ժամանակից։ Բայց յուրաքանչյուր երկրում և սոցիալիստական կամ կոմունիստական շինարարության յուրաքանչյուր կոնկրետ էտապում դեմոկրատական ցենտրալիզմի մեթոդները, ձևերն ու նրա իրականացման ուղիները որոշվում են հասարակական զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությամբ։ Կոմունիստական պարտիան մեր երկրում միշտ էլ հմտորեն ու ճիշտ է ղեկավարել դեմոկրատական



ցենտրալիզմի զարգացումը, հմտորեն կատարելագործելով և՛ դեմոկրատիզմը, և՛ ցենտրալիզմը, ելնելով կոմունիստական շինարարության պրոցեսում առկա հնարավորություններից։ Ներկայումս պարտիան շատ լայն, հիրավի ռևոլյուցիոն բնույթի միջոցառումներ է իրականացրել դեմոկրատական ցենտրալիզմի էության ամբողջ խորությունը բացահայտելու ուղղությամբ։ Եթե նախկինում տնտեսական շինարարության մեջ ցենտրալիզմի ձևերն ու մեթոդները նշանակալի չափով վարչական էին, որոշվում էին միասնական գերատեսչությամբ, մինիստրություններով և այլն, իսկ դեմոկրատիզմն էլ ծավալվում էր այդ գերատեսչության շրջանակներում, ապա այժմ դրանք փոխարինվում են ավելի դեմոկրատական ձևերով ու մեթոդներով, երբ տնտեսական կառավարման հարցերում ավելի ու ավելի են ընդլայնվում ու բազմազան դառնում դեմոկրատիայի ձևերը։ Եվ դրա պատճառը ոչ թե այն է, որ դեմոկրատական ցենտրալիզմի իրականացման հին ձևերն ու մեթոդները իբր թե սխալ են եղել, թեպետև երբեմն նկատվել են բյուրոկրատիկ ցենտրալիզմի դրսևորումներ, այլ այն, որ հանդես են եկել հասարակական զարգացման նոր պայմաններ ու խնդիրներ, որոնք օբյեկտիվորեն բացառում են հին ձևերը և պահանջում են նոր ձևեր։

Իսկ պարտիան ի՞նչ կոնկրետ միջոցառումներ է իրականացնում դեմոկրատական, կամ ինչպես երբեմն ասում էր Լենինը, սոցիալիստական ցենտրալիզմն է՛լ ավելի զարգացնելու ու ամրապնդելու ուղղությամբ։

Սոցիալիստական դեմոկրատիզմի ծավալման գործում հսկայական դեր խաղաց տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, որ ձեռնարկեց պարտիան և որի նպատակն է ավելի բարձրացնել Միութենական ռեսպուբլիկաների օրգանների դերը իրենց տնտեսության ղեկավարման, պլանավորման, ֆինանսավորման և այլ հարցերում։

Սոցիալիստական դեմոկրատիզմի ամրապնդման ամենալուրջ քայլերից մեկն այն եղավ, որ ավելի ուժեղացվեց աշխատավորների դեպուտատների Սովետների դերը պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ։ Հաղթահարելով Սովետների աշխատանքում նախկինում եղած մի շարք լուրջ թերությունները, ինչպես, օրինակ, Սովետների սեսիաներն անկանոն հրավիրելը, ընտրողների առջև Սովետների դեպուտատների հաշվետվություններ չկազմակերպելը և կոնստիտուցիոն պահանջների այլ խախտումներ, պարտիան հսկայական աշխատանք կատարեց և ներկայումս էլ կատարում է տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում Սովետների կազմակերպական ու ղեկավար դերն ուժեղացնելու ուղղությամբ։

Սոցիալիստական դեմոկրատիզմի վիթխարի առավելություններն առանձնակի ուժով բացահայտվում են այն բանում, որ վերջին տարիներս մեր երկրում հաստատվել և իրականացվում է կարևոր պետական հարցերի համաժողովրդական քննարկման, հետևապես և լուծման մեթոդը։

Սովետական պետությունը դեմոկրատիզմի ընդլայնման ուղիով ամրապնդելու գործում մեծ նշանակություն ունեն կոնկրետ տնտեսական խնդիրների լուծման մեջ արհմիությունների դերը բարձրացնելու ուղղությամբ պարտիայի միջոցառումները։ ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներում, պարտիայի Կենտկոմի հետագա մի շարք որոշումներում միջոցառումներ են նշված բազմաթիվ կոնկրետ արտադրական խնդիրների լուծման մեջ

*արհմիությունների դերը բարձրացնելու համար, որպեսզի արհմիություններն
խսկապես դառնան, ինչպես Լենինն էր ուսուցանում, «կառավարման դպրոց,
տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց»։*

*Մեր պետության ամրապնդման կարևորագույն հարցերից է ցենտրալիզ-
մի նախկին ձևերի փոփոխումը, չափից շատ մեծ ցենտրալիզմի դեմ պայքա-
րելը, դեմոկրատական ցենտրալիզմի, այն է՝ սովետական պետական ապա-
րատի կազմակերպական սկզբունքների հետևողական կենսագործումը։*

*Դեմոկրատական ցենտրալիզմի իրականացման ձևերն ու մեթոդները է՛լ
ավելի զարգացնելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան (1957 թ.)
պլենումի որոշմամբ արմատապես վերակառուցվեց արդյունաբերության ու
շինարարության կառավարումը, որը հնարավորություն տվեց ավելի լրիվ կեր-
պով բացահայտելու և օգտագործելու սոցիալիստական քաղաքական ու տնտե-
սական սիստեմի վիթխարի առավելությունները։*

*Տնտեսական շինարարության կառավարման նոր կազմակերպումը նշա-
նակում է, մի կողմից՝ կենտրոնացման ուժեղացում, որն ապահովվում է հա-
մամիութենական պլանավորումով և, մյուս կողմից՝ դեմոկրատիզմի ընդլայ-*
*նում։* Ցենտրալիզմը ուժեղանում, որակապես նոր, այն է՝ ավելի խոր սոցիա-
լիստական որոշակիություն է ձեռք բերում շնորհիվ այն բանի, որ կենտրո-
նանում են տնտեսության կառավարման դեմոկրատական, սոցիալիստական
ձևերը, երբ մասսաները ակտիվ կերպով, առանց գերատեսչական խոչընդոտ-
ների, ծավալում են իրենց տնտեսական-կառավարչական գործունեություն
*(դեմոկրատիզմ),* որին ուղղություն է տալիս Կոմունիստական պարտիայի,
պետության և հասարակության կենտրոնացված կամքն արտահայտող համա-
միութենական պլանավորումը *(սոցիալիստական ցենտրալիզմ)։*

*Կառավարման նոր սիստեմի այդ բոլոր առանձնահատկությունները ցույց
են տալիս, թե ինչպես է ամրապնդվել սոցիալիստական պետական սիստեմը,
թե որքան է ուժեղացել Սովետական պետության դերը որպես «տնտեսական
ուժի»։*

բ) պետական ապարատի ստրուկտուրայի
բարելավումն ու կատարելագործումը

*Սոցիալիստական պետությունը կարող է ժողովրդական տնտեսության
կազմակերպման ու կառավարման իր ֆունկցիաները լիովին ծավալել ո՛չ մի-
այն դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի հետևողական կեն-
սագործման միջոցով, այլև պետական ապարատի կազմակերպական ճիշտ
ստրուկտուրայի դեպքում։ Կառավարման ապարատը, ուսուցանում էր Լենինը,
պետք է լինի* տնտեսող, փոքրածավալ, *բաղկացած լինի ըստ հնարավորին
քիչ թվով* օղակներից *ու* մարդկանցից։

*Կատարելով Վ. Ի. Լենինի պատգամները, պարտիան մի քանի տարվա
ընթացքում պետական ապարատը պակասեցրեց ավելի քան 900 հազար մար-
դով, տարեկան մի քանի միլիարդ ռուբլով կրճատելով պետական կառավար-
ման օրգանների վրա կատարվող ծախսերը։*

*Կառավարման ապարատի ստրուկտուրան արմատապես փոխվել ու բա-
րելավվել է արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակազ-
մելու հիման վրա։ Կառավարման ապարատի նոր ստրուկտուրան, կառուցված*



*լինելով դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով, աչքի է ընկնում իր
ճկունությամբ, օպերատիվությամբ, զուգահեռ գործող օղակների բացակա-
յությամբ, հաստիքի նշանակալի փոքրացումով, արտադրության հետ ունե-
ցած սերտ կապով։ Արդյունաբերության և շինարարության ճյուղերի մեծ մա-
սի անմիջական ղեկավարման ֆունկցիաները ժողտնտխորհներին հանձնելու
կապակցությամբ վերացվել ու վերակառուցվել են գրեթե բոլոր միութենա-
կան և միութենական-ռեսպուբլիկական արդյունաբերական ու շինարարական
մինիստրությունները ու գերատեսչությունները։*

*Կառավարման ապարատի նոր ստրուկտուրան ստեղծում է մասնագիտա-
ցումն ու կոոպերացումն ավելի լայն ծավալելու հնարավորություններ, ինչ-
պես նաև բարենպաստ պայմաններ՝ տեխնիկական պրոգրեսի գործում բան-
վորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների ավելի ակտիվ մասնակ-
ցության համար։ Այդ ամենը նոր պայմաններ են ստեղծում մեր հասարա-
կության էկոնոմիկայի զարգացման համար։*

գ) բյուրոկրատական խեղաթյուրումների վերացումը աշխատանքում

*Բյուրոկրատիզմն արմատախիլ անելը Սովետական պետության ամրա-
պնդման միջոցներից մեկն է։ Լենինը ուսուցանում էր, որ բյուրոկրատիզմի
էությունը* մասսաներից կտրված լինելն է։ *Լենինը գտնում էր, որ բյուրոկրա-
տիզմի դեմ մղվող պայքարի հարյուրավոր միջոցների մեջ ամենավճռական
միջոցը* աշխատավոր լայն մասսաների վերահսկողությունն է ներքևից։ *Նա
նշում է, որ որքան ավելի մեծանա կառավարման ապարատի աշխատողների
դերը, այնքան «ավելի բազմազան պետք լինեն վերահսկողության ձևերն ու
եղանակները ներքևից, որպեսզի Սովետական իշխանության խեղաթյուրման
հնարավորության ստվերն անգամ վերացվի, որպեսզի կրկնակի և անխոնջ
կերպով պոկոտվի բյուրոկրատիզմի մոլախոտը» (Երկեր, հ. 27, էջ 331)։*

*Պարտիան և կառավարությունն իրենց որոշումներում նշում և կենսագոր-
ծում են բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի արմատական միջոցառումներ,
որոնցից մեկը մարդկանց, այն է՝ կառավարման ապարատի աշխատողների*
ճիշտ *ընտրությունն է, նրանց աշխատանքի վերահսկողությունը և կատարման
ստուգումը։*

*ՍՄԿԿ XX համագումարը բոլոր պարտիական և սովետական օրգաննե-
րին, ինչպես նաև հասարակական կազմակերպություններին պարտավորեց-
րեց կատարման լայն ստուգում ծավալել, մերկացնել ու աշխատանքից հանել
պարտիայի և կառավարության որոշումները, սովետական օրենքները խախ-
տողներին։ Բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի համար, պետական ապա-
րատի բոլոր օղակների աշխատանքի արմատական բարելավման համար մեծ
նշանակություն ունի* սոցիալիստական օրինականության հետագա ամրապըն-
դումը, *որ իրականացնում են պարտիան և կառավարությունը։*

դ) պլանավորման պրակտիկայի փոփոխությունը

*Տնտեսության սոցիալիստական սիստեմի, սոցիալիստական էկոնոմիկայի
առավելություններից մեկը պլանաչափ զարգացման օբյեկտիվ տնտեսական
օրենքի գործողությունն է։ Ամբողջ արտադրությունը մեր երկրում, միլիոնավոր*

մասսաների ամբողջ աշխատանքային գործունեությունը, ինչպես նաև ամբողջ բաշխումը սոցիալիզմի ժամանակ կատարվում է միայն պլանավորման հիման վրա։ Լենինը գրում է. «Սոցիալիզմն աներևակայելի է... առանց պետական պլանաչափ կազմակերպության, որը տասնյակ միլիոնավոր մարդկանց ենթարկում է պրոդուկտների արտադրության և բաշխման գործում միասնական նորման ամենախիստ կերպով պահպանելուն» (Երկեր, հ. 32, էջ 426)։

Որքանով որ պլանավորումը պետության ֆունկցիան է, ապա ուրեմն երկրի տնտեսական զարգացման, կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրների լուծման գործում պետության դերի մեծացումն անխզելիորեն կապված է պլանավորման պրակտիկայի կատարելագործման հետ։ Պլանավորող օրգանները պետք է կարողանան իրենց կազմած պլաններում ճիշտ արտացոլել սոցիալիստական էկոնոմիկայի աճման ու զարգացման հնարավորություններն ու օբյեկտիվ պահանջները, ելնելով ամբողջ հասարակության շահերից։

Լենինն ուսուցանում էր, որ հանրային արտադրությունը պլանավորել անհրաժեշտ է ընդհանուր ցուցանիշներով, բոլոր ճյուղերի անպայման համամասնությամբ, արտադրության շարժման ու աճման ընդհանուր ուղղությամբ։

Ճիշտ չէր լինի երկրի առանձին շրջանների տնտեսական զարգացման բոլոր մանրամասները վերևից դեկրետագրելը։ Այդ կտաներ դեպի արտադրության շաբլոնացում ու կվնասեր նրա զարգացմանը։

Հենց այդպիսին էր վերջերս վերացված գյուղատնտեսության պլանավորման պրակտիկան, երբ այդ պլանավորման չափից շատ կենտրոնացման պարագայում մինչև կոլտնտեսություններն էին հասցվում բազմաթիվ ու բազմատեսակ ցուցանիշներ։

Գյուղատնտեսության պլանավորման հիմնական խնդիրը ներկայումս ոչ թե կոլտնտեսային արտադրության խիստ մանրախնդիր ռեգլամենտավորումն է, այլ ապրանքային արտադրանքի ծավալի որոշումը։ Պլանավորման նոր կարգի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ գյուղատնտեսական արտադրության պլանավորումն սկսվում է անմիջականորեն կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում։

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի կատարելագործելու վերաբերյալ ընդունած օրենքը լրջորեն վերակառուցեց նաև պլանավորող օրգանների աշխատանքը արդյունաբերության բնագավառում։ Նկատի ունենալով այն հանգամանքը, որ արդյունաբերության կառավարումն իրականացվում է ոչ թե կենտրոնից՝ հատուկ գերատեսչությունների կողմից, այլ ըստ տնտեսական շրջանների, պարտիան առանձնահատուկ ուշադրություն է դարձնում պլանավորումը համապետական մասշտաբով բարելավելու վրա, որպես ամբողջ ժողովրդական տնտեսությունը միավորող հիմքի։

Արդյունաբերության պլանավորման նոր սիստեմի էական հատկանիշը, ինչպես և գյուղատնտեսության մեջ, այն է, որ պլանավորումն սկսվում է ձեռնարկություններում և ավարտվում է ՍՍՌՄ Պետպլանում։ Այդ սիստեմը հնարավորություն է տալիս բազմակողմանիորեն հաշվի առնել ու պլանավորման մեջ առավելագույն չափով օգտագործել ինչպես տնտեսական ռեզերվները, այնպես էլ ձեռնարկությունների, տեղական օրգանների ու աշխատավոր մասսաների փորձը։



Ժողովրդական տնտեսության պլանավորման կատարելագործումը մեր սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումն ու ամրապնդումն է նշանակում։ Դա շատ բարերար ներգործություն է ունենում նաև պետական ապարատի աշխատանքի վրա, որովհետև հաշվետվությունները դրա շնորհիվ պակասում են, ծանրության կենտրոնը փոխադրվում է կոնկրետ, օպերատիվ աշխատանքի վրա, փոխանակ ստորադաս օրգաններին ու ձեռնարկություններին անվերջ դիրեկտիվներ ու վերադաս օրգաններին հաշվետվություններ ուղարկելը։

Ներկայումս մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորման առանձնահատկությունը նաև այն է, որ ստեղծվել է էկոնոմիկայի զարգացման հեռանկարային պլանավորման տնտեսական անհրաժեշտություն ու հնարավորություն։ Ինչպես հայտնի է, այժմ մշակվում է արտադրության զարգացման պլանը առաջիկա 15 տարվա համար։



Մեր երկրում ղեկավարումն ավելի ու ավելի է մոտենում մասսաներին և բուն իսկ մասսաներն էլ ավելի ու ավելի են մասնակցում երկրի ղեկավարմանը։ Հենց այդ վիթխարի պրոցեսի մեջ էլ ընդհանրացած կերպով արտահայտվում են Սովետական պետության ամրապնդման ուղղությամբ պարտիայի իրականացրած միջոցառումները։ Այդ ամրապնդումը կատարվում է կոնկրետ կերպով սոցիալիստական դեմոկրատիզմի բովանդակության բազմակողմանի ու խոր բացահայտման միջոցով։ Այլ կերպ ասած՝ մեր պետական ապարատի ստրուկտուրայի և նրա աշխատանքի սկզբունքների ու մեթոդների հետագա դեմոկրատացումն ու դեմոկրատական կենտրոնացումն էլ հենց պրոլետարիատի՝ սովետական պետության ամրապնդումն է։

Դեմոկրատական ցենտրալիզմի վրա խարսխված մեր սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա խորացման ու ընդլայնման միջոցով ավելի ու ավելի է ամրապնդվում Սովետական պետությունը։ Եվ դա պայմաններ է ստեղծում, որպեսզի ավելի լրիվ կենսագործվեն սոցիալիստական քաղաքական և տնտեսական սիստեմի բոլոր առավելությունները, որպեսզի ավելի բազմակողմանիորեն ծավալի իր գործունեությունը կոմունիստական շինարարության գործիք հանդիսացող Սովետական պետությունը։

---

# ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԻ ՀԵՐՈՍԻ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԼԻԱՐԺԵՔ ՊԱՏԿԵՐՄԱՆ ՀԱՄԱՐ

*Ս. ԱՂԱԲԱԲՅԱՆ*

Յուրաքանչյուր ժամանակաշրջան ունի իր հերոսը, մարդու վարքագծի գնահատության իր չափանիշն ու ըմբռնումը: Գրականության բովանդակության հարստությունն էլ չափվում է այն բանով, թե նա որքան խորն է արտահայտում իր ժամանակի հերոսի հոգեբանությունը, ինչքան ճշմարտացի է այդ հերոսի մեջ ու նրա միջոցով վերարտադրում պատմական զարգացման պրոցեսն ու հասարակական կոնֆլիկտների էությունը:

Սովետական գրականությունը, շարունակելով դասական գրականության ավանդները և հենվելով Մաքսիմ Գորկու հայտնագործած պատմական նոր հերոսի փորձի վրա, իր գոյության առաջին իսկ օրից զարգացել է որպես ռևոլյուցիայի հրաշագործ ուժով պատմական սխրագործության բարձրացած նոր հերոսների գրականություն: Ֆուրմանովի Չապաևը, Ֆադեևի Լևինսոնը, Սերաֆիմովիչի Կոժուխը, Մայակովսկու լիրիկական հերոսը, Շոլոխովի Դավիդովը, Ն. Օստրովսկու Պավել Կորչագինը, ռևոլյուցիայի և քաղաքացիական կռիվների, հնգամյակների ու Հայրենական պատերազմի բազմաթիվ հերոսներ, որոնք իրենց մեջ կրում են մեր հասարակության զարգացման տենդենցները, անգնահատելի նշանակություն ունեն կյանքի հերոսների հոգեկան աշխարհի և բնավորության ձևավորման գործում կատարած իրենց դերով: Կյանքից մտնելով գրականության էջերը, այդ հերոսները կրկին վերադարձել են կյանք՝ որպես նոր սերնդի գաղափարական ու հոգևոր ուսուցիչներ, որպես սովետական կյանքի գեղեցկության ամենախոր, ամենահումանիստական ըմբռնման՝ ժողովրդի ազատության ու բարօրության գաղափարի կենդանի հաղորդիչներ:

Նոր ժամանակի հերոսի՝ սովետական մարդու ձևավորման թեման լայն տեղ է գրավել նաև սովետահայ գրականության մեջ:

Ընթերցողի գիտակցության մեջ հաստատուն արմատներ են գցել Եղիշե Չարենցի ռևոլյուցիոն մարտիկները, Ակսել Բակունցի սև ցելերի սերմնացանները, Ստեփան Զորյանի գրադարանի աղջիկն ու Հեղկոմի նախագահը, Դ. Դեմիրճյանի և Արազու հոգեկան վերածնունդ ապրող հերոսները՝ Սաթոն ու ընկեր Մուկուչը, Ն. Զարյանի կոլտնտեսային աշխատանքի կազմակերպիչներ՝ Լևոն Լամբարյանը, Վասակ Զոքանյանն ու Համիկ Զուրաբյանը, Գ. Սարյանի բալլադների անձնվեր մարտիկները, Ս. Խանզադյանի Մանուշն ու Մանասարը, Մ. Արմենի Անտոնինան, Հր. Քոչարի ռազմիկները և ուրիշ գրողների կերտած գրական հերոսները: Գրողների ստեղծած կերպարներից շատերն իրենց հոգեկան ջերմությունը, իրենց գույնը, իրենց ինտելեկտուալ



ու էմոցիոնալ աշխարհի հարստությունը, կենսափորձի ու վարքագծի բարձր գծերն են հաղորդել ընթերցողներին, դաստիարակելով նրանց կոմունիստական բարոյականության, սովետական հումանիզմի, գիտակցված հայրենասիրության, ստեղծագործ աշխատանքի գեղեցկության վեհ սկզբունքներով:

## 2.

Սովետական գրականության պրոբլեմների բազմազանության մեջ, ինչպես միշտ, այնպես էլ նրա զարգացման ընթացիկ շրջափուլում, կենտրոնական տեղը գրավում է մեր ժամանակի հերոսի գեղարվեստական լիարժեք պատկերման հարցը: «Սովետական ժողովուրդը իր գրողներից սպասում է, որ նրանք կստեղծեն մեր փառապանծ ժամանակակիցների ճշմարտացի և վառ կերպարները»,— ասված է գրողների Համամիութենական երկրորդ համագումարին ուղղված Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ուղերձի մեջ: Պարտիայի և ժողովրդի այս պահանջը, որպես սովետական գրականության և արվեստի գլխավոր գաղափարական-էսթետիկական խնդիր, առաջ է քաշված նաև «Ժողովրդի կյանքի հետ գրականության և արվեստի սերտ կապի համար» պարտիական փաստաթղթում: «Զարգացման գլխավոր գիծն այն է,— ասված է այդ փաստաթղթում,— որ գրականությունը և արվեստը միշտ անխզելիորեն կապված լինեն ժողովրդի կյանքի հետ, ճըշմարտացիորեն արտացոլեն մեր սոցիալիստական իրականության հարստությունն ու բազմազանությունը, ցայտուն և համոզիչ կերպով ցույց տան սովետական ժողովրդի վերափոխիչ մեծ գործունեությունը, նրա ձգտումների ու նպատակների վեհությունը, բարոյական բարձր հատկությունները: Գրականության ու արվեստի հասարակական վսեմ խնդիրն է՝ ժողովրդին պայքարի հանել կոմունիզմի կառուցման նոր հաջողությունների համար»:

Այսպիսով, գրականության ու արվեստի ամեն մի նոր ստեղծագործություն գնահատվում է այն խնդրի տեսանկյունից, թե գեղարվեստական ինչպիսի խորությամբ և պատմական կոնկրետությամբ է վերարտադրում նա սովետական մարդու հոգեբանական հարուստ անհատականությունը՝ նրա սոցիալական բարդ հարաբերությունների մեջ, գրողն ինչ չափով է ճշմարիտ պարտիական լուծում տալիս իր առաջադրած հոգեբանական-սոցիալական կոնֆլիկտներին, որքան խորն է ըմբռնում մեր զարգացման տենդենցները և հերոսների անհատական ճակատագրերի միջոցով բացահայտում ժողովրդի մեծ, էպիկական թեման:

Գրականությունը դարաշրջանի կյանքն ու կենցաղը, կենսական կոնֆլիկտներն ու աշխատանքը արտահայտում է հերոսների տիպականացման և նրանց անհատականացման ճանապարհով: Ահա թե ինչու մեր գրականության և գրականագիտության մեջ տեղի ունեցած ստեղծագործական բանավեճերը վերջին հաշվով հանգում էին այն հարցին, թե ինչպիսին պետք է լինի մեր գրքերի հերոսը, որոնք են գրական հերոսի հասկացողության մեր ըմբռնումներն ու չափանիշները: Այս վեճերի ու գրական ասուլիսների ընթացքում ստեղծվեցին «իդեալական», թանձր ռետուշի ենթարկված հերոսի «սրբապատկերի» կամ ցուցադրական «հակասականության», իրականության գծերից «զրկված անհատականության» երկու դեպքում էլ արատավոր սխեմաները, որոնք տեսականորեն հիմնավորում էին գրական պրակտիկայում արտա-

հայտված սոցիալիստական ռեալիզմի բարձր սկզբունքներից կատարված նահանջները։

Առաջին սխեման, որ ծնեց «անկոնֆլիկտայնության» տեսությունը, գրականության դռները լայնորեն բացեց անգույն, հոգով ու ինտելեկտուալ աշխարհով աղքատ, հոգեկան ներքին պայքարից զրկված «հերոսների» ու մեր կյանքի հակասությունները համահարթող, հերոսության ճանապարհը հասարակացնող գրքերի առաջ։ Երկրորդ սխեման, որ առաջ եկավ «կյանքում այսպես է լինում» օբյեկտիվիստական լոզունգի անունից, գրականության բովանդակությունը փորձեց հանգեցնել «զուտ մերկացման», իրականությունը սև, միայն սև գույնով ներկելու քաղքենիական նպատակին։ Այս երկու տենդենցներն էլ, որոնք կամա թե ակամա ռևիզիայի ժխտում էին ենթարկում սոցիալիստական ռեալիզմի մեթոդը՝ անխարդախ ճշմարտության, բարձր օբյեկտիվության, իսկական ժողովրդայնության մեթոդը, հեռանք էին մեր զարգացման պրոցեսների ու մեր ժողովրդի պատմական նպատակների վատ իմացության, կյանքի ու մարդկանց հոգեկան աշխարհի թույլ ճանաչողության, մեր դարաշրջանի իսկական, ամբողջական ճշմարտությունը ստեղծագործական կրքով ու գեղարվեստական ռունագեղ ձևով պատկերելու անկարողության։

Սոցիալիստական ռեալիզմի արվեստի ճշմարիտ ոգուն խորթ ինչպես կյանքի գունազարդման, այնպես էլ իրականությունը եռանամուտքից ներկայացնելու տենդենցները ոչ մի առնչություն չունեն կյանքի կառուցմանն ակտիվորեն մասնակցող, գրական օրինակով ընթերցողներին վարակող, չարիքի դեմ զինող բարձր գաղափարների, մեծ հույզերի ճշմարիտ արվեստի հետ։

Մեր գրականության մեջ արտահայտված թե՛ հերոսների «իդեալագործման», կյանքի գունազարդման, և թե՛ այսպես կոչված «քննադատական պաթոսի» տենդենցների դեմ բարձր գաղափարայնության և ճշմարիտ գեղարվեստականության դիրքերից մղվող սկզբունքային պայքարի մեջ առանձնակի սրություն է ստանում կյանքի և գրականության փոխհարաբերության, ժամանակակից թեմայի և ժամանակակից հերոսի հարցը։

Այս խնդիրների բազմակողմանի քննությունը թե՛ մամուլում, և թե՛ գրողների առաջիկա համագումարում, կենսական նշանակություն ունի մեր գրականության հետագա բախտի, նրա զարգացման հեռանկարների, նրա դալիքի տեսակետից։

3.

Հայաստանի գրողների երրորդ համագումարից (1954) հետո անցած ժամանակաշրջանի գրականության զարգացման բնորոշ գիծը, նրա գլխավոր ուղղությունը կյանքի պրոցեսների մեջ ակտիվորեն ներխուժելու, գրվածքների հասարակական բովանդակությունը խորացնելու, մեր ժամանակակիցների կերպարները պայքարի դժվարությունների ու հոգեբանական իրական հակասությունների մեջ ցուցադրելու տենդենցն է։ Բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղի պայքարի ու աշխատանքի, ժողովրդական կենցաղի ու ժողովրդի պատմության թեմաները՝ արդիականության այդ գլխավոր հարցերը, ավելի ու ավելի խոր արմատներ են գցում հայկական պոեզիայի, դրամատուրգիայի և արձակագրության մեջ։ Ժամանակակից թեմատիկայի և մեր օրերի հերոսի նկատմամբ ամրապնդվող ուշադրությունը ցույց է տալիս, որ մեր



գրողներն ավելի խորն են գիտակցում սովետական գրականության կենսունակության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում գրականության կատարելիք դերի, ժողովրդի հետ գրականության կապերի ընդլայնման նշանակությունը։

Թերթելով մեր գրականության, մասնավորապես արձակի թեմատիկ ցանկը, ավելի քան համոզվում ես կատարված շրջադարձի մեջ. հայ գյուղի վերջին տարիների իրադարձություններին են նվիրված Ս. Խանզադյանի «Հողը», Քր. Թափալցյանի «Ոսկե հովիտ», Ան. Սեկոյանի «Ոսկե վազերի մեջ», Լ. Հովրունցի «Բարձր լեռներ» (ռուսերեն), Մ. Արմենի «Ոսկե հնձան» վիպակը, Ց. Խանզադյանի, Ս. Այվազյանի, Վ. Խեչումյանի պատմվածքները. բանվոր դասակարգի և տեխնիկական ինտելիգենցիայի կյանքն ու աշխատանքն են նկարագրում Ալազանի «Հյուսիսային աստղ», Բ. Վերդյանի «Ինչպես է գալիս երջանկությունը» վեպերը. մեր ժամանակի առաջին տարիների կենդանի նախապատմությունն է Աղավնու «Շիրակ», Գ. Մահարու «Երիտասարդության սեմին», Հմ. Սիրասի «Նախօրյակին», Ռ. Աթայանի «Զարթոնք», Ան. Սահինյանի «Մարալ», Շ. Թաթիկյանի «Նրա ճանապարհը» գրքերի թեման. երիտասարդության կենցաղն են վերարտադրում Կ. Տոնոյանի «Կյանքի ապտակը», Ալ. Արաքսմանյանի «Դժվար սեր» վիպակները, Հայրենական պատերազմում սովետական մարդու հոգեկան բարձր հատկությունների վերհանմանն են նվիրված Հր. Քոչարի («Մայրը»), Վ. Արամյանի, Խ. Գյուլնազարյանի, Նոր-Այրի պատմվածքները, Մ. Շաթիրյանի «Զինվորներ» վեպը։

«Հողը», «Շիրակ» և «Երիտասարդության սեմին» գործերին այս հոդվածում չենք անդրադառնում, որովհետև ժամանակին մեր մամուլը դրվատել է այդ երկերը որպես սովետահայ արձակի ակներև նվաճումներ։

Այս թվարկումը, անշուշտ, չի սպառում այն ամենը, որ հայ արձակագիրները վերջին 4 — 5 տարում ստեղծել են ժամանակի ու հերոսի մասին։ Ցուցակը կարելի է շարունակել ուրիշ հաջող և անհաջող գործերով ևս։ Բայց էական հարցը ոչ այնքան քանակն է, որքան մեր ժամանակի մասին գրված երկերի գեղարվեստական և գաղափարական լիարժեքությունը։ Բանն այն է, որ հայ արձակի զարգացումը չի ընթացել «խաղաղ» անդորրության մեջ և անսայթաք ճանապարհով, որ ռեալիստական արվեստի գեղարվեստական բարձր սկզբունքների կողքին մեր գրականության մեջ հանդես են եկել իրականության մակերեսային նկարագրության տենդենցներ, սխեմատիզմ ու նատուրալիստական «օբյեկտիվություն», որ արձակագիրներից ոմանք չհասկանալով կյանքի զարգացման նոր ձևերի կոնկրետ էությունը, տուրք են տվել վատթար բելետրիստիկային և հակագեղարվեստականությանը, վերջապես՝ պրիմիտիվ, «ընթացիկ» պատկերացումների չափանիշով են մոտեցել արդիականության թեմատիկա հասկացողությանը։

Այո, նշված թերությունները և էլի ուրիշ թերություններ՝ կապված կոնֆլիկտի ընտրության, բնույթի ու լուծման, հերոսների անհատականացման, կյանքի երևույթների նկատմամբ արվեստագետի գրաված դիրքի, կերպարների աշխատանքային գործունեության ու անհատական կենցաղի փոխհարաբերության, գրական վարպետության, գրական ոճի հետ,—դեռևս զգալի չափով հարվածում են մեր գրականության ընդհանուր նկարագրին։ Բայց ակներև է, որ մեր արձակը զարգանում է ժողովրդի կյանքի ճանաչման նշանաբանով, որ ստեղծագործական աշխատանքի կառուցման, պայքարի ու դժվարություն-

ների հաղթահարման պրոցեսում մարդկանց հոգեբանական աճի, նրանց բնավորության ձևավորման խնդիրն է արձակի «օպերատիվ» ուղղությունը, որ արձակագիրներն ավելի մոտ են կանգնում իրենց նկարագրած դեպքերի արմատներին, աշխատում են կյանքի ու հերոսների գործի ճշմարտությունը նայել «ընթացիկ օրվա», պատմականության դիրքերից: Այս վերջին մոմենտը՝ հերոսների պատմականությունը մենք հատկապես ընդգծում ենք, որովհետև դրական հերոսը միայն այն դեպքում կարող է ազդեցություն և նկատելի հետք թողնել կյանքում, եթե արվեստագետը նրա հոգեկան աշխարհը բացահայտում է մեր ժամանակի բարոյական-էթիկական և սոցիալական-հոգեբանական մեծ խնդիրների տեսանկյունից, եթե կյանքի հերոսներին արվեստագետը նայում է որպես ժողովրդի լավագույն հատկությունների ու երազանքները մարմնավորող հերոսի, նրա անհատականության մեջ և միջոցով ցուցադրում է մեր օրերի պատմությունը, նրանով հաստատում է սոցիալիստական իդեալի ռևոլյուցիոն և հումանիստական բարձր սկզբունքները:

Այս առումով հայ արձակի վերջին շրջանի երկերի մեջ նկատելի հետաքրքրություն է ներկայացնում Ան. Սահինյանի «Ծարավ» վեպի առաջին հատորը: Դա խիկական իմաստով տաղանդավոր, պրոբլեմատիկայով հատակ գիրք է՝ ներծծված բարձր խոհերով մեր ժողովրդի պատմության ու ապագայի վերաբերյալ: «Ծարավը» արծարծում է ժողովրդա-տնտեսական կարևորագույն թեմա՝ ջրի պրոբլեմը, որը մեզ համար նույնքան կենսական նշանակություն ունի, որքան ասենք Լ. Լեոնովի «Ռուսական անտառ» վեպի թեման Ռուսաստանի համար:

Ան. Սահինյանի վեպում պատմական ֆոնը չի դառնում սոսկ նախադիր հավելված պատմական կոնկրետությունից վերացած հերոսի «աբստրակտ հոգեբանության» ցուցադրման համար (տարածված երևույթ մեր վեպերում), այլ ժամանակի առաջադրած սոցիալական հույզերը օրգանական բնականությամբ մտել են Վահան Ջրբաշյանի՝ վեպի գլխավոր հերոսի անհատականության մեջ: Երկրի ծարավի զուտ «տեխնիկական» պրոբլեմը այստեղ չի ցուցադրվում ու ծավալվում մերկ տարածության վրա, այլ բացահայտվում է ժողովրդին հարազատ և ժողովրդական երջանկության «անտարբեր» սկզբունքները մարմնավորող սոցիալական ուժերի, ժողովրդի բարեկամների ու թշնամիների հոգեբանական սուր բախումների միջոցով: Եթե վեպի առանձին սյուժետային հանգույցներ, այնուամենայնիվ, ինչպես արձանագրվել է քննադատության կողմից, չեն նպաստում կերպարի խորացմանը, և ինչ-որ չափով որոնող ու նվիրված գիտնականի, իրականությունը ռևոլյուցիոն հիմունքներով վերափոխել ցանկացող մարտիկի կերպարի վրա գցում են պասսիվ հայեցողի և միայնակ տառապողի հեռավոր ստվերը, ապա ամբողջության մեջ Վահան Ջրբաշյանը կերտված է որպես կյանքի ակտիվ մասնակից, որպես ժողովրդի շահագրգռություններով ապրող, նրա երջանկությունը սեփական ձեռքերով կերտող հերոս:

«Ծարավ» վեպի առանձնահատկություններից մեկը և թերևս գլխավորը այն է, որ մեր ժամանակի նախապատմությունը (դեպքերը ընդհատվում են Սովետական իշխանության հաստատման այն տարիների նկարագրությամբ, երբ օրակարգի մեջ է մտնում Հայաստանի ոռոգումը կազմակերպելու վերաբերյալ լենինյան պատմական ցուցումի իրականացման հարցը), անխզելիորեն կապված է մեր այսօրվա իրականության հերթական խնդիրների հետ, որ



վիպասանուհին պատմականորեն է նայում կյանքին՝ «ընթացիկ օրը» շաղկապելով ժողովրդի ինչպես անցյալի, այնպես էլ նրա ապագայի հետ:

Հայկական ազգային կոլորիտով ու ժողովրդական կյանքի երևույթներով «թանձրացած», «արտադրական պրոբլեմատիկան» հոգեբանական պլանով լուծող, գեղարվեստական լայն ընդհանրացման ձգտող «Ծարավ» վեպում Սահինյանը ստեղծել է հերոս, որի մեջ անհատական հատկանիշները և պատմության զգացողությունը հանդես են գալիս ոչ թե երկփեղկված, այլ բնական միասնության մեջ: Դա դրական, ժողովրդական հերոսի ստեղծման արդյունավետ ճանապարհն է:

Եթե «Ծարավը», ինչպես նշեցինք, վերարտադրում է մեր օրերի նախապատմությունը, ապա Ան. Սեկոյանի «Ոսկե վազերի մեջ» վեպը արդեն պատմում է մեր ժամանակի գյուղական երիտասարդության կյանքի, նրա առօրյա աշխատանքի ու պայքարի մասին: Հեղինակի համանուն պատմվածքի վրա հասակ նետած այս ծավալուն գրվածքը նախօրինակից տարբերվում է նրանով, որ հովվերգական «ոսկեզօծված աշխարհի» փոխարեն, այստեղ տեսնում ենք իրական հոգսերով ու դժվարություններով ապրող, պայքարի մեջ նորի առավելությունը հաստատող, նորի հաստատման համար մարտնչող հերոսների: Հենց սկզբից պետք է ասել, որ երիտասարդ գրողի մտահղացումները միշտ չէ, որ համոզիչ գեղարվեստականությամբ են տրված, նրա դիտած ոչ բոլոր երևույթներն են հետևողականորեն իմաստավորված կյանքը հետազոտող արվեստագետի գրչով, երբեմն դեպքերի ականատեսը կյանքի հակասությունների միջից ընտրում է արվեստագետի նպատակակետին խանգարող երկրորդական մոմենտներ, սակայն ամբողջության մեջ «Ոսկե վազերի մեջ» վեպը գրողի լուրջ հաջողությունն է:

Գրքի հարուստ հյուսվածքի միջից առանձնանում են սյուժետային երկու գիծ՝ քաղաքային կյանքի «էսթետիկ էֆեկտներին» վարժված նորավարտ բժշկուհու այսպես կոչված «հարմարվելը» գյուղական նոր միջավայրին, և երկրորդ՝ կոլտնտեսությունների խոշորացման վերաբերյալ տարբեր հայացքների բախումը՝ մի կողմից կոլտնտեսության նախագահի, մյուս կողմից՝ երիտասարդ գյուղատնտեսի և նրա համակիրների միջև: Այս երկու գծերն էլ ծանրանում են լուրջ ու իրական կոնֆլիկտների վրա, ըստ որում դրանք զարգանում են ոչ թե անջատ-անջատ, այլ որպես միևնույն «իրականության» ընդհանուր շղթայի տարբեր օղակներ: Սույն հոդվածի մեջ հնարավորություն չունենալով անդրադառնալու վեպի բոլոր կողմերին, անհրաժեշտ ենք համարում ընդգծել հեղինակի նկատելի հաջողությունը հատկապես սոցիալիզմի երիտասարդ մասնակիցների կերպարների գծագրության բնագավառում: Այս պարագան առանձնակի նշանակություն է ձեռք բերում մեր արձակի էջերը ներխուժած բազմափորձ «ծերունիների», իմաստուն «նահապետների», «նահապետական անդորրության» «մոլեռանդ» պաշտպանների ծայրահեղորեն բազմաքանակ կերպարների փաստի տեսակետից, որոնք և երբեմն համարվում են «ազգային խարակտերի» միակ կրողները: Բժշկուհի Սեդան, որ գյուղական կյանքի մեջ է մտնում ոչ թե «զոհաբերության ակտ» կատարելով, այլ հոգեկան ներքին պահանջի մղումով, գյուղատնտես Վահրամը, որ հանրային շահի բարձր գիտակցությամբ է մոտենում իր «սեփական» գործին, Տիգրանը, և առանձնապես Արփիկը, որ աչքի է ընկնում զգացմունքների նրբությամբ, գեղջկական հպարտ ու վճռական, զուսպ ու ներդաշնակ բնավորությամբ — սրանք

«ազգային բնավորության» այն նոր որակն են, որոնց հոգեկան կյանքի վրա իր անջնջելի հետքն է թողել մեր ժամանակի վարար լույսը, որոնք ապրում են կենդանի, կոնկրետ, իրենց մասնակցությամբ ստեղծված իդեալներով։

Յուրաքանչյուր գրող կյանքի պրոբլեմները լուծում է իր արվեստի անհատական գծերին բնորոշ ու մատչելի մաներայով, իր ձևով, իր ինքնուրույն մոտեցումով։ Սոցիալիստական ռեալիզմը ոչ միայն չի կաշկանդում գրողի ստեղծագործական նախասիրությունը, այլև ենթադրում է ձևերի ու ոճերի բազմազանություն, թող դա լինի նույնիսկ պայմանական սիմվոլիկան և այլաբանական պատկերավորությունը։ Եթե գրական ձևի որոնումները ինքնանպատակ չեն, եթե պայմանական ձևի մեջ չի դրվում ժամանակավրեպ, անախրոնիկ, հնացած գաղափար, եթե հեքիաթի շղարշի տակ հարուստ ու նոր բովանդակություն է դրվում, ապա դրա համար չի կարելի գրողին վերցնել քննադատության կրակի տակ, ինչպես դա պատահեց Մ. Արմենի «Ոսկե հընձան» վիպակի հետ։ Եթե Արմենը՝ որոնումների ծարավ անհանգիստ մի գրող, իրոք վերջին շրջանի պատմվածքներում հեռացել է ճշմարիտ հոգեբանական արվեստի դիրքերից և ապավինել մերկ երևակայությանը, ապա «Ոսկե հնձանում» օգտագործելով պայմանական սիմվոլիկայի հնարանքը (դեպքերը տեղի են ունենում իրական, բայց հեղինակի կողմից «կանխամտածված» ռոմանտիկական միջավայրում) տալիս է Արարատյան դաշտի բնանկարի թանձր կոլորիտը և փիլիսոփայական-խոհական տեսանկյունով իմաստավորվում է կյանքի և աշխատանքի, մարդկային հոգու գեղեցկության և մարդու զգացմունքների լիարժեքության գաղափարը։ Վիպակում առաջադրված սյուժետային «հանելուկը»՝ Անահիտը իր երկու «երկրպագուներով», սոսկ միջոց է՝ պանծացնելու մարդու գաղափարը, գեղեցկության նորման ու կատարելատիպը՝ Անահիտը դարձնելու մեր կյանքի հասունացումը բնութագրող խորհրդանշան։

Արմենի նպատակից դուրս է եղել ժամանակակից գյուղի զարգացման դժվարությունները տալը, նա վերցրել է իրականության միայն մի կողմը՝ ռոմանտիկական գեղեցկությունը, ուստի և չի կարելի կշտամբել նրան մոտեցման նման ուղղության համար, ինչպես և չի կարելի, ասենք Լ. Հուրունցին մեղադրել այն բանում, որ նա «Բարձր լեռներ» վեպում հաճախակի բանեցնում է ուղղակի սուբյեկտիվ ինտոնացիայի հնարը, իր լիրիկական խոհերի մեջ գծում է գյուղական աշխատավորների պորտրետներ, և բոլոր դեպքերում չէ, որ վեպի բովանդակությունը «տեղավորում է» սյուժեի շրջանակներում։

Դրական հերոսի ստեղծման պրոբլեմը հայ գրականության մեջ եթե այս կամ այն չափով լուծվել է գյուղական իրականության և Հայրենական պատերազմի նյութի վրա, եթե գյուղական աշխատանքը և ռազմական հերոսությունը, այնուամենայնիվ, մեր արձակի մի շարք երկերում գտել են գեղարվեստական բավարար լուծում, ապա հայ բանվոր դասակարգի առաջավոր ներկայացուցիչները՝ բանվորները, ինժեներները, նորարարները, տեխնիկական պրոգրեսի անհանգիստ, ռոմանտիկ մարտիկները, արտադրության բանիմաց կազմակերպիչները, հսկա գործարանների հրամանատարները դեռևս «արդյունաբերական վեպերի» անձուկ հրապարակներից դուրս չեն եկել լայն կյանք, չեն դարձել մեր ժամանակի գլխավոր հերոսին արժանի գեղարվեստական ընդհանրացումներ։ Ասել, թե հայ գրողները անբավարար ուշադրություն են դարձրել բանվոր դասակարգի թեմային, ճիշտ չի լինի։ Գրվել են վեպեր ու պոեմներ, վիպակներ ու պատմվածքներ, գրվել են փորձառու գրողների և երիտասարդ-



ների կողմից, վաղուց անցել է թեմայի այսպես ասած «հետախուզության շրջանը», բայց մեր արվեստը հարստացնող, ժողովրդական կյանքի էության ճանաչման հնարավորությունը ընդլայնող հերոսները, այնուամենայնիվ նվազ տեղ են գրավում այդ գրվածքների գորշ ու անդեմ, սոսկ զգայականություն խաղացող և միայն արտաքին գործողության վրա կառուցված «հերոսների» երկար շարանի կողքին։ Այսպես դատելով մեր գրականության այս տեղամասի իրերի վիճակի մասին, մենք բնավ չենք ցանկանում ասել, թե այստեղ չկան հաջողություններ, չկան աշխատանքի հոգեբանական էմոցիոնալ պրոցեսների մեջ ցուցադրված, հարուստ անհատականություն ունեցող հերոսներ։ Հիշենք թեկուզ Վ. Ալազանի «Հյուսիսային աստղ» անհավասար գրված, տեղ-տեղ խրոնիկա հիշեցնող վեպի հերոսուհուն՝ Նատալյա Սիլինայի կերպարը, որի համար նախաձեռնության ոգին, աշխատանքային վեհ ռոմանտիկայի զգացողությունը հանդիսանում է ուժեղ հոգեկան շարժիչ ուժ, որը աչքի է ընկնում ոչ միայն իր բարոյական զգացմունքների անաղարտությամբ, այլև ժողովրդական կյանքի անկյունաքարի՝ աշխատանքի նկատմամբ ակտիվ, նպատակասլաց վերաբերմունքով, և վերջապես, որի համար անհատական կյանքի գերագույն դատավորը՝ աշխատանքային ստեղծագործությունն է։

«Հյուսիսային աստղ» վեպին, բոլոր թերություններով հանդերձ, բնորոշ է ռոմանտիկական մի հաճելի տրամադրություն, աշխատանքային պոեզիայի գեղեցկության ռոմանտիկական ընկալում, որ այնպես պակասում է մեր շատ գործերի։ Ռոմանտիկան անհրաժեշտ է մեզ օդի և ջրի չափ, դա մեր դարաշրջանի պաթոսն ու առանձնահատկությունն է։ Ահա թե ինչու տարօրինակ են հնչում վեպի քննադատներից մեկի դատողությունները, թե ռոմանտիկական սկզբունքը «մեղանչում է ռեալիզմի դեմ» («Սով. գրակ.», 1957, № 2)։ Ա. Մակարենկոն «Դրոշակները աշտարակների վրա» գրքի քննադատներից մեկի նման բնույթի դիտողությանը տալիս է հետևյալ դիպուկ պատասխանը. «Ես չեմ ընդունում Ձեր հանդիմանությունը, թե իմ վիպակում բազմաթիվ են գեղեցիկ մարդիկ։ Ես այդպես եմ տեսնում մարդկանց՝ դա իմ իրավունքն է։ Ի՞նչու դուք չեք հանդիմանում Լև Տոլստոյին այն բանի համար, որ նրա «Պատերազմ և խաղաղություն» գրքում այնքան շատ գեղեցիկ մարդիկ կան։ Նա սիրում է իր դասակարգը, ես սիրում եմ իմ հասարակությանը, շատ մարդիկ են ինձ գեղեցիկ թվում»։

Գործարանի մարդկանց աշխատանքի ու պայքարի պատկերման առումով իր նախօրինակներից մի քայլ առաջ է Բ. Վերդյանի «Ինչպես է գալիս երջանկությունը» վեպը։ Այստեղ էլ, ինչպես նախորդ բոլոր վեպերում, կոնֆլիկտ է ստեղծվում դրսից եկած նորարարի՝ Ալեքսանյանի և գործարանում ապաստանած բյուրոկրատների, ինքնագոհ փառասերների կամ պարզապես նորարարության ոգին չհասկացող մարդկանց միջև։ Հասկանալի է, որ վեպերի սյուժետային սխեմայի այս ընդհանրությունը կամ պրոբլեմների նույնությունը ոչ այնքան կապվում է գրական զուգահեռների (իհարկե, այս մոմենտը նույնպես դեր խաղացել է), որքան կյանքի օրինաչափության, նրա զարգացման մեջ հնի և նորի պայքարի նոր ձևերի արտահայտության հետ, որոնց հանդիպում են գրողները իրենց ուսումնասիրությունների ընթացքում։ Վեպերի սյուժեն և գործողությունը արտաքին գծերով համընկնում են իրական դեպքերի ընթացքին, պայմանականորեն ասած՝ «կյանքի սխեման» տեղափոխվում է գրականության մեջ։ Վերդյանի վեպը չփման կետեր ունի ոչ միայն Նոր-Այ-

րի, Վ. Խեչումյանի, այլ Դուդինցևի «Ոչ միայն հացով» վեպի հետ։ Ալեքսանյանը նույնպես գյուտարար է, ինչպես Լոպատկինը, նա ևս հանդիպում է դժվարությունների, ծանր մտածությունների առաջ է կանգնում, նույնիսկ երբեմն ապրում է խոր հուսահատություն՝ «չհասկացող մարդկանց» միջավայրում։ Բայց ամբողջ հարցն այն է, որ Վերդյանը դեպքերի իրական ընթացքը և հերոսի ճակատագիրը չի մեկուսացնում հասարակական լայն կյանքից, Ալեքսանյանի կերպարը չի վերածում լոպատկինյան «սրբապատկերի», նրան չի դարձնում «եզակի հերոս», ճշմարտության միակ պաշտպան, միայնակ տառապող անհատ և «համատարած չարության»՝ դրոզդովականության կեղծ «փիլիսոփայության» զոհ։ Վերդյանի վեպը իր գաղափարական հիմքով և կոնֆլիկտի լուծման եղանակներով պոլեմիկական ներլիցք է պարունակում հենց նույն դուդինցևյան կոնցեպցիայի դեմ։

Չբաժանելով որոշ մարդկանց անվերապահ հիացմունքը «Ինչպես է գալիս երջանկությունը» վեպի նկատմամբ, որը համարյա թե հանգում է «անթերի կատարելություն» համարելու գնահատականին (Վերդյանի վեպը արժանիքների հետ միասին ունի գեղարվեստական որոշակի թերություններ՝ կառուցվածքի ցրվածություն, «գործ չունեցող», կես ճանապարհին մնացած հերոսներ, բացասական հերոսների վարքագծի «զուտ հոգեբանական», «անհատական» մեկնաբանության մոմենտներ), այնուամենայնիվ, արդյունավետ ենք համարում հեղինակի՝ հերոսների իրենց աշխատանքային ու անձնական կապերի մեջ, գերազանցապես իրենց գործի ու մարդկային ապրումների չերկատված միասնության մեջ ցուցադրելու ձգտումը։

Սովետական մարդ հասկացողության ընդհանուր ըմբռնումը մի է, նրա կոնկրետ դրսևորումները բազմազան։ Գրողներից ոմանք, իրավացիորեն, իրենց հայացքը նետում են մեր պատմության ռևոլյուցիոն դրվագների կողմը, մյուսները Հայրենական պատերազմի բոցերի մեջ իրենց կամքն ու հոգին թրծած մարդկանց ճակատագրին են անդրադառնում, մի ուրիշ խումբ ժամանակակից մարդուն նկարագրում է անձնական կյանքի, ընտանեկան հարաբերությունների ոլորտում։ Այսպես, դրվագ առ դրվագ, գրողները մասնակցում են նոր հերոսի պրոբլեմի լուծմանը, երբեմն հասնելով գեղարվեստական նկատելի հաջողության։ Հերոսական, ժողովրդական բնավորությունը միանգամայն ճշմարիտ ձևով է մատուցում Սուրեն Այվազյանը, որի կերտած լուռ Կալաղարի՝ իր մասին չպարծարող, իր հոգու հազվագյուտ արժեքները հրապարակի վրա չդնող, գեղջկական անձուկ հորիզոնից մինչև հերոսության ժամանակակից ձևին հասած մարդու կերպարը իսկական գրական երևույթ է։ Գիտակցված նահատակության հարցը հաջողությամբ լուծել է Խ. Գյուլնազարյանը «Հացադուլ» պատմվածքում, ֆաշիստական գերության զնդանի մեջ տառապող հերոսների մեջ վերհանելով նրանց աննկուն ոգին, իսկ Նոր-Այրը «Մարդու խիղճը» գրվածքում — գերության մեջ գտնվող երկու եղբայրների՝ համոզված մարտիկի և դավաճանի առերեսման միջոցով բացահայտում է հերոսական մահվան և անարգ կյանքի հոգեբանական պրոբլեմը։

Վարքագծի վեհությունը, զգացմունքների ներդաշնակ գեղեցկությունը, մարդկայնության ժողովրդական բարձր ըմբռնումը,—ահա թե ինչ գծերով են բնութագրվում Հր. Քոչարի «Մայրը» պատմվածքի վշտի ծանրությունից արդեն կորացած, բայց լայն հոգու տեր պառավը, Ս. Խանզադյանի Հովիվ Համարաթը՝ որդու անսպասելի վարքի նկատմամբ անզիջող մարդու կենսահայաց-



քով, Վ. Արամյանի «Մարդու սերը» պատմվածքի «վատ անցյալի տեր» հերոսը, որին ուժեղ սերը բարձրացնում է երջանկությունը պայքարի ու նպատակասլաց աշխատանքի մեջ գտնելու գիտակցության, Վ. Պետրոսյանի «Պատմվածքներ մարդու մասին» շարքի և Քր. Թափալցյանի վեպի մի քանի հերոսներ, Վ. Անանյանի պատանի ռոբինզոնները («Հովազաձորի գերիները»)։

Մեր հիշատակած բոլոր այս գործերում նկատելի է հեղինակների յուրահատուկ ինտոնացիոն շեշտը, հերոսի պրոբլեմի լուծման ուրույն եղանակը։ Բայց նրանց միացնում է ընդհանուր ուղղությունը՝ սովետական մարդու կյանքի իմաստի արտահայտումը տարբեր կենսական հանգամանքների և տարբեր փոխհարաբերությունների մեջ։

Խոսելով դրական հերոսի պատկերման մասին, չի կարելի չհիշատակել նաև այն կերպարները, որոնք գործում են արտասահմանյան կյանքին նվիրված երկերում։ Գ. Սևունցի «Թեհրան» վեպի ազատագրական պայքարի մարտիկների կողքին ավելացան Սր. Ավագյանի «Շիկացած հողը» վեպի, «Թախիծ», «Խարույկի մոտ» պատմվածքների մեծ գործի համար նահատակված կամ պայքարի մեջ հզորացող հերոսները, վերջին հնգամյակի հայ արձակի լավագույն գեղարվեստական երկի՝ Ստ. Ալաջաջյանի «Պարտություն» վեպի կոմունիստ հերոսները, առանձնապես Պանոսը, որի կյանքի տրագիկական ընթացքի մեջ գծագրվում է կոմունիստական լուսավոր իդեալների և սոցիալիստական հումանիզմի սկզբունքների համոզված, կրքոտ մարտիկի հմայիչ կերպարը։

Հայ արձակագրությունը, այսպիսով, վերջին շրջանում նկատելի առաջընթաց է ունեցել մեր գրականության առանցքային խնդրի՝ դրական հերոսի պատմականորեն կոնկրետ ու լիարժեք վերարտադրության բնագավառում։ Սակայն նկատելի են նաև վրիպումներն ու ստեղծագործական նահանջները։

## 4

Վերջերս գրողներից ոմանց մոտ շրջանառության մեջ մտավ «փոքր» մարդու, «տառապող անհատականության» տեսակետը՝ «կորչի ուժեղ մարդը» լոզունգի նշանաբանով, տեսակետ, որն ամենից առաջ հարվածում էր հերոսի անհատականությանը, աղքատացնում նրա հոգեբանության բազմերանգությունը և հերոսներին քաշում հոգեբանական երկրորդական, աննշան հակասությունների ոլորտը։ Անհատական մանր բաղձանքները, պատմական պրոցեսից կտրված «հոգեբանական կոլիզիաները» դարձնելով գրվածքների կոնֆլիկտների հիմքը, որոշ արձակագիրներ գաղափարական բարձր արվեստի դիրքերից սահեցին «կարդացվող» զվարճանքի սայթաքուն արահետը։ Էսթետիկական այս մոլորության ամենաբնորոշ արտահայտությունը Մ. Ասլանյանի «Աշխեն Սաթյան» վեպն էր, որն իրավացիորեն խստորեն դատապարտվեց մամուլի և գրական հասարակության կողմից։ Այդ տենդենցը, իհարկե, ոչ նույն խտացված թանձրությամբ, արտահայտվեց Հ. Ղուկասյանի վիպակներում, որոնք առանձին մարդկանց կողմից որակվեցին որպես սոցիալիստական ռեալիզմի շրջանակներում «սեփական ոճի, սեփական ձևի որոնումների» դրսևորում։ Տխուր թյուրիմացություն։ Ամբողջ հարցն այն է, որ Հ. Ղուկասյանը, շնորհալի մի գրող, որ անցյալում ստեղծել է «Փոքրիկ վրիժառուների» և «Հասանի հիշատակարանի» նման ճշմարտացի գրքեր, այսօր

հանդես է գալիս էկլեկտիզմի և քաղքենիական ճաշակի պաշտպանությամբ, մարդկային փոխհարաբերությունները պատկերում է ոչ թե կյանքի հետ սերտ շփման մեջ, այլ միջավայրից ինչ-որ հեռավորության վրա։ Ճիշտ է նկատել քննադատ Ս. Սարինյանը, թե բնավորություններ կերտելու այն եղանակները, որ բանեցնում է Ղուկասյանը, նրան տանում է ամբողջական բնավորությունը մանր հատկանիշների մեջ տարածելու, «զուտ զգացմունքը» ֆետիշի վերածելու, հերոսներին իրական հարաբերություններից մեկուսացնելու և նրա «անհատական գաղտնիքները» հավելյալ առեղծվածներով «շրջապատելու» սխալ ճանապարհով։

Քննադատությունն արդեն համոզիչ խոսել է «Բժշկի հուշատետրից» վրիպած վիպակի մասին, ուստի անհրաժեշտություն չկա նորից անդրադառնալու դրան։ Ծանոթանանք Ղուկասյանի մյուս վիպակին, որը կրում է «Անավարտ պատմություն» գայթակղիչ խորագիրը։

Գործողությունը կատարվում է մի ընտանեկան հարկի տակ. խաղաղ, ներդաշնակ երազանքներով ու մոտիկ ապագայի «հեքիաթներով» շնչող ընտանիքն է մտնում քաղքենիական վարակը՝ ի դեմս վիրաբույժ Զավեն Բաղարյանի կնոջ՝ դերասանուհի Զինայի, և ամեն ինչ շուռ ու մուռ է գալիս։ Խախտվում է ընտանիքի անդորրությունը։ Զինայի պատճառով միմյանց նկատմամբ հավատն են կորցնում սիրող եղբայրները (Տիգրանը մեղադրվում է Զավենի կնոջ հարսանեկան ապարանջանը գողանալու մեջ), առաջվա հյուրընկալ, սրտաբաց օջախը փակում է իր դռները, կործանվում է Ամալյայի՝ Բաղարյանների տան միակ աղջկա երջանկությունը, Տիգրանը՝ նախկին առաջավոր բանվորը բռնում է հարբեցողության ուղին, ընտանիքի գլխավորը՝ հաշմանդամ հայրը չտանելով անախորժությունների ծանրությունը՝ կաթվածահար է լինում, Զավենը կորցնում է հավասարակշռությունը։ Մի խոսքով ոչինչ իր տեղում չէ, բնական կյանքը դուրս է ընկել իր շավղից և մնում է միայն վերհիշել անցյալը՝ «Լիզա տատիկի» հեքիաթների երջանիկ օրերը։ Միմյանց դեմ հանդիման կանգնած են «դրական սկզբունքների» մարմնավորող ընտանիքի անդամները և ահավոր չարիքը՝ քաղքենիական մորալի կրող Զինան, որ օտարամուտ տարր է ավանդական բարքերի ու ազնիվ սկզբունքների «գերի» մարդկանց մեջ։

Ամբողջ խնդիրն այն է, որ շերտ առ շերտ «հարստացնելով» բացասական հերոսի բնավորության տգեղ գծերը (և այն էլ բավականաչափ անախորժ ձևով), նատուրալիզմին բնորոշ մերկ շառավիղով նկարագրելով երևույթները, Հ. Ղուկասյանը չի կարողացել նյութը, բացասականի ու դրականի հարաբերությունը կազմակերպել այնպես, որ թեկուզ և նրա ներկայացրած քաղքենիության պատկերը ստանա որևէ սոցիալական բովանդակություն։ Ղուկասյանը չի հեռացել փաստից, հավասարվել է փաստերի մակերևույթին, ուստի և անօգնական է գտնվել պատասխանելու այն հարցին, թե ինչի՞ համար է «հորինել» այդ ամբողջ պատմությունը, ի՞նչ ճշմարտություն հաստատելու, կյանքի ո՞ր առանձնահատկությունը հաստատելու համար։

Հ. Ղուկասյանը միակողմանի, նախապես մտադրված գաղափարի ու սխեմայի մեջ է քաշել չարիքներով ծանրաբեռնված մի հերոսի, որի դեմ անզոր են նրան շրջապատող բոլոր մարդիկ։ «Անավարտ պատմություն» վիպակում բացակայում է չարիքի դեմ պայքարող ակտիվ սկզբունքը։ Եվ ինչո՞վ են, օրինակ, Զինայի ըմբռնումներից ու «կենսափիլիսոփայությունից» տարբեր-



վում Ամալյան, որ ձեռքերը ծալած սպասում է դեպքերի ընթացքին, Տիգրանը, որ անվանի գյուտարարի իր համբավը գլխակորույս զիջում է մի թեթև հարվածից, Զավենը, որ պատմության կենտրոնը լինելուց հեռացել է «հոգեբանական տառապանքի» «հաճելի» արահետը։

Քննադատությունն արդեն բավականին զբաղվել է Մկրտիչ Արմենի հատկապես վերջին պատմվածքների հարցով, և մատնանշել է նրա ստեղծագործական մեթոդի լուրջ արատները՝ բովանդակության մանրացում, մանրայնություն, ընտրած սյուժեների շրջանակներում գործող հերոսների վարքագծի և բնավորության գծերի տարօրինակություն, վերջին հաշվով՝ հեռացում ռեալիստական արվեստի սկզբունքներից։ Ո՞րն է Արմենի նման անպայման տաղանդավոր գրողի ստեղծագործության մեջ սողոսկած սխալ տենդենցների տեսական ակունքը։ Մեր կարծիքով այստեղ զգալի դեր է խաղացել գուցե և նոր գրողներին անծանոթ, բայց Արմենին քաջ հայտնի «կենդանի մարդու» թեորիան, որ լայն շրջանառության մեջ էր գրականության զարգացման առաջին տարիներին։ Արվեստագետի խնդիրը սահմանափակելով հերոսի այսպես կոչված «կենդանի ապրումների» սահմանում, մարդկային բնավորությունից դուրս վանելով նրա սոցիալական էությունը և զգայական ասպեկտը վերածելով մարդու արտաքին գործողությունները պայմանավորող ֆետիշի, այդ թեորիան մարդուն կտրում էր հասարակական միջավայրից, արտաքին ու ներքին հոգեբանական-սոցիալական կապերից։ Արմենի պատմվածքներում անհասկանալի պատճառներով շարունակում է հարատևել ամենուրեք իր անհատական աշխարհի ու զգացմունքների արձագանքը փնտրող «կենդանի մարդու» սխեմատիկ պատկերացումը, որը և տասից ինը դեպքում նրան հեռացնում է ժամանակակից հերոսի ռեալիստական խոր գծագրության ճանապարհից դեպի աննպատակ որոնումները։

Մեր որոշ գրողներ իրենց երկերի հիմքում դնում են բացառապես անձնական մոլորության վրա կառուցված, հասարակական լուրջ բովանդակությունից զուրկ, երկրորդական ու մասնակի փաստիկներ։ Իսկ դա տանում է դեպի կյանքի փաստերի լուսանկարչական արտագրություն, առաջ է բերում երևույթների պատմական իմաստի նկատմամբ «չեզոքություն», կոնֆլիկտի լուծման նկատմամբ անհետևողական, կիսատ-պռատ մոտեցում։ Այս մտքի հաստատման համար իլյուստրացիա կարող է ծառայել Ալ. Արաքսմանյանի «Ես փոքր մարդ եմ» պատմվածքը («Գրական թերթ», 1957, № 4)։ Արաքսմանյանի գրվածքը երգիծական նպատակադրում ունի՝ սատիրայի խարազանի տակ առնել հասարակության մեջ այսպես կոչված «փոքր», աննշան տեղ գրավող այն մարդու տիպը, որը գնում է բոլոր քամիների ուղղությամբ և միշտ, բոլոր ցնցումների ժամանակ «չոր է դուրս գալիս»։ Տրեստի հաշվապահ Մովսես Սոկրատովիչ Փիչխուլյանը պատմում է այն պայքարի մասին, որ ծավալվում է մի կողմից տրեստի և պլանրաժնի բոլոր աշխատողների, մյուս կողմից պարտիական կազմակերպության քարտուղարի միջև։ Պարզվում է, որ տրեստի ղեկավարները և նրանց «մարդը»՝ հաշվապահ Փիչխուլյանը մշտապես կեղծ թվերով խաբել են պետությանը, իսկ նրանց դեմ իբրև թե «սկզբունքային» և հետևողական դիրքերից պայքարող պարտկազմակերպության քարտուղարը սոսկ առաջնորդվել է անձնական կարիերայի դիրքերից։ Աշխատանքից ազատված նախկին ղեկավարության փոխարեն տրեստի ղեկավարությունը ստանձնած նախկին քարտուղարը, ինչպես դա երևում է Փիչխուլյանի ինքնախոստո-

*վանությունից, ոչնչով չի տարբերվում մյուսներից, իսկ «փոքր մարդը» շարունակում է իր «հաջող գոյությունը» նոր ղեկավարության հովանու տակ։ Արաքսմանյանի այս պատմվածքին ամենից առաջ պակասում է հնի և նորի պայքարի կոնկրետ ձևերի խոր իմացությունը և պարտիական հստակ դիրքը չարիքի նկատմամբ, որը և նրան դրել է «քննադատական պաթոսի» գրքերի մակարդակին։*

5.

*Մեր ժամանակակիցների կերպարների ստեղծմանը զգալիորեն վնասում է նաև «հերոսականության» հասկացողության դոգմատիկ ըմբռնումը։ Գրողներից ոմանք, խախտելով կյանքի փաստի վերարտադրության ռեալիստական հավանականության պահանջը, «իդեալական հերոսի» տեսանկյունից են մոտենում հարցի լուծմանը։ Սովետական մարդը,—դատում են որոշ հեղինակներ,— մարդկային բարձր հատկությունների ու գեղեցիկ առաքինությունների կրող է, ուստի և նրա ամեն մի արարք, վճիռ ու գործողություն արդեն էն գըլխից նախասահմանված է, նրան «բնորոշում է հասարակական պարտքի խոր գիտակցությունը», և այդ մարդը եթե մազաչափ անգամ հեռանա իր «հասարակական էությունից», ապա դրանով կխախտի հերոսականության «պարտադիր նորմաները»:*

*Ընդհանուր առմամբ հաջողված «Պատմվածքներ մարդու մասին» շարքում երիտասարդ գրող Վ. Պետրոսյանը ունի «Ժայռը ծովափին» վերնագրով մի էտյուդ։ Ծովային մարտից հետո ծովը «դիակների ու բեկորների» հետ ափ է նետում գիտակցությունը կորցրած մի հաղթանդամ նավաստու, որը «ուշքի գալուց հետո» հրաժարվում է մեկնել «զինվորական հիվանդանոց»։ Ինչո՞ւ։ Լսենք իրեն՝ նավաստուն, որ հետևյալ կերպ է հիմնավորում իր «հայրենասիրական արարքը»․ «Նավաստին իրավունք չունի ցամաքում մնալու... Նրա կյանքը ծովն է, նրա գերեզմանն էլ ծովը պետք է լինի...»։ Չեն օգնում զինվորական բժշկի թախանձանքները. «Հիմի բուժվելու ժամանակ չկա, ես պիտի սպասեմ»։ Նավաստու «հերոսական» վարքագիծը լրացնում են նրա աչքերը․ «Սառը պողպատի փայլ կար այնտեղ և առավոտվա երկնքի մաքրություն, արյուն ու վրեժ և սրբազան երդում՝ շիրիմների առաջ»։ «Ազնիվ ու աննկուն մարդու» այս նկարագիրը ըստ էության «շրջված հերոսություն է»՝ հասցված անբնականության աստիճանին։ Մի՞թե որևէ չափով կաղճատվեր նավաստու նկարագիրը, եթե նա գիտակցությունը կորցրած և արյունաքամ վիճակում գնար հիվանդանոց՝ շարք դառնալու հեռանկարով։*

*Ակնհայտ ցուցադրական հայրենասիրության և նախասահմանված արարքների նույն սկզբունքով են ձևված անծանոթ հեղինակի՝ Ա. Ստեփանյանի «Մի երեկո» («Սովետական գրականություն», 1958, № 5), Ալ. Արաքսմանյանի «Փոքրիկ երջանկություն» («Սով. գրակ.» 1957, № 3), Քր. Թափալցյանի «Նրա կյանքը փրկեցին», Ս. Խանզադյանի «Ուստա Հարութը» պատմվածքները։*

*Հորինված նպատակին համապատասխան դեր խաղացող հերոս է Արաքսմանյանի նկարագրած թանգարանային աշխատակցուհին։ Գրողին առաջնորդած գաղափարը՝ յուրաքանչյուր մարդ իր համեստ ավանդն է մուծում կյանքի կառուցման գործին, պատմվածքում չի ստացել խոր մեկնաբանություն, հերոսուհին դուրս չի եկել ավանդական «ասկետիկ անձնավորության» մաշված*



*սկզբունքի շրջանակից, որի հետ քայլող հեղինակի անպատշաճ ոգևորությունը («Ինձ թվաց, որ այդ սակավախոս կինը սկսել է քնքուշ զգացումներ տածել հանդեպ ինձ», ամբողջ ճանապարհին մտածում էի այն մասին, որ նա սիրահարվել է ինձ», «հուսավառ հեռանկարներով ես մտա նրա տունը») ոչնչով չի օգնում կերպարի հարստացմանը։ Մարդու անհատականությունը նախասահմանված սկզբունքի մեջ լուծելու օրինակ է նաև Քր. Թափալցյանի «Նրա կյանքը փրկեցին» («Գրական թերթ», 1957, № 3) պատմվածքը։ Կոլտնտեսության նախագահի «վեհանձնությունը» (հետաձգում է աղջկա նշանդրեքը և սեփական մեքենայով քաղաքային հիվանդանոց հասցնում մահամերձ հիվանդին, փրկում վերջինիս կյանքը) ներկայացված է տկլոր տենդենցով, անբնական հարաբերությունների մեջ։ Հերոսի արարքի հոգեբանական հիմքը և կոնֆլիկտը խախուտ է (նա «քավում է» իր չգործած մեղքը. Արմենուհուն չի ամուսնացրել Խաթուն մայրիկի թոռան՝ «աշուղ Ղարիբի» դերի մեջ մտած անհայտ սիրահարի հետ, իսկ հիվանդը վերջինիս հայրն է)։ Հերոսության գաղափարը Թափալցյանը մատուցում է առանց գեղարվեստական համոզիչ բացատրության, ուստի և նա հազիվ ստեղծել է «լավ մարդու» սխեմայի սեփական էկզեմպլյարը։*

*Ծանոթ սխեմաների մեջ դրված նման մտացածին «կերպարների» առատությունը մեր արձակում հետևանք է այն բանի, որ որոշ գրողներ արհեստական պատնեշներ են գծում առօրեականի և հերոսականի միջև, մեկը հակադրում են մյուսին, մեր մարդկանց առօրեական պայքարից չեն քաղում հերոսների «նյութը», այլ փնտրում են արտաքուստ էֆեկտավոր, բայց ըստ էության տաղտկալի, մարդու վեհության գաղափարը աղքատացնող դրություններ։*



*Գեղարվեստական գրականության ուժի աղբյուրը ժողովրդի կյանքի հետ ունեցած ամուր, անխզելի կապի մեջ է։ Գրողը որքան ակտիվորեն է մասնակցում իր ժողովրդի կյանքին ու պայքարին, որքան համարձակ է ներխուժում իրականության մեջ և իր արվեստին նայում է որպես կյանքի ներկայացուցիչ, այնքան ներգործուն հատկություն է ձեռք բերում նրա ստեղծագործությունը։ Գրականության պատմության մեջ նկատելի հետք են թողել միայն այն երկերը, որոնք հագեցված են դարաշրջանի մեծ հարցերով, արծարծում են ժողովրդի ճակատագրի գլխավոր առանձնահատկությունները։ Հայ արձակագիրները, որոնք կուտակել են մեծ փորձ, պարտավոր են զարգացնել դասական գրականության և սովետական կլասիկայի բարձր ավանդները։ Օրեցօր աճում են մեր ընթերցողների հոգևոր պահանջմունքները, և այդ բարձր պահանջների դիրքերից էլ նա ավելի մեծ խնդիրներ է ներկայացնում գրականությանը։ Գրողները պետք է ավելի խստապահանջությամբ մոտենան իրենց գործին, ինտենսիվ կերպով բարձրացնեն վարպետությունը, տիրապետեն գեղարվեստական կուլտուրայի մեծ նվաճումներին՝ արդարացնելու «պարտիայի հուսալի օգնականների» իրենց պատվավոր կոչումը։*

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԲՈՒԼՂԱՐԻԱՆ

**Լ. ԲԱՅՐԱՄՅԱՆ**

1944 թվականի սեպտեմբերի 9-ին ժողովրդական, հակաֆաշիստական
զինված ապստամբության հաղթանակի շնորհիվ Բուլղարիայում քաղաքական
իշխանությունն անցավ Կոմունիստական պարտիայի գլխավորած Հայրենական
ճակատի՝ երկրի հայրենասիրական ու դեմոկրատական ուժերի ձեռքը։ Սեպ-
տեմբերի 9-ի հաղթանակը, որը պայմանավորված էր բուլղարական աշխա-
տավորությանը Սովետական Բանակի ցույց տված վճռական օգնությամբ և
ֆաշիստական Գերմանիայի ու նրա վասալների ջախջախմամբ, շրջադարձա-
յին կետ դարձավ բուլղար ժողովրդի պատմության մեջ։ Բուլղար ժողովուրդը
ոչնչացրեց միապետությունը և երկրում հաստատեց ժողովրդա-դեմոկրատա-
կան կարգեր։

Ժողովրդա-դեմոկրատական իշխանությունը, որը պրոլետարիատի դիկ-
տատուրայի ձևերից մեկն է, երկրում անցկացրեց տնտեսական և քաղաքա-
կան արմատական վերափոխություններ, որոնք ճանապարհ հարթեցին սոցիա-
լիզմի կառուցման համար։ Դասակարգային սուր պայքարի պայմաններում
իրականացվեցին ռևոլյուցիոն մեծ վերափոխություններ՝ արդյունաբերական
ձեռնարկությունների, բանկերի, հանքերի, տրանսպորտի ազգայնացում և
ագրարային ռեֆորմ, որը կատարվեց «հողը պետք է պատկանի նրան, ով
այն մշակում է» սկզբունքով։

Բուլղարիայի աշխատավորությունը Կոմունիստական պարտիայի ղեկա-
վարությամբ կատարեց ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիա, որը լուծեց
բուրժուա-դեմոկրատական և սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրները։

Ժողովրդա-դեմոկրատական կառավարությունը պատերազմի հանցագործ-
ների, հայրենիքի դավաճանների գույքի բռնագրավմամբ ու արտադրության
հիմնական միջոցների ազգայնացմամբ ստեղծեց արտադրության հասարա-
կական սեկտոր և վճռական քայլերի դիմեց պատերազմի ժամանակ ավերված
ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման համար։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ֆաշիստական զավ-
թիչները փաստորեն գաղութացրել էին Բուլղարիան և կողոպտում էին նրա
հարստությունները։ Երկրի էկոնոմիկան անկում էր ապրում։ 1939 թվականի
համեմատ, 1944 թվականին մանածագործական արդյունաբերության արտա-
դրանքը կազմում էր 62,8 տոկոս, կաշվի արտադրանքը՝ 45,2 տոկոս, իսկ մե-
տաղամշակումը՝ 42,5 տոկոս։ 1944 թվականին Բուլղարիայի արդյունաբերու-
թյան համախառն արտադրանքը հազիվ հասնում էր նախապատերազմյան
մակարդակի 64 տոկոսին, իսկ գյուղատնտեսության արտադրանքը՝ 70 տո-
կոսին։



Հայրենական ճակատի կառավարության առաջ դրված էր լուրջ խնդիր՝ վերականգնել ավերված ու կողոպտված երկրի էկոնոմիկան, ինդուստրացնել երկիրը, վերջ դնել նրա տնտեսական հետամնացությանը և երկիրը դուրս բերել կիսագաղութային վիճակից։

Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան Սովետական Միության անշահախնդիր, եղբայրական օգնությամբ ու աջակցությամբ հիմնականում կենսագործեց 1947—1948 թթ. ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման երկամյա պլանը։ 1948 թվականին արդյունաբերության արտադրանքը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 83,7 տոկոսով։ Երկամյա պլանի կատարմամբ նախադրյալներ ստեղծվեցին անցնելու ժողովրդական տնտեսության զարգացման 1949—1953 թթ. առաջին հնգամյա պլանի կենսագործմանը, որի հիմնական տնտեսական և քաղաքական խնդիրներն էին՝ երկրի ինդուստրացման, էլեկտրիֆիկացման և գյուղատնտեսության կոոպերացման ու մեքենայացման միջոցով կառուցել սոցիալիզմի հիմքերը։

Ժողովրդական տնտեսության զարգացման այդ պլանը աշխատավոր ժողովրդի սխրալի աշխատանքի շնորհիվ իրականացվեց 4 տարում։ Հնգամյակի վերջում արդյունաբերության արտադրանքը նախապատերազմյան մակարդակի համեմատ աճեց 475,5 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունն ավելացավ 6,5 անգամ, իսկ սպառման առարկաներինը՝ 3 անգամ։ 1948 թվականի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 74,6 տոկոսով։

Առաջին հնգամյակում գյուղի սոցիալիստական վերակառուցման գործում նույնպես ձեռք բերվեցին լուրջ նվաճումներ։ Մանր գյուղացիական տնտեսությունները սկսեցին աստիճանաբար, կամավոր սկզբունքներով ընդգրկվել աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսությունների (ԱԿՀՏ) մեջ, որոնք հնարավորություն են տալիս լայնորեն կիրառել առաջավոր ագրոտեխնիկան, մեքենայացնել աշխատատար պրոցեսները, ապահովել գյուղատնտեսության վերելքը և այդ հիման վրա բարձրացնել ազգաբնակչության նյութական և կուլտուրական մակարդակը։

1953—1957 թթ. Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան հաջողությամբ իրագործեց ժողովրդական տնտեսության զարգացման երկրորդ հնգամյա պլանը, որի արդյունքները հանրագումարի բերեց 1958 թվականի հունիսին կայացած Կոմունիստական պարտիայի VII համագումարը։

Ինչպես ասված է Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ, արդյունաբերության հիմնական ֆոնդը կրկնապատկվեց, համախառն արտադրանքը նախատեսված 60 տոկոսի փոխարեն աճեց 76 տոկոսով, արտադրության միջոցների արտադրությունը 80 տոկոսի փոխարեն՝ 85 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրանքը 47 տոկոսի փոխարեն՝ 70 տոկոսով։ Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1939 թվականի (նախապատերազմյան մակարդակի) համեմատությամբ ավելացել է մոտավորապես 8 անգամ։

Զարգացման այդպիսի արագ տեմպը կապիտալիստական սիստեմի համեմատ տնտեսության սոցիալիստական սիստեմի գերազանցության ակնառու արտահայտությունն է։ Դա ավելի ցայտուն է դառնում, երբ Բուլղարիան համեմատում ենք նրա հարևան կապիտալիստական Հունաստանի և Թուրքիայի

հետ, որոնք նախապատերազմյան շրջանում գտնվում էին զարգացման միևնույն մակարդակի վրա։ Եթե 1939—1956 թթ. արդյունաբերության արտադրանքը Հունաստանում աճել է 1,9, իսկ Թուրքիայում 2,3 անգամ, ապա ժողովրդական Բուլղարիայում՝ 6,7 անգամ։ Եթե 1939 թվականին Բուլղարիայում ըստ շնչի արտադրված էլեկտրաէներգիայի քանակն այնքան էր, որքան Հունաստանում և կրկնակի անգամ ավելի Թուրքիայի արտադրանքից, ապա այժմ Բուլղարիայում էլեկտրաէներգիայի արտադրանքը մոտ 2 անգամ ավելի է Հունաստանի և 5 անգամ ավելի Թուրքիայի արտադրանքից։

Բուլղարիայի ժողովրդական Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերի մասին են վկայում նաև այն փաստերը, որ միայն երկրորդ հնգամյակի ընթացքում բրդյա, բամբակյա և մետաքսյա գործվածքների արտադրանքն աճել է մոտ 1,5 անգամ, շաքարինը՝ մոտ 2,2 անգամ, մետաղագործությանը՝ 2,3 անգամ, մետաղամշակմանն ու մեքենաշինությանը՝ ավելի քան 2, 4 անգամ, քիմիականը՝ 3 անգամ, չուգունինը՝ 6,5 անգամ, սև մետաղյա գլանվածքներինը՝ 11 անգամ։ Ներկայումս ռեսպուբլիկայում, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, արտադրվում է 5 անգամ ավելի շատ քարածուխ և 10 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա։ Նրա քարածխի հանույթը 2 անգամ ավելի է Թուրքիայի, 4 անգամ ավելի Բրազիլիայի, 7 անգամ ավելի Իտալիայի և 14 անգամ ավելի Հունաստանի արտադրանքից։

Ժողովրդական ռեսպուբլիկայի տնտեսության բուռն վերելքի պատկերն ավելի ցայտուն է երևում, երբ բնակչության յուրաքանչյուր շնչին այժմ ընկնող արտադրանքը համեմատում ենք միապետական Բուլղարիայի տնտեսության առանձին ճյուղերի արտադրանքի հետ (տե՛ս ստորև բերված աղյուսակը)։

Մեկ շնչին ընկնող արդյունաբերության արտադրանքը

| Արտադրանքի տեսակները | 1939 թ. | 1957 թ. | 1957 թվականին՝ 1939 թվականի համեմատությամբ |
|---|---|---|---|
| էլեկտրաէներգիա կվժ | 42 | 346 | 824 տոկոս |
| քարածուխ կգ | 352 | 1550 | 440 » |
| երկաթահանք » | 1.7 | 16,3 | 959 » |
| սև մետաղյա գլանվածք կգ | 0,7 | 15 2 | 2171 » |
| գունավոր մետաղի հանք կգ | 1 | 17 | 1700 » |
| ազոտի պարարտանյութ » | — | 24.9 | — |
| ցեմենտ » | 36 | 115 | 319 » |
| բամբակյա գործվածքներ մ. | 5.4 | 19,9 | 369 » |
| բրդյա » » | 0,8 | 1.7 | 213 » |
| միս կգ | 7.9 | 14.9 | 189 » |
| ալյուր » | 112,1 | 209.5 | 186 » |
| շաքար » | 4 | 15,3 | 370 » |

Առաջին և երկրորդ հնգամյա պլանների կենսագործմամբ Բուլղարիան, որը նախկինում Եվրոպայի ամենահետամնաց երկրներից մեկն էր, դարձավ առաջավոր զարգացած երկիր։

Երկրի ինդուստրացման ճիշտ քաղաքականության շնորհիվ ժողովրդական ռեսպուբլիկայում ստեղծվել են սև և գունավոր մետալուրգիա, մեքենաշինություն, քիմիական, նավաշինական, շինանյութերի արդյունաբերություն, անտիբիոտիկների արտադրություն, զարկ է տրվել էներգետիկ արդյունաբերությանը՝ նավթի, քարածխի հանույթին և էլեկտրաէներգիայի արտադրությանը, ընդլայնվել են տեքստիլ և վերամշակող արդյունաբերության ճյուղերը։



Այժմ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ առաջատար դերը պատկանում է արդյունաբերությանը։ Եթե 1939 թվականին կապիտալիստական Բուլղարիայի գյուղատնտեսության արտադրանքը 3 անգամ ավելի էր արդյունաբերության արտադրանքից, ապա այժմ ժողովրդական ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքն է 2 անգամ ավելի գյուղատնտեսության արտադրանքից։

Այդ նշանակում է, որ Կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականությամբ Բուլղարիայի ժողովրդական Ռեսպուբլիկան ստեղծել է իր սեփական ազգային արդյունաբերությունը՝ ծանր ինդուստրիայի ճյուղերով և, որ հետամնաց երկրագործական Բուլղարիան այսօր դարձել է սոցիալիստական ինդուստրիալ-ագրարային երկիր։

Բուլղարիայի ժողովրդական Ռեսպուբլիկան, տնտեսապես սերտորեն համագործակցելով ՍՍՌՄ-ի և սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ, զարգացնում է արդյունաբերության այն ճյուղերը, որոնց համար երկիրն ունի սեփական հումքի բազա և որոնց կարիքը հատկապես զգում է ժողովրդական տնտեսությունը։

Բուլղարիայի Կոմունիստական պարտիան և ժողովրդա-դեմոկրատական կառավարությունը երկրի ինդուստրացմանը զուգահեռ լուծեցին նաև մանր գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերակառուցման խնդիրը։ Բուլղարական գյուղում լրիվ և վերջնականապես հաղթանակեց խոշոր, կոոպերատիվ տնտեսությունների զարգացման ուղին։ Այդ հաղթանակը բացատրվում է նրանով, որ գյուղացիները գործնականում համոզվեցին մասնավոր տնտեսությունների նկատմամբ սոցիալիստական գյուղատնտեսության առավելությունների մեջ։

Գյուղի սոցիալիստական զարգացմամբ իրական պայմաններ ստեղծվեցին գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, նոր ագրոտեխնիկայի կիրառման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար։

1958 թվականի հունվարի 1-ի տվյալներով ժողովրդական ռեսպուբլիկայում կազմակերպված են 3200 ԱԿՀՏ-ներ, որոնցում ընդգրկված են ավելի քան մեկ միլիոն գյուղացիական տնտեսություններ։ Նրանք տալիս են ամբողջ գյուղատնտեսության արտադրանքի 90 տոկոսը, այդ թվում ցորենի՝ 84 տոկոսը, եգիպտացորենի՝ 72 տոկոսը, արևածաղկի սերմի՝ 88 տոկոսը, բամբակի՝ 94 տոկոսը, շաքարի ճակնդեղի՝ 97 տոկոսը։

ԱԿՀՏ-ներում տարեցտարի բարձրանում է երկրագործության բերքատվությունը, աճում անասունների և անասնաբուծական մթերքների քանակը, զարգանում աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Եթե 1939 թվականին բուրժուական Բուլղարիայում հողը մշակում էին 727 հազար փայտե արորով և թույլ հզորության 3 հազար տրակտորներով («Славяне», М., 1958, №4, стр. 23), ապա այժմ սոցիալիստական Բուլղարիայի դաշտերում գործում են 26,2 հազար տրակտոր, ավելի քան 4,3 հազար կոմբայն, մոտ 4,8 հա-

*զար կալսիչ, մոտ 1,2 հազար տրակտոր-սերմացան և հարյուրավոր այլ մեքենաներ։*

*Դաշտերի ոռոգման նպատակով միայն երկրորդ հնգամյակում կառուցվել են 1,5 միլիարդ խորանարդ մետր ջրատարողությամբ հինգ խոշոր ջրամբարներ և պոմպային ջրհան կայաններ՝ Դանուբ ու Մարիցա գետերի ջրերի օգտագործման համար։ Այդ միջոցառումների օգնությամբ ոռոգելի դաշտերի տարածությունը երկրորդ հնգամյակում կրկնապատկվել է, իսկ նախապատերազմյան շրջանի համեմատ ավելացել է մոտ 10 անգամ։*

*1957 թվականին ժողովրդական ռեսպուբլիկայի ցորենի արտադրությունը բուրժուական Բուլղարիայի համեմատ կազմեց 107,7 տոկոս, եգիպտացորենինը՝ 129,3 տոկոս, արևածաղկինը՝ 150,3 տոկոս, կարտոֆիլինը՝ 274,1 տոկոս, բամբակինը՝ 290,9 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 642,3 տոկոս, պամիդորինը՝ 700 տոկոս։ Աճել է նաև անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Ներկայումս նախապատերազմյան շրջանի համեմատությամբ մսի արտադրությունը կազմում է 118,9 տոկոս, կաթինը՝ 108,5 տոկոս, բրդինը՝ 111,7 տոկոս և այլն։ Գյուղատնտեսության վերելքի շնորհիվ անընդհատ ավելանում են կոոպերատոր-գյուղացիների եկամուտները, բավարարվում են քաղաքային բնակչության պարենային պահանջները և հումքով ապահովվում է թեթև ու սննդի արդյունաբերությունը։*

*Գյուղի սոցիալիստական վերակառուցումն ունի տնտեսական և քաղաքական խոշոր նշանակություն ինչպես երկրի էկոնոմիկայի զարգացման, այնպես էլ գյուղում կապիտալիզմի վերջին հենարանի՝ կուլակության լիկվիդացման իմաստով։*

*Այսպիսով, Բուլղարիայի Կոմունիստական պարտիան և կառավարությունը ղեկավարվելով լենինյան կոոպերատիվ պլանով և ստեղծագործորեն կիրառելով այն, հաշվի առնելով բուլղարական գյուղի առանձնահատկությունները ու ՍՍՌՄ-ի կոլտնտեսային շինարարության փորձը, ջախջախեցին դասակարգային թշնամու դիմադրությունը, հաղթահարեցին միջակ գյուղացիության երերումները և գյուղում ապահովեցին սոցիալիզմի հաղթանակը։ Բուլղարիան Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրներից երկրորդ պետությունն է, որտեղ գյուղում հաղթանակել է սոցիալիզմը։ Այդ հաղթանակը մեկ անգամ ևս հաստատեց բոլոր երկրներում կոոպերացման միջոցով գյուղի սոցիալիստական վերակառուցման անխուսափելի օրինաչափության մարքս-լենինյան դրույթը։*

*Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի սոցիալիստական շինարարության փայլուն նվաճումների շնորհիվ երկրի էկոնոմիկայում հաղթանակեց սոցիալիստական սեկտորը։ Ներկայումս սոցիալիստական սեկտորի բաժինը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ կազմում է 98 տոկոսը, գյուղատնտեսության մեջ՝ մոտ 90 տոկոսը, իսկ ապրանքաշրջանառության մեջ՝ 99 տոկոսը։*

*Այդ տվյալները պերճախոս վկայում են այն մասին, որ Բուլղարիայում լրիվ կերպով վերացվել է կապիտալիստական արտադրաեղանակը և հաղթանակել է սոցիալիստականը, կառուցվել են սոցիալիստական հասարակարգի տնտեսական հիմքերը և կուլտուրական նախադրյալները։ Հետամնաց ագրարային Բուլղարիան ժողովրդա-դեմոկրատական կարգերի շնորհիվ դարձել է*



սոցիալիստական ինդուստրիալ-ագրարային երկիր՝ կոոպերացված ու մեքենայացված գյուղատնտեսությամբ։

*Քաղաքում և գյուղում սոցիալիզմի հաղթանակի հետ մեկտեղ փոխվել է հասարակության դասակարգային կառուցվածքը, վերացվել են շահագործող դասակարգերն ու նրանց մնացորդները, ոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից։ Այժմ երկրում գոյություն ունեն բանվորների և կոոպերացված գյուղացիների իրար բարեկամ դասակարգեր ու նրանց հետ սերտորեն կապված ժողովրդական ինտելիգենցիա։*

*Սոցիալիզմի հաղթանակի հետ միասին անընդհատ աճում ու ամրապնդվում են ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը և աշխատավորական մասսաների համախմբվածությունը Կոմունիստական պարտիայի շուրջը։ Աշխատավորության առաջատար ու ղեկավար ուժ Կոմունիստական պարտիան անբաժանելիորեն կապված է ժողովրդի հետ, ճիշտ այնպես, ինչպես ժողովուրդն անխզելիորեն կապված է Կոմունիստական պարտիայի հետ։*

*Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում սոցիալիզմի կառուցման հաջողությունների հետևանքով արմատապես բարելավվել է աշխատավորության նյութական և կուլտուրական վիճակը։ 1957 թվականին ժողովրդական ռեսպուբլիկայի ազգային եկամուտը կապիտալիստական Բուլղարիայի ազգային եկամտի համեմատությամբ մեծացել էր 2,3 անգամ։*

*Ժողովրդական կառավարությունը սիստեմատիկաբար բարձրացնում է աշխատավորության ռեալ աշխատավարձը, մի կողմից, պետական ու կոոպերատիվ ապրանքների գների իջեցմամբ, իսկ մյուս կողմից, ցածր աշխատավարձերի, կենսաթոշակների ավելացմամբ։ Աշխատավորության դրության բարելավման նպատակով սահմանված է անվճար բուժման ու ուսուցման, սոցիալական ապահովագրության, թոշակների ու կենսաթոշակների, բազմազավակ ընտանիքներին նպաստների վճարման, արձակուրդների շրջանում բանվորների ու ծառայողների աշխատավարձերի պահպանման սիստեմ։ 1957 թվականի ապրիլի 1-ից աշխատավարձերը միջին հաշվով բարձրացվել են 15 տոկոսով և սահմանվել է 450 լևից ոչ պակաս աշխատավարձ։ Այդ միջոցառումների շնորհիվ երկրորդ հնգամյակում աշխատավորության ռեալ աշխատավարձը նախատեսված 40 տոկոսի փոխարեն բարձրացավ 55 տոկոսով։ Լայն ծավալ է ստացել բնակարանային շինարարությունը։ Առաջին և երկրորդ հնգամյակների տարիներին կառուցվել է 9 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։*

*Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայում տեղի է ունեցել իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Վերացվել է անգրագիտությունը և սահմանված է պարտադիր պոլիտեխնիկ կրթության սիստեմ։ Այժմ երկրում կա 20 ԲՈՒՀ՝ նախապատերազմյան 9-ի դիմաց։ Միջնակարգ և բարձրագույն կրթություն ստացողների տոկոսային հարաբերությամբ Բուլղարիան աշխարհում գրավում է առաջավոր տեղերից մեկը։ Բուլղարիայի Գիտությունների Ակադեմիան ունի 35 գիտա-հետազոտական ինստիտուտներ։ Բուլղարական գիտնականները սերտորեն համագործակցում են սոցիալիստական բոլոր երկրների գիտնականների հետ։*

*Ժողովրդական ռեսպուբլիկան մեծ հոգատարություն է հանդես բերում դեպի գրականությունը, արվեստն ու կուլտուրան, որոնց զարգացումը խրախուսելու նպատակով սահմանված է Դիմիտրովյան մրցանակ։*

Ժողովրդական Բուլղարիայի և ՍՍՌՄ-ի ու ժողովրդա-դեմոկրատական մյուս երկրների միջև հաստատված են կուլտուրական լայն կապեր, որոնք նպաստում են ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական բուլղարական կուլտուրայի զարգացմանը։

Ռեսպուբլիկայի աշխատավորությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ այժմ մեծ խանդավառությամբ ձեռնամուխ է եղել ժողովրդական տնտեսության զարգացման III հնգամյա պլանի կատարմանը։

Այս տարվա հունիսին տեղի ունեցած Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի VII համագումարն ընդունեց ժողովրդական տնտեսության զարգացման 1958—1962 թթ. III հնգամյա պլանի դիրեկտիվները, որոնք նոր հեռանկարներ են բացում կոմունիզմի ուղիով բուլղար ժողովրդի առաջընթացի համար։

Ինչպես նշված էր համագումարում Բուլղարիայի Մինիստրների Սովետի նախագահ Ա. Յուգովի տված զեկուցման մեջ, III հնգամյակի տնտեսական-քաղաքական հիմնական խնդիրներն են՝ շարունակել սոցիալիստական հասարակարգի հետագա կառուցումը, ընդլայնել նրա նյութա-արտադրական բազան, շարունակել սոցիալիստական արտադրական հարաբերությունների ամրապնդումը, զարգացնել արտադրողական ուժերը և էլ ավելի բարձրացնել աշխատավորության սոցիալիստական գիտակցությունը։

Նախատեսվում է նոր հնգամյակում շարունակել երկրի ինդուստրացումը՝ առաջնությունը տալով ծանր արդյունաբերությանը, ներդնել նոր տեխնիկա և լրիվ օգտագործել գոյություն ունեցող արդյունաբերական հզորությունը, ուժեղացնել գյուղատնտեսության մեքենայացումը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և ապահովել վերելքը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Երրորդ հնգամյակում մեծ ուշադրություն է դարձվում մեքենաշինության, սև և գունավոր մետալուրգիայի, շինանյութերի արտադրության, էներգետիկական ու քիմիական արդյունաբերության վրա։ Մեքենաշինությունը, համաձայն սոցիալիստական լագերի երկրների Տնտեսական Փոխօգնության Խորհրդի հանձնարարության, այն աստիճանի պետք է զարգանա, որ Բուլղարիան կարողանա լրիվ բավարարել իր երկրի ներքին պահանջները և արտադրանքի մի մասը արտահանի սոցիալիստական լագերի երկրները, իսկ մյուս մասը վաճառի կապիտալիստական պետություններին։

1958—1962 թթ. ժողովրդական տնտեսության զարգացման պլանով նախատեսված է արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացնել 60 տոկոսով, արտադրության միջոցների արտադրությունը՝ 77 տոկոսով, թեթև ու սննդի արդյունաբերությունը՝ 50 տոկոսով, իսկ գյուղատնտեսության արտադրանքը՝ 35 տոկոսով։ Այդ պլանի իրագործմամբ ազգային եկամուտը կավելանա 50 տոկոսով, ապրանքաշրջանառությունը՝ 40 տոկոսով, իսկ աշխատավորության ռեալ աշխատավարձը՝ 30 տոկոսով։

1962 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, քարածխի հանույթը կավելանա 62 տոկոսով, էլեկտրաէներգիան՝ 88 տոկոսով, գունավոր մետալուրգիայի արտադրանքը՝ 93 տոկոսով, սև մետալուրգիայի, մետաղամշակման ու մեքենաշինության արտադրանքը՝ ավելի քան 200 տոկոսով, իսկ քիմիական արդյունաբերությանը՝ ավելի քան 250 տոկոսով։ Արդյունաբերության և գյուղատնտեսության հարաբերակցությունը կկազմի 70:30՝ հօգուտ առաջինի։



Հնգամյակի վերջում երկիրը 30 օրում կարտադրի այնքան արդյունաբերական ապրանք, որքան ամբողջ 1939 թվականի ընթացքում արտադրել էր Բուլղարիան։

Երրորդ հնգամյակում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 11—29 տոկոսով, որով ռեալ պայմաններ կստեղծվեն աստիճանաբար 7—6 ժամյա աշխատանքային օրվա անցնելու համար։

Երրորդ հնգամյակում լուրջ ուշադրություն է հատկացվելու նաև գյուղատնտեսության զարգացման վրա, որի հիմնական խնդիրներն են՝ բարձրացնել երկրագործության կուլտուրան ու աշխատանքի արտադրողականությունը, անասնաբուծության մթերատվությունը, ուժեղացնել հողի, մեքենաների և արտադրության այլ միջոցների ռացիոնալ օգտագործումը, կրճատելով արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա կատարվող ծախսերը։ Գյուղատնտեսության աշխատողների առջև խնդիր է դրված ըստ շնչի արտադրանքի և ըստ հողի միավորից ստացած բերքի հասնել եվրոպական առաջավոր երկրներին։ Հնգամյակի ընթացքում գյուղատնտեսությունը կստանա մոտ 14 հազար տրակտոր, 5200 կոմբայն և այլ տիպի հացահատիկային մեքենաներ։

Երրորդ հնգամյա պլանի դիրեկտիվներում հատուկ տեղ է հատկացված աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացմանը։ Աշխատավորության կուլտուր-կենցաղային աճող պահանջները բավարարելու համար 1958—1962 թթ. հատկացվելու է ավելի քան 5 միլիարդ լև՝ II հնգամյակի 3400 միլիոն լևի դիմաց։

Երրորդ հնգամյակի ընթացքում կառուցվելու է 4 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն (II հնգամյակում կառուցվել էր 2.700 հազար քառակուսի մետր տարածություն)։ Կկառուցվեն նաև նոր սանատորիաներ, հանգստի տներ և այլն։

Հնգամյակի տարիներին ավելի կամրապնդվեն բարեկամությունն ու տնտեսական-քաղաքական համագործակցությունը Բուլղարիայի և ՍՍՌՄ-ի ու սոցիալիզմի լագերի մյուս երկրների միջև։ Դա ռեսպուբլիկայի արտաքին քաղաքականության անկյունաքարն է, նրա ազգային անկախության, պետական սուվերենության գրավականը և երկրի էկոնոմիկայի ծաղկման երաշխիքը։ Այդ բարեկամության բարերար ազդեցության շնորհիվ բուլղար ժողովրդին հաջողվեց կարճ ժամանակամիջոցում անցնել զարգացման պատմական մի ամբողջ շրջան և հասնել վիթխարի հաջողությունների։

1948—1957 թթ. Սովետական Միությունը ամենաձեռնտու պայմաններով Բուլղարիային 7,8 միլիարդ լևի փոխառություն է տվել, որը ժողովրդական տնտեսությունում ներդրված ամբողջ կապիտալի 25 տոկոսն է։ ՍՍՌՄ-ի օգնությամբ Բուլղարիայում կառուցվել են քիմիական, մետալուրգիական, սոդայի, հախճապակու, ցելյուլոզայի, կապարի ու ցինկի, պենիցելինի, գյուղատնտեսական մեքենաների արտադրության մի շարք գործարաններ ու ձեռնարկություններ։ Սոցիալիստական լագերի երկրների հետ Բուլղարիայի համագործակցությունն իր արտահայտությունն է գտնում նաև փոխադարձ շահավետ առևտրի, գիտա-տեխնիկական նվաճումների, արտադրական հաջողությունների փորձի փոխանակման, կադրերի պատրաստման և ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կոորդինացման մեջ։

Երրորդ հնգամյա պլանի դիրեկտիվները մշակելիս Բուլղարիայի Կոմունիստական պարտիան ղեկավարվել է սոցիալիստական լագերի երկրների

միջև աշխատանքի միջազգային բաժանման սկզբունքով, ավելի լայն կիրառելով ժողովրդական տնտեսության մասնագիտացման ու կոոպերացման քաղաքականությունը, որը շատ օգտակար է ինչպես առանձին վերցրած յուրաքանչյուր երկրի, այնպես էլ ամբողջությամբ վերցրած սոցիալիստական լագերի համար։

Բուլղարա-սովետական բարեկամությունը բուլղար ժողովրդի համար ունի կենսական նշանակություն։ «Բարեկամությունը Սովետական Միության հետ բուլղար ժողովրդի համար այնպիսի կենսական անհրաժեշտություն է, ինչպես արևն ու օդն ամեն մի կենդանի էակի համար»,— ասել է բուլղար ժողովրդի մեծ զավակ Գ. Մ. Դիմիտրովը։ Այդ բարեկամությունն ու համագործակցությունը «մեր հայրենիքի հաջողությունների ու ծաղկման աղբյուրն է, նրա ազգային անկախության երաշխիքը»,— ասում է Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Տ. Ժիվկովը։



Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան իր գոյության տասնչորս տարիների ընթացքում, Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ հետամնաց, ագրարային երկրից վերածվել է սոցիալիստական ինդուստրիալ-ագրարային երկրի՝ կոոպերացված և մեքենայացված գյուղատնտեսությամբ։ Ամփոփելով իր կատարած հիանալի աշխատանքի արդյունքները, անհաշտ քննադատությամբ մերկացնելով ժամանակակից ռևիզիոնիստների հակամարքսիստական-հակալենինյան ոտնձգությունները, Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի VII՝ հաղթանակած սոցիալիզմի համագումարը ընդգծեց, որ սոցիալիզմը հաղթել ու տիրապետում է երկրի հասարակական-քաղաքական, տնտեսական և գաղափարական կյանքի բոլոր բնագավառներում։ Ժողովրդական տնտեսության զարգացման III հնգամյա պլանի իրագործումը մի նոր խոշոր քայլ կլինի սոցիալիստական հասարակարգի զարգացման, աշխատավորության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։

Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի արտաքին քաղաքականությունը խաղաղության ու բարեկամության քաղաքականություն է։ Այն համապատասխանում է ժողովրդի կենսական շահերին և խիստ անհրաժեշտ է խաղաղ ստեղծագործական աշխատանքի, սոցիալիստական հասարակարգի հետագա կառուցման համար։

Բուլղարիայի աշխատասեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սոցիալիստական լագերի ժողովուրդների հետ սերտորեն համագործակցած, բարձր պահելով մարքսիզմ-լենինիզմի անպարտելի դրոշը, անշեղորեն առաջ է ընթանում կոմունիզմի լուսավոր ուղիով։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ

Կոմունիստների գաղափարական դաստիարակության գործը եղել է և մնում է պարտիայի ուշադրության կենտրոնում։ Այժմ, երբ մեր Հայրենիքը հաջողությամբ ընթանում է դեպի կոմունիզմ, երբ գնալով կրճատվում է վարչական միջոցառումների սֆերան և ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում համոզման մեթոդը, պարտիան իր անդամներին առավել բարձր պահանջներ է ներկայացնում։ Կոմունիստը չի կարող իր կոչման բարձրության վրա գտնվել, եթե նա զուրկ է քաղաքական գիտելիքներից, եթե նա տեսական անհրաժեշտ պատրաստականություն չունի։

Կոմունիզմի երդվյալ թշնամիները, կատաղած մեր երկրի ու սոցիալիստական լագերի մյուս երկրների հաջողություններից, հազար ու մի կեղծիք, սուտ ու զրպարտություն են հորինում և տարածում աշխարհով մեկ։ Կոմունիստի սրբազան պարտքն է անհաշտ լինել թշնամիների նկատմամբ, մերկացնել նրանց ստահոդ գաղափարախոսությունը, հեռու պահել մասսաներին այդ գաղափարախոսության ազդեցությունից։ Այդ աշխատանքը հաջողությամբ կատարելու համար կոմունիստը պարտավոր է սիստեմատիկաբար հոգ տանել իր տեսական պատրաստականության մասին. նա պետք է տիրապետի մարքսիզմ-լենինիզմին։

Կոմունիստներին քաղաքական գիտելիքներով զինելու հիմնական միջոցը պարտիական լուսավորության ցանցն է, որը տարիների ընթացքում ցույց է ավել իր կենսունակությունը։ Խնդիրն այն է, որ մեր պարտիական կազմակերպությունները լայնորեն օգտագործեն այդ ուղղությամբ ձեռք բերած իրենց բազմամյա հարուստ փորձը, վերացնեն եղած թերությունները և ուսուցումը դնեն գաղափարական բարձր մակարդակի վրա։

Ի՞նչ պետք է անել պարտիական լուսավորության ցանցի նոր ուսումնական տարվա նախօրյակին։ Այժմ ամենագլխավորը պարտլուսցանցի ճիշտ կոմպլեկտավորումն է։ Պետք է հասկանալ, որ ուսուցման ցանցի կոմպլեկտավորումը տեխնիկական գործ չէ, հետևաբար այստեղ աններելի է շտապողականությունը։ Պետք է ժամանակ տալ կոմունիստներին, որպեսզի նրանցից ամեն մեկը որոշի, թե ինքը ուսուցման որ օղակում է ուզում սովորել։ Դրա համար հարկավոր է զրույց ունենալ ամեն մեկի հետ, հաշվի առնել կոմունիստների ցանկությունները, օգնել նրանց ճիշտ որոշում կայացնելու։ Չպետք է կրկնել անցյալ ուսումնական տարվա թերությունները, երբ առանձին պարտիական կազմակերպությունների ոչ լուրջ մոտեցման հետևանքով մի շարք խմբակներ ճիշտ չկոմպլեկտավորվեցին։

Դրական երևույթ է, որ պարտիայի XX համագումարից հետո ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները վճռական բեկում մտցրին կոմու-

նիստների, մեր բոլոր կադրերի քաղաքական ուսուցման գործում և լուրջ քայլեր կատարեցին սոցիալիստական շինարարության պրակտիկայից պրոպագանդայի կտրվածությունը վերացնելու ուղղությամբ։ Մյուս խմբակների ու սեմինարների հետ միասին այդ գործում իրենց որոշակի դերը խաղացին արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակները, որոնցից շատ շատերը կուտակել են ուսանելի փորձ։ Բայց չի կարելի աչք փակել այն թերությունների առաջ, որոնք գոյություն ունեն այդ խմբակների աշխատանքում։ Քիչ փաստեր չկան, երբ կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող առանձին խմբակներ սոցիալիստական տնտեսության հիմունքները, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների աշխատանքի կազմակերպման ու ղեկավարման ձևերն ու մեթոդները գիտականորեն ուսումնասիրելու, մարքսիստական քաղաքատնտեսության հիմունքների մեջ խորանալու և կոմունիստական շինարարության պրակտիկան տեսականորեն հիմնավորելու փոխարեն բռնեցին նեղ պրակտիցիզմի ուղին։ Նման խմբակների պարապմունքները շատ դեպքերում վերածվել են արտադրական խորհրդակցությունների, կամ էլ ուսումնասիրել են տեխնոլոգիային, ագրոնոմիային ու զոոտեխնիկային վերաբերող թեմաներ։ Ինչ խոսք, որ կադրերի որակավորման համար այդ գիտելիքներն անհրաժեշտ են։ Բայց չի կարելի մարքսիստական-լենինյան տնտեսագիտության և սոցիալիստական ձեռնարկությունների էկոնոմիկայի ուսումնասիրությունը փոխարինել տեխմինիմումի և ագրո գիտելիքների ուսումնասիրությամբ, որոնց համար գործում են առանձին խմբակներ։

Պարտիական կազմակերպությունները նոր ուսումնական տարին նախապատրաստելիս պետք է լուրջ ուշադրություն դարձնեն այդ կարգի թերությունների վերացման վրա և կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների միջոցով ունկնդիրներին անհրաժեշտ գիտելիքներ տան պրակտիկ աշխատանքում ճիշտ կողմնորոշվելու և պարտիայի ու կառավարության կողմից մեր երկրի զարգացման ներկա էտապում առաջադրած խնդիրները պատվով լուծելու համար։

Այդ խնդիրները հիմնականում տրված են արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցելու, ՄՏ կայանները վերակազմելու, գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգ և նոր գներ սահմանելու, քիմիական արդյունաբերությունը զարգացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներում, որոնք ջերմ ընդունելություն գտան ամբողջ պարտիայի ու ժողովրդի կողմից։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներում արծարծված հարցերը կազմում են պարտիայի ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակների հիմնական թեմատիկան։

«Առաջին հայացքից,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— այդ բոլոր հարցերը զուտ գործնական հարցեր են, բայց դրանք միաժամանակ տեսական հարցեր են։ Այստեղ երևան են գալիս մեկ միասնական ամբողջի երկու կողմերը՝ տեսությունը և պրակտիկան։ Արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման ասպարեզում մեր հաջողություններով մենք ակնբախորեն ցույց ենք տալիս մեր տեսական մտքի առավելությունները, մարքսիզմ-լենինիզմի տեսության ուժն ու կենսունակությունը, որի հիման վրա կառուցվում է սոցիալիստական հասարակարգը։ Այդ տեսությունը կիրառելով պրակտիկայում, զարգացնելով սոցիալիստական էկոնոմիկան, հարթելով



ապագայի նոր ուղիներ, մենք հաստատում ու զարգացնում ենք ռևոլյուցիոն տեսությունը, այն հարստացնում ենք միլիոնների փորձով։

Սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր պրակտիկ հարց միաժամանակ նաև տեսական հարց է, որը ուղղակի կապ ունի մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման հետ։ Մեկը մյուսից անջատել չի կարելի»։

Այսպիսով, ինքնին հասկանալի է, թե որքան կարևոր նշանակություն ունեն ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումների, պարտիայի ընթացիկ քաղաքականության հարցերի ուսումնասիրությունը։ Բայց մեր առանձին պարտիական կազմակերպություններ այդ բանի վրա անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում և ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակները որակյալ, բազմակողմանիորեն զարգացած պրոպագանդիստներով չեն ապահովում։ Դրա հետևանքը լինում է այն, որ այդ խմբակների մի շարք պրոպագանդիստներ պարապմունքները վեր են ածում ագիտզրույցների և մեծ մասամբ բավարարվում են թերթերում տպագրված որոշումների ընթերցանությամբ։ Այդպիսի երևույթը հանդուրժել չի կարելի։ Պարտլուսացանցի նոր ուսումնական տարում ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակները պետք է ապահովել պատրաստված ու փորձված պրոպագանդիստներով, որոնք կարողանան ունկնդիրներին անհրաժեշտ տեսական գիտելիքներ տալ և, որ կարևորն է, այդ գիտելիքները կապեն սոցիալիստական շինարարության պրակտիկայի, տվյալ կոլեկտիվի առջև դրված խնդիրների անթերի կատարման հետ։

Քննադատաբար գնահատելով նախորդ ուսումնական տարվա արդյունքները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները պարտլուս ցանցի 1957—1958 թթ. ուսումնական տարում որոշ չափով բարելավեցին պարտիայի պատմության ուսումնասիրության գործը։ Ավելի քան 553 խմբակներում և 181 սեմինարներում 9014 կոմունիստ և 2020 անպարտիական ակտիվիստ մեծ սիրով ուսումնասիրում էին մեր պարտիայի հերոսական պատմությունը, որը կյանքի, ռևոլյուցիոն պայքարի պրակտիկայի հետ մարքսիզմ-լենինիզմի օրգանական կապի վառ օրինակ է։

Պարտիական լուսավորության ցանցի նոր՝ 1958—1959 ուսումնական տարում պետք է առավել մեծ ուշադրություն դարձնել պարտիայի պատմության, առանձնապես նրա հետհոկտեմբերյան շրջանի պատմության խոր ու բազմակողմանի ուսումնասիրության վրա։ Պարտիայի պատմությունը պետք է ուսումնասիրել նրա զարգացման ու գործողության մեջ, բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի բարեկեցության բարձրացման, մեր երկրում կոմունիզմի կառուցման համար նրա մղած անդուլ ու հերոսական պայքարի մեջ։ Միայն այդ դեպքում կարելի է իմանալ զարգացման տարբեր էտապներում պարտիայի վարած սկզբունքային քաղաքականության բուն էությունը, ստրատեգիայի ու տակտիկայի գիտական հիմունքները, որով կոմունիստները հնարավորություն կունենան ճիշտ կողմնորոշվելու կոմունիստական շինարարության պրակտիկայում, ժամանակակից ներքին և արտաքին քաղաքականության հարցերում։

Պարտիական լուսավորության ցանցում կարևոր նշանակություն ունի մարքսիստական-լենինյան փիլիսոփայության և քաղաքատնտեսության ուսումնասիրությունը։ Բայց, հարկ է նշելու, որ փիլիսոփայության և քաղաքա-

տնտեսության ինչպես անհատական, այնպես էլ խմբակային կարգով ուսումնասիրող ընկերների թիվը քիչ է։ Մեզ մոտ կան բարձրագույն կրթությամբ զգալի թվով կոմունիստներ, որոնք երկար տարիներ շարունակ ուսումնասիրում են միայն պարտիայի պատմությունը, նույն խմբակների ու սեմինարների շրջանակներից դուրս չեն գալիս և դոփում են տեղում։ Պարտիական կոմիտեներն ու բյուրոները այդպիսի կոմունիստների հետ պետք է համապատասխան աշխատանք կատարեն և նրանց օգնեն անցնելու պարտիական լուսավորության ցանցի այն օղակները, որտեղ ուսումնասիրում են մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, մարքսիստական-լենինյան տեսության առանձին պրոբլեմները։

Կոմունիստը որքան պարտիական լուսավորության ավելի բարձր ձևի է անցնում, այնքան ավելի ինքնուրույն աշխատանք է պահանջվում։ Դա նրան օգնում է նախապատրաստվելու և ինքնակրթությամբ զբաղվելու, որը կոմունիստների իդեական-քաղաքական պատրաստության բարձրացման հիմնական մեթոդն է։

Մեր մի շարք պարտիական կազմակերպություններ (Երևան, Լենինական, Կիրովական, Իջևան, Շամշադին) անվիճելի հաջողությունների են հասել այդ բնագավառում։ Բայց կան նաև այնպիսի պարտիական կազմակերպություններ (Ախուրյան, Սիսիան, Աղին), որոնք անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում կոմունիստների քաղաքական ինքնակրթության վրա, որի հետևանքով էլ տարեցտարի չի ավելանում ինքնակրթությամբ զբաղվողների թիվը։ Դրա հիմնական պատճառը պետք է փնտրել այն բանում, որ պարտիական կազմակերպությունները այդ գործով վատ են զբաղվում և համապատասխան օգնություն ցույց չեն տալիս քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստներին։

Լինում են նաև այնպիսի դեպքեր, երբ որոշ կոմունիստներ իրենց հայտարարելով քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներ, գործնականում շոշափելի աշխատանք չեն կատարում իրենց իդեական-քաղաքական մակարդակի բարձրացման համար։ Որպես կանոն այդպիսի կոմունիստները թեորիական հարցերի շուրջը տեսական կոնֆերանսներում, սեմինարներում՝ ռեֆերատներով, իսկ աշխատավորների ժողովներում՝ զեկուցումներով հանդես չեն գալիս, իրենց պասսիվ են պահում, տեսական հարցերում կորցնում են ճաշակը։ Եվ բնավ էլ պատահական չէ, որ այդպիսի ընկերները գործնական աշխատանքում ճիշտ չեն կողմնորոշվում, չեն կարողանում տեսնել ու արմատավորել նորը, պրոգրեսիվը, ուսանելին, որի հետևանքով էլ տապալում են հանձնարարված գործը։ Այդպիսի կոմունիստները, իհարկե, խախտում են կանոնադրական իրենց պարտականությունները, որը պարտիական կազմակերպություններին իրավունք է տալիս զբաղվելու նրանց հարցով։

Այժմ, երբ ամենուրեք առաջ են գնում պարտիական լուսավորության նոր ուսումնական տարվա նախապատրաստական աշխատանքները, պարտիայի քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները ի թիվս մյուս հարցերի, պետք է առավել ուշադրություն դարձնեն կոմունիստների քաղաքական ինքնակրթության վրա և կոնկրետ միջոցներ ձեռք առնեն այդ գործում եղած թերությունները վերացնելու համար։

Հայտնի է, որ պարտիական լուսավորության հիմնական դեմքը պրոպագանդիստն է, որի պատրաստությունից ու բանիմաց աշխատանքից է կախված քաղգպրոցների, խմբակների ու սեմինարների հաջող աշխատանքը, պարապմունքների իդեական բարձր մակարդակը, տեսական հարցերի շաղկապումը պրակտիկ խնդիրների հետ։ Հաշվի առնելով այդ, մեր պարտիան լուրջ ուշադրություն է դարձնում պրոպագանդիստական կադրերի ընտրության, նրանց որակավորման ու աճեցման վրա։ ՀԿՊ Կենտկոմին կից պրոպագանդիստների վերապատրաստման ամառային դասընթացներում ամեն տարի որակավորվում են հարյուրավոր պրոպագանդիստներ։ Այս տարի այդ դասընթացներով անցան 150 պրոպագանդիստներ, որոնց համար դասախոսություններ կարդացվեցին ՍՄԿՊ պատմության, դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի, մարքսիստական քաղաքատնտեսության, կոնկրետ էկոնոմիկայի, միջազգային ու բանվորական շարժման ակտուալ թեմաների մասին։



Պրոպագանդիստական կադրերի ընտրությունից ու հաստատումից հետո պարտիական կոմիտեները պետք է սիստեմատիկաբար նրանց տեսական ու մեթոդական օգնություն ցույց տան, կազմակերպեն լավագույն պրոպագանդիստների փորձի փոխանակում։ Այդ գործում մեծ է քաղլուս կաբինետների դերը. նրանք պրոպագանդիստների համար պետք է կազմակերպեն որակյալ դասախոսություններ, կոնսուլտացիաներ, մեթոդական զրույցներ, ռեֆերատների ընթերցում, պրոպագանդիստներին տրամադրեն դիդակտիկ նյութեր, տվյալ շրջանի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման վերաբերյալ համապատասխան տվյալներ, որոնք պրոպագանդիստներին անհրաժեշտ կլինեն պարապմունքների ընթացքում։

Պարտիական կոմիտեները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն պարտլուսցանցի պրոպագանդիստական կադրերի ընտրության վրա։ Այդ պատվավոր ու պատասխանատու աշխատանքը կարելի է վստահել միայն այն ընկերներին, որոնք ոչ միայն թեորիապես պատրաստված են, այլև տիրապետում են պրոպագանդիստական աշխատանքի արվեստին, գրավում ու համակում են ունկնդիրներին։

Մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդան սեզոնային գործ չէ. այն պետք է ծավալել ամբողջ տարվա ընթացքում։ Ճիշտ չեն որոշ ընկերներ, որոնք կարծում են, թե պարտիական լուսավորության տարին ավարտվելուց հետո պետք է պրոպագանդիստական աշխատանքին դադար տալ՝ մինչև նոր ուսումնական տարվա սկսվելը։ Ուսումնական տարին ավարտելուց հետո առանձնապես պետք է ուժեղացնել դասախոսական պրոպագանդան։ Ինչպես պարտիական լուսավորության ցանցում ընդգրկված ընկերների, այնպես էլ մեր բոլոր աշխատավորների համար պետք է որակյալ դասախոսություններ կազմակերպել պարտիայի ու կառավարության որոշումների, մարքսիստական-լենինյան տեսության, արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ու գիտության ֆրոնտի աշխատողների առջև դրված ներկայիս խնդիրների, ընթացիկ հրատապ կամպանիաների, ժամանակակից միջազգային դրության ու այն բոլոր հարցերի մասին, որոնք հուզում են մեր հասարակությանը։

Դասախոսական պրոպագանդայի բնագավառում իր որոշակի անելիքն ունի Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ռեսպուբլիկական ընկերությունը։ Ինչ խոսք, որ ընկերությունը վերջին տարում զգալիորեն բարելավել է իր աշխատանքը։ Նա ռեսպուբլիկայի քաղաքներում, գյուղերում, ավաններում, արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովետական տնտեսություններում, ՆՏԿ-ներում ու ՄՏԿ-նե-

րում բազմաթիվ դասախոսություններ է կազմակերպել ժամանակակից ակ-
տուալ թեմաների շուրջը, օգնել է պարտիային աշխատավորների կոմունիս-
տական դաստիարակության, սոցիալիստական շինարարության խնդիրների
կատարման գործում։ Բայց դրա հետ մեկտեղ չի կարելի չնշել, որ ընկերու-
թյան անդամների շարքերում դեռևս կան առանձին մարդիկ, որոնք դասախո-
սությունները կարդում են վերացականորեն, կտրված կոմունիստական շինա-
րարության պրակտիկայից, տվյալ կոլեկտիվի առջև դրված խնդիրներից։
Նրանք շարադրում են միայն ընդհանուր դրույթներ, որոնք քիչ են օգնում
գործին և հետաքրքրություն չեն առաջացնում ունկնդիրների մեջ։
Պարտիական լուսավորության նոր ուսումնական տարվա հաջող նախա-
պատրաստումը, կոմունիստների, մեր բոլոր կադրերի մարքսիստական-լենին-
յան ուսուցման օրինակելի կազմակերպումը կախված է այն բանից, թե պար-
տիայի քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները ինչ-
պես են զբաղվում այդ աշխատանքով։ Փաստերը ցույց են տալիս, որ առան-
ձին պարտիական կոմիտեներ ու կազմակերպություններ պարտիական լուսա-
վորության գործով զբաղվում են մեկ ուսումնական տարվա սկզբին, մեկ էլ
ուսումնական տարվա վերջին, երբ անցկացվում են եզրափակիչ պարապ-
մունքներ։ Իրենց նիստերում ու ժողովներում տարվա ընթացքում երկու անգամ
քննության առնելով պարտիական լուսավորության հարցերը, նրանք ամեն
ինչ համարում են սպառված և ինֆորմացիա են ներկայացնում «կատարված»
աշխատանքի մասին։ Բանը, իհարկե, միայն նիստերի ու ժողովների քանակի
մեջ չէ։ Կարևորն այն է, որ պարտիական կոմիտեները և կազմակերպություն-
ները սիստեմատիկաբար խորամուխ լինեն պարապմունքների բուն էության
մեջ, հետաքրքրվեն նրանց գաղափարական կողմով, օգնեն պրոպագանդիստ-
ներին՝ ունկնդիրներին մարքսիզմ-լենինիզմով զինվելու, տեսական հարցերում
խորանալու, զարգացման ներկա շրջանի ակտուալ խնդիրներն ըմբռնելու և
դրանք պրակտիկայում հաջողությամբ լուծելու համար։ Բոլոր դեպքերում
հիմնականն ու գլխավորը պարտիական լուսավորության իդեական-քաղաքա-
կան բարձր մակարդակն է, տեսության ու պրակտիկայի սերտ կապը, որը և
պետք է դրված լինի պարտիական կազմակերպությունների ուշադրության
կենտրոնում։
Ուղեցույց ունենալով ՍՄԿՊ XX համագումարի, պարտիայի Կենտրոնա-
կան Կոմիտեի պլենումների պատմական որոշումները, ռեսպուբլիկայի պար-
տիական կազմակերպությունները պետք է ավելի բարելավեն պրոպագանդիս-
տական աշխատանքը և ավելի ուժեղացնեն կոմունիստների մարքսիստական-
լենինյան զինվածությունը։ Դրա լավագույն երաշխիքը պարտիական լուսա-
վորության նոր ուսումնական տարվա հաջող նախապատրաստումն ու անցկա-
ցումն է, որը մեր բոլոր պարտիական կազմակերպությունների կարևոր խըն-
դիրներից մեկն է։

---

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԱԿՏԻՎԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ՀԱՄԵՍՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԶՆՎՈՒԹՅԱՆ ՈԳՈՎ

## Վ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում վճռական դեր է կատարում կոմերիտական ակտիվը։ Կոմերիտական ակտիվ աշխատանքի ասպարեզ են իջել ու աճել հազարավոր երիտասարդներ։ Ամեն տարի կոմերիտմիության լավագույն ներկայացուցիչներ ընդունվում են Կոմունիստական պարտիայի շարքերը, իսկ մեծ թվով կոմերիտական աշխատողներ անցնում են պարտիական և սովետական աշխատանքի։

Փաստերը և թվերը կոմերիտական ակտիվի շարժման մասին պերճախոս կերպով վկայում են, որ տարեցտարի բարելավվում է կոմերիտական ակտիվի որակական կազմը, կոմերիտական աշխատանքի մեջ ընդգրկվում են նախաձեռնող, աշխատանքը սիրող երիտասարդ էնտուզիաստներ։

Այժմ ռեսպուբլիկայի 3282 սկզբնական կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներից բարձրագույն կրթություն ունեն 895 հոգի, միջնակարգ կրթություն՝ 1687, կոմունիստներ են՝ 539-ը։ Անշուշտ, կոմերիտական ակտիվի որակական կազմի բարելավման չափանիշը սոսկ կրթությունը լինել չի կարող։ Ամեն մի կոմերիտական աշխատողի, առավել ևս կոմերիտական ակտիվի հեղինակությունը չափվում է կոմերիտական կազմակերպության աշխատանքի արդյունքով, այն գործողություններով, որին նա ընդունակ է։ Կոմերիտական ակտիվը, որի ուսերին է հիմնականում ծանրացած կոմերիտական աշխատանքը, իրականում պետք է լինի այն շարժափոկը, որը միացնում է քաղկոմ-շրջկոմների հաստիքային ապարատը կոմերիտական մասսաների հետ, ապահովում է պարտիայի որոշումների և դիրեկտիվների կենսագործումը երիտասարդության շրջանում։

Մեծ ու պատվավոր է կոմերիտական ակտիվի դերը։ Բայց որքան պատասխանատու, այնքան էլ բարդ է նրա աշխատանքը։ Կոմերիտական ակտիվի ընտրության, տեղաբաշխման և ուսուցման ճիշտ կազմակերպումից է կախված կոմերիտական աշխատանքի հաջողությունը։

Մեկընդմիշտ փորձված և պրակտիկայում արդարացված է այն ձևը, որ ընտրությունը ճիշտ է այն դեպքում, երբ պատասխանատու կոմերիտական աշխատանքի են նշանակվում այնպիսի երիտասարդներ, որոնք անցել են կոմերիտական ակտիվի տարրական դպրոցը, եղել են դասարանային, բրիգադային, կուրսային, ցեխային բյուրոյի անդամներ, բարեխղճորեն կատարել են մի շարք հանձնարարություններ և համակրանք են վայելում այն կոլեկտիվում, որտեղ ապրում և աշխատում են նրանք։ Բայց ոչ բոլոր դեպքերում է, որ կիրառվում է այս սկզբունքը։ Այժմ կոմերիտական աշխատանքի բացասական կողմն այն է, որ կոմերիտական կադրեր ընտրելիս քիչ են ունկնդրում մաս-

սաների ձայնին, տեղական կազմակերպությունների ղեկավարներ առաջա-
դըրելիս վերադաս կոմերիտական օրգանները շատ անգամ հաշվի չեն առնում
ԼԿԵՄ անդամների կարծիքը։ Պարզ է, որ աշխատանքի այդ ոճը, ինչպես փաս-
տերն են ցույց տալիս, օգուտ չի բերում գործին։

Քիչ չեն այնպիսի փաստերը, երբ շրջկոմի քարտուղարը մասնակցում է
հաշվետու-ընտրական ժողովին նախապես կազմված շպարգալկայով (խոսքը
թեկնածուների առաջադրման մասին է), և եթե որևէ մեկի նկատմամբ լուրջ
առարկություններ են լինում, ապա նա իբրև թե սկզբունքայնության դիրքերից
պաշտպանում է շրջկոմի հեղինակությունը։ Մինչդեռ երկու տարի է, որ Մոլ-
դավիայի կոմերիտական կազմակերպություններում իրագործվում է առանց
ցուցակի թեկնածուներ առաջադրելու կարգը։ Մոլդավիայի կոմերիտական
քաղկոմ-շրջկոմների փորձը արժանի է ուշադրության և ուսումնասիրության։

Անցյալ հաշվետու-ընտրական կամպանիայի ժամանակ 3282 սկզբնական
կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներից զգալի մասը փոխ-
վել է։ Դրանցից շատերի նկատմամբ պարզապես վստահություն չի տածվել,
իսկ 150 հոգի ձախողվել են աշխատանքում անհրաժեշտ փորձ չունենալու
պատճառով։ Սկզբնական կազմակերպությունների քարտուղարների այսքան
մեծ փոփոխությունն ամենից առաջ կադրերի ոչ ճիշտ ընտրության հետևանք
է, կադրերի ընտրության լենինյան սկզբունքը չըմբռնելու հետևանք։

Կոմերիտական ակտիվը այն լաբորատորիան է, որը պետք է կադրեր
տա կոմերիտմիությանը, պարտիական և սովետական կազմակերպություննե-
րին, ժողովրդական տնտեսությանը և կուլտուրական շինարարության ֆրոն-
տին։

Թե ինչպիսի ծանր հետևանքների է հանգեցնում կադրերի սխալ ընտրու-
թյունը, կարելի է համոզվել Ազիզբեկովի շրջկոմի նախկին քարտուղարներ
Գ. Մնացականյանի և Կ. Հովհաննիսյանի օրինակով։ Այս ընկերները հաշտվել
էին թերությունների հետ, բռնել ինքնաթմբկահարման և դեմագոգիայի ուղին։
Իսկ Կ. Հովհաննիսյանը այն աստիճան էր կորցրել կոմերիտական աշխատո-
ղի, և ոչ միայն աշխատողի, այլև սովետական երիտասարդի կերպարանքը,
որ զբաղվում էր հարբեցողությամբ և աշխատանքային ժամերի հաշվին սե-
փական «Պոբեդա» մեքենայով սպեկուլյացիա էր անում՝ շիրմա դարձնելով
կոմերիտմիության շրջկոմը։

ՀամԼԿԵՄ XIII համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց կոմերիտական
կադրերի դաստիարակությանը և ընդգծեց անձնական օրինակի նշանակու-
թյունը երիտասարդության դաստիարակության գործում։ Կոմունիստական
պարտիան սովորեցնում է, որ մասսաների մեջ քաղաքական աշխատանքի հա-
ջողությունը մեծ չափով պայմանավորված է այն բանով, թե ինչպիսի մարդիկ
են նշանակվում նրանց հետ աշխատելու համար, արդյո՞ք նրանք օժտված
են այն հատկություններով ու արժանիքներով, որ մենք պետք է պատվաս-
տենք երիտասարդությանը։ Մեր կոմերիտական ակտիվի հիմնական մասը
ապահովում է վերոհիշյալ պայմանները և ընդունակ է երիտասարդության
վրա ներգործել նաև անձնական օրինակով։ Սակայն, ցավոք սրտի, մեր շար-
քերում դեռևս կան մարդիկ, որոնք համեստությամբ չեն օժտված, չունեն բա-
րոյական մաքրություն, զբաղվում են հարբեցողությամբ, քայքայում են իրենց
ընտանիքը, ոտնահարում պարտիական և պետական կարգապահությունը։
Այսպես, օրինակ, կոմերիտմիության Աղինի շրջկոմի նախկին հրահանգիչ Կ.



Զատիկյանը աշխատանքից հեռացվեց կենցաղային այլասերվածության հա-
մար։ ՀԼԿԵՄ Մարտունու շրջկոմի նախկին երկրորդ քարտուղար Վ. Մխիթար-
յանը դատապարտելի արարքներ էր կատարում և սիրային արկածներ որո-
նում, մինչև որ Երևանի միլիցիայի աշխատողների կողմից հայտաբերվեց
Սևան հյուրանոցում և պատասխանատվության կանչվեց։ Այս փաստերը խո-
սում են այն մասին, որ կոմերիտմիության մի շարք քաղկոմ-շրջկոմներ կադ-
րերի ընտրության և տեղաբաշխման գործում թույլ են տալիս կոպիտ սխալներ
և կամայականություն, հաշվի չեն առնում կոմերիտական ակտիվի կարծիքը
և հաճախ էլ մարդկանց ընտրում են միայն աշխատանքի տեղավորելու
համար։

Ժամանակն է հասկանալ այն ճշմարտությունը, որ կոմերիտական աշ-
խատողի բարոյական կերպարը վճռական ֆակտոր է, որ չի կարելի երիտա-
սարդության կոմունիստական դաստիարակության գործը վստահել այն մարդ-
կանց, որոնք խախտում են կոմունիստական բարոյականության նորմաները։

Կոմերիտական աշխատողների դաստիարակության գործում անգնահատե-
լի է համեստության դերը։ Կոմերիտական աշխատողը չպետք է արբենա հաջո-
ղություններից, մեծամտանա և սնապարծության մեջ ընկնի։ Կան բազմաթիվ
կոմերիտական աշխատողներ, որոնք համեստության և նվիրված աշխատանքի
լավագույն օրինակ են ցույց տալիս։ Նրանք գիտեն ինքնաքննադատորեն գնա-
հատել իրենց գործունեությունը, սովորել սեփական սխալների վրա, օգտա-
գործել և սեփականություն դարձնել ուրիշների դրական փորձը։ Այս առումով
մեր շարքերում համեստության տիպար է Երևանի 26 կոմիսարների շրջկոմի
քարտուղար Մ. Իշխանյանը, որը երկար տարիներ աշխատելով շրջանային
կոմիտեում, անցել է կյանքի լավագույն դպրոց, հասունացել ու դարձել է լավ
կոմերիտական աշխատող։ Ընկ. Իշխանյանը գիտե ունկնդրել ուրիշների ձայ-
նին։ Նա չի խուսափում աշխատանքի մեջ փոքրից, չի տառապում մասշտաբի
ցավով։ Ահա թե ինչու իր աշխատանքի երկար տարիների ընթացքում ընկ.
Իշխանյանը զերծ է մնացել կոմերիտական գործչի վարքագծի հետ անհամա-
տեղելի գոռոզամտությունից։ Ընկ. Իշխանյանի օրինակը եզակի չէ, կարելի
է հիշատակել նաև Շամշադինի շրջկոմի քարտուղար Մ. Գրիգորյանին, Կալի-
նինոյի շրջկոմի քարտուղար Կ. Ղազարյանին, Արտաշատի շրջկոմի քարտու-
ղար Մ. Ստեփանյանին, Սպիտակի շրջկոմի քարտուղար Գ. Պապյանյանին և
շատ ուրիշների, որոնք աչքի են ընկնում իրենց համեստությամբ և գործի-
մաց աշխատանքով։ Սակայն մենք ունենք կոմերիտական աշխատողներ,
որոնք, դժբախտաբար, զուրկ են այդ արժանիքներից։

Անհամեստության բնորոշ օրինակ է Աթարբեկյանգյուղինի կոմերիտական
կազմակերպության նախկին քարտուղար Աբրահամյանը, որին ՀԼԿԵՄ Կենտ-
կոմի բյուրոն աշխատանքից հեռացրեց՝ կոմերիտական աշխատանքները ձա-
խողելու, աչքակապության և խաբեբայության համար։ Վերջին մեկ տարվա ըն-
թացքում Աթարբեկյանգյուղինի կոմերիտական կազմակերպությունը փաստորեն
դադարել էր կազմակերպչորեն գոյություն ունենալուց։ 1956 թվականին ընդ-
հանուր ժողովներ չեն գումարվել, ձախողվել էին երիտասարդության շրջանում
տարվող քաղաքական-մասսայական աշխատանքները։ Երկու տարվա ընթաց-
քում կազմակերպությունն աճել էր 6 հոգով, այն դեպքում, երբ շինարարու-
թյան մեջ աշխատում էին 300 արտամիութենական երիտասարդներ։ Անգոր-
ծության էին մատնվել ցեխային կոմերիտական կազմակերպությունները։

*Ամիսներով կոմերիտականներից անդամավճար չէր գանձվում, կոպիտ կերպով խախտվում էր ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հրամանագիրը՝ անչափահասների աշխատանքի մասին։ ԼԿԵՄ կոմիտեն բացարձակապես ոչինչ չէր կատարում ՀԼԿԵՄ XIX և ՀամԼԿԵՄ XIII համագումարների որոշումների կենսագործման ուղղությամբ։ Պարտիական և կոմերիտական ու պետական կարգապահությունը խախտելու և մեծամտության համար աշխատանքից հեռացվեցին նաև Երևանի քաղկոմի նախկին առաջին քարտուղար Ս. Հոռոփյանը և «Պիոներ կանչ»-ի նախկին խմբագիր Ռ. Աբալյանը։*

*Մեծամտության փաստերի կարելի է հանդիպել նաև մեր երիտասարդական թերթերի խմբագրությունների որոշ աշխատողների մոտ։ Հաճախ «Ավանգարդ»-ում, «Կոմսոմոլեց»-ում տպագրվում են անճաշակ, ճղճղան, սենսացիա առաջացնող հոդվածներ և ակնարկներ։ Կյանքը ցույց է տալիս, որ այդ հոդվածների հեղինակներն իրականում երիտասարդությունից, ընդհանուր կյանքից կտրված մեծամիտ մարդիկ են, որոնք չխորհրդակցելով ոչ մեկի հետ, երիտասարդությանն են մատուցում ոչնչով չհիմնավորված դատողություններ, կարծիքներ։ «Կոմսոմոլեց» թերթի բաժնի վարիչ ընկ. Է. Կանանովան, որն իրեն համարում է լավ արվեստագետ, երաժշտագետ և ամեն ինչ, «Ստալինեց»-ում տպագրել էր՝ «Ում է ժպտում կյանքը» կինոնկարի մասին հոդված, որը բացարձակապես ոչինչ չէր ասում, բայց ըստ էության հայհոյանքի մի կույտ էր։ Այս հոդվածը բավականին վատ տպավորություն թողեց մեր կոմերիտական ակտիվի վրա։ Եվ այս ամենը, պաշտոնական գրախոսության կարգով, ներկայացվել է ՀԼԿԵՄ Կենտկոմի անունից, և այն էլ այն դեպքում, երբ այդ հոդվածը չէր արտահայտում կինոնկարի քննարկման ժամանակ Կենտկոմի պլենումի անդամների արտահայտած կարծիքը։ Կոմերիտական ակտիվի համար կարևոր է անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցումը, որը կոմերիտական աշխատողի մեջ պատվաստում է պարտիական և պետական կարգապահություն։ Հին սերունդը ռևոլյուցիայի նախապատրաստության տարիներին և հետագա շրջանում իր ամբողջ աշխատանքը կառուցում էր անձնական կյանքը ընդհանուր գործին զոհաբերելու սկզբունքով, դա բնական էր և թելադրված ժամանակի անհրաժեշտությամբ։ Նոր սերունդը, որպես անցյալի ռևոլյուցիոն տրադիցիաների ժառանգորդ, պետք է լիովին օգտագործի անցյալի լավագույն ժառանգությունը և փորձը։ Կազմակերպելով խելոք, նպատակալից կյանք, կոմերիտականը պետք է իր անձնականը միշտ ստորադասի հանրակեցության շահերին, հասարակական ընդհանուր բարեկեցությանը։*

*Կոմերիտական մարտունակ ակտիվ աճեցնելու փորձված մեթոդը կոմերիտական կազմակերպությունների ինքնագործունեության և նախաձեռնության զարգացումն է։ Հայտնի է, որ կոմերիտմիությունը, որպես քաղաքական-մասսայական երիտասարդական կազմակերպություն իր բնույթով ինքնագործ կազմակերպություն է։ Այդ նշանակում է, որ երիտասարդության կոմունիստական դաստիարակության հաջողությունը գլխավորապես պայմանավորված է այն բանով, թե ինչպիսի ակտիվություն և գործարար մասնակցություն կցուցաբերեն ՀամԼԿԵՄ անդամներն իրենց կազմակերպությունների կյանքում, ինչպիսի նախաձեռնություններով հանդես կգան՝ նպաստելու պարտիայի և կառավարության կողմից ժողովրդական տնտեսության առաջ դրված խնդիրների լուծմանը։*



*Երկար տարիներ կոմերիտական աշխատանքում արմատավորվել էին աշխատանքի այնպիսի արատավոր մեթոդներ, ինչպիսիք են՝ թղթամոլությունը, ղեկավարման գրասենյակային ձևը, վարչարարությունը, կոմերիտական աշխատանքը միմիայն հաստիքային ապարատի միջոցով իրականացնելու ձգտումը։ ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները նոր լայն ասպարեզ բացեցին կոմերիտական աշխատանքի հետագա բարելավման համար։ Այժմ կոմերիտական կազմակերպություններն ամենուր նախաձեռնություն են հանդես բերում տնտեսական, պետական, հասարակական տարբեր ասպարեզներում։ Միայն վերջին երկու տարում ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունը Երևանում և մի շարք շրջաններում երիտասարդության ուժերով երիտասարդական պալատներ կառուցելու, քաղաքները, գյուղերն ու ավանները կանաչապատելու, խճուղային ճանապարհներ անցկացնելու ձեռներեցություն է հանդես բերել և շեֆություն է վերցրել՝ մշակելու 10 հազար հեկտար եգիպտացորենի ցանքատարածություններ։ Այս նախաձեռնությունները խոսում են այն մասին, որ բարձրացել է սկզբնական կազմակերպությունների հեղինակությունը, ամրապնդվել ու բարելավվել է քաղկոմ-շրջկոմների կապը սկզբնական կազմակերպությունների հետ։*

*ՀամԼԿԵՄ VII պլենումի և Կենտկոմի 1958 թվականի օգոստոսի 28-ի որոշումները խնդիր դրեցին կոմերիտական աշխատանքը արմատապես վերակառուցելու նպատակով բեռնաթափել քաղկոմ-շրջկոմների հաստիքային ապարատները և կոմերիտական աշխատանքը կատարել գլխավորապես կոմերիտական ակտիվի միջոցով։ Սահմանվեց արտահաստիքային քարտուղարների ինստիտուտ, ստեղծվեցին քաղաքային և շրջանային կոմիտեներին կից կոմերիտական աշխատանքի հանձնաժողովներ, որոնցում ընդգրկվեցին արտադրության մեջ աշխատող երիտասարդ բանվորներ, կոլտնտեսականներ, ինժեներներ և այլն։ Կյանքը ցույց է տալիս ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման իրավացիությունը։*

*ՀԼԿԵՄ Լենինականի քաղկոմի, Երևան քաղաքի Ստալինյան, Սպիտակի, Շամշադինի շրջկոմների փորձը ցույց է տալիս, որ քաղկոմ-շրջկոմների կոմերիտական հանձնաժողովներն այն լծակներն են, որոնք օգնում են շրջանային կոմիտեներին՝ արագորեն և կոնկրետ լուծելու երիտասարդությանը հուզող հարցերը, արդյունավետ ձևով լուծելու նրա աշխատանքային, ֆիզիկական դաստիարակության խնդիրները։ Սպիտակի շրջանի գյուղատնտեսության առաջավոր փորձի տարածման և ընդհանրացման հանձնաժողովի նախագահ է ընտրված մասնագիտությամբ զոոտեխնիկ, շրջկոմի արտահաստիքային քարտուղար ընկ. Վ. Գալոյանը, որի նախաձեռնությամբ մասսայականացվում է շրջանում գյուղատնտեսության առաջավորների փորձը։ Վերջերս շրջկենտրոնի կուլտուրայի տանը կազմակերպվեց ցուցահանդես նվիրված երիտասարդ ճակընդեղագործների նվաճումներին, որը լայն կերպով արտացոլվեց շրջանային թերթում։ Բացի վերոհիշյալից հանձնաժողովը կազմակերպում է առաջավոր կոլտնտեսականների փոխայցելություն հարևան կոլտնտեսությունները, որտեղ կենդանի զրույցներ են կազմակերպվում աշխատանքի առաջավոր մեթոդների մասին։*

*Կարելի է նշել նաև Կրասնոսելսկի, Մարտունու ՀԼԿԵՄ շրջկոմների հանձնաժողովների դրական աշխատանքը գյուղատնտեսության մեջ երիտասարդ կոլտնտեսականների առաջավոր փորձի տարածման ուղղությամբ։*

Նշանակալից հաջողություններ է ձեռք բերել Ալավերդու շրջկոմի էսթե-
տիկական հանձնաժողովը, որը ղեկավարում է շրջկենտրոնի միջնակարգ դըպ-
րոցի ուսուցիչ Հ. Զաքարյանը: Վերջին 4—5 ամսվա ընթացքում շրջանում
կազմակերպվել են երիտասարդության էսթետիկական դաստիարակությանը
նպաստող մի շարք միջոցառումներ, որոնց հեղինակը և կազմակերպիչը էսթե-
տիկական հանձնաժողովն է: Այստեղ լուրջ ուշադրություն է դարձվում երի-
տասարդության գեղարվեստական ինքնագործունեության զարգացման հարցե-
րին, գրեթե բոլոր կոլտնտեսություններում գոյություն ունեն ինքնագործ
խմբեր:

Արտահաստիքային քարտուղարների և կոմերիտական աշխատանքի
հանձնաժողովների փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ ճիշտ են կոմ-
պլեկտավորվել հանձնաժողովները, արդյունքները գոհացուցիչ են: Սակայն
ոչ բոլոր տեղերում է այդպես: Օրինակ, մի շարք շրջկոմներում (Ազիզբեկով,
Ամասիա, Ղուկասյան) կոմերիտական աշխատանքի հանձնաժողովները մատ-
նըվել են անգործունեության:

Այժմ կոմերիտական հանձնաժողովներում ընդգրկված են ավելի քան
300 կոմերիտական ակտիվիստներ: Այս հանգամանքը պարտավորեցնում է
ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմներին մեծ ուշադրություն դարձնել հանձնաժողովների
աշխատանքներին, լրջորեն բարելավել հանձնաժողովների անդամների ուսուց-
ման գործը, հիշելով, որ այդ հանձնաժողովներն այն դպրոցն են, ուր կոմե-
րիտական ակտիվիստը ձեռք բերելով անհրաժեշտ գիտելիքներ ու փորձ,
պետք է աճի ու դառնա ղեկավար պատասխանատու աշխատող:

Մի շարք ԼԿԵՄ շրջկոմներ դեռևս անհրաժեշտ եզրակացություն չեն արել
ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումից և շարունակում են պահպանողականություն
հանդես բերել. կոմերիտական կազմակերպությունների ինքնագործունեության
զարգացման ուղղությամբ: Ինքնագործունեությունը կոմերիտական աշխա-
տանքի հիմնական մեթոդն է, այն պետք է նպաստի ՀամԼԿԵՄ անդամների
ակտիվության բարձրացմանը, պայմաններ ստեղծի ներկոմերիտական դեմո-
կրատիայի ծավալման համար: Որոշ սկզբնական կազմակերպություններ այս
սկզբունքը հասկացել են յուրովի: Կալինինոյի շրջանի Բլագոդարնոյե գյու-
ղի կոլտնտեսային կոմերիտական կազմակերպության վերջին հաշվետու-ընտ-
րական ժողովից հետո նորընտիր կոմիտեի առաջին նիստում քարտուղար
են ընտրում վիճակահանելով: Վիճակ է ընկնում Ա. Դավոյանին, որը ձախո-
ղում է կոմերիտական աշխատանքը և շրջկոմի կողմից հեռացվում աշխա-
տանքից:

Կոմերիտական սկզբնական կազմակերպություններում աշխատող կոմե-
րիտական ակտիվի մեջ ինքնուրույնությունն այն աստիճանի պետք է բարձ-
րանա, որ նրանք ազատվեն ավելորդ խնամակալությունից, չսպասեն վերևից
եկող պարտադիր ցուցումներին, նախաձեռնություն և ձեռներեցություն հան-
դես բերեն կոլտնտեսության, սովետական տնտեսության, գործարանի առջև
կանգնած խնդիրների լուծման գործում:

Տարիներ շարունակ խոսվում է կուլտ-լուսավորական օբյեկտների (ա-
կումբների, կուլտուրայի պալատների) աշխատանքների բարելավման մա-
սին: Ժամանակը չէ՞ արդյոք, որպեսզի գյուղերում, գործարաններում, քաղաք-
ներում ակումբների աշխատանքը վերակազմվի հասարակական սկզբունքների
հիմքի վրա: Ժողովրդա-դեմոկրատական մի քանի երկրներում կիրառվում է



այդ միջոցառումը: Ակումբների, կուլտուրայի տների հասարակական սկզ-
բունքը կնպաստի երիտասարդության ինքնագործունեության և նախաձեռ-
նության զարգացմանը, կբարձրացնի տեղական կազմակերպությունների պա-
տասխանատվությունը գյուղում տարվող կուլտուր-լուսավորական աշխա-
տանքների նկատմամբ:

ՀամԼԿԵՄ XIII համագումարը պահանջեց կոմերիտական կազմակերպու-
թյուններից՝ արմատապես վերակառուցել աշխատանքը կոմերիտական ակտի-
վի հետ, ուժեղացնել կոմերիտական կադրերի կողմից մարքս-լենինյան թեո-
րիայի ուսումնասիրությունը, բարելավել ակտիվի տնտեսագիտական ուսու-
ցումը, հրաժարվել սեմինարների շաբլոն, միօրինակ ձևերից, ուսուցման մեջ
արմատավորել այնպիսի ձևեր ու մեթոդներ, ինչպիսիք են՝ ճամբարային հա-
վաքները, տեսական կոնֆերանսները, գյուղատնտեսության և արդյունաբե-
րության կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրությունը, ակտիվի դպրոցը և
այլն:

Ուշադրության են արժանի կոլտնտեսային կոմերիտական կազմակերպու-
թյունների քարտուղարների համար կազմակերպված փնջային սեմինարները,
որտեղ զեկուցումներով հանդես եկան ԼԿԵՄ շրջկոմների քարտուղարները,
առանձին կոմերիտական ակտիվիստներ պատմեցին իրենց փորձի մասին:

Կասկածից դուրս է, որ ՀԼԿԵՄ Երևանի կազմակերպության Լենինյան
շրջանի կոմերիտական ակտիվի դպրոցը ուսուցման նպատակահարմար և
էֆեկտիվ ձևերից մեկն է, որը պետք է դարձնել մեր բոլոր կազմակերպու-
թյունների սեփականությունը:

Սակայն մեր աշխատանքներում դեռևս գոյություն ունեն լուրջ թերու-
թյուններ: Առանձնապես վատ է դրված կոմերիտական ակտիվի կողմից
մարքս-լենինյան թեորիայի ուսումնասիրության գործը: Խոսքը վերաբերում է
ՀԼԿԵՄ քաղաքային և շրջանային կոմիտեների ապարատների պատասխանա-
տու աշխատողներին: Պետք է համբերատար և սիստեմատիկ աշխատանք տա-
նել կոմերիտական ակտիվի հետ՝ արդյունաբերության և գյուղատնտեսության
էկոնոմիկայի ուսումնասիրության ուղղությամբ: Կոլտնտեսություններում,
գործարաններում անցած ուսումնական տարում գործել են կոնկրետ էկոնոմի-
կայի ուսումնասիրող 154 խմբակ, որտեղ ընդգրկված են եղել մոտ 5000 կո-
մերիտականներ և երիտասարդներ: ՀԼԿԵՄ Լենինականի, Կիրովականի քա-
ղաքային և Երևան քաղաքի Ստալինյան, 26 կոմիսարների անվան շրջանային
կոմիտեները դրական աշխատանք են կատարել կոմերիտական ակտիվի կող-
մից կոնկրետ էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրության ուղղությամբ: Վերը
բերած թվերը չի կարելի բավարար համարել, որովհետև կոմերիտական ակ-
տիվից ոմանք դուրս են մնացել տեսական ուսուցումից: Առաջիկա ուսում-
նական տարվանից բոլոր քաղկոմ-շրջկոմներին կից պետք է կազմակերպել
արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնա-
սիրող միամյա կամ երկամյա դպրոցներ:

Ռեսպուբլիկայի կոմերիտական ակտիվի, քաղաքային և շրջանային կո-
միտեների կարևորագույն խնդիրն է՝ արմատապես վերակառուցել աղջիկ
երիտասարդության հետ տարվող աշխատանքը: Այդ ուղղությամբ որոշ քայլեր
արդեն արված են: Բավական է ասել, որ այժմ ռեսպուբլիկայի կոմերիտա-
կանների ընդհանուր թվի 42,9 տոկոսը աղջիկներ են: Սակայն ամբողջությամբ
վերցրած կոմերիտմիության աշխատանքը այս բնագավառում հեռու է բավա-

բար լինելուց։ Քաղկոմ-շրջկոմներն անհասկանալի պատճառներով երկյուղ են հանդես բերում աղջիկ կադրերի պատրաստման և առաջքաշման գործում։ Նրանք անցյալից եկած այն կարծիքին են, որ աղջիկներն ընդունակ են միայն հաշվառման գործը վարելու, որ հրահանգչական աշխատանքը, շրջկոմի առաջին քարտուղար լինելը միմիայն տղամարդու գործ է։ Մինչդեռ փաստերը ցույց են տալիս, որ այդպիսի ընկերները խորապես սխալվում են։ Այդպիսի ընկերների սխալ կարծիքը հերքվում է Արտաշատի շրջկոմի նախկին քարտուղար Մ. Դավթյանի, Շամշադինի շրջանի արտահաստիքային քարտուղար Հ. Միրզոյանի, Կիրովականի քաղկոմի քարտուղար Մ. Մանուկյանի և Աղինի շրջկոմի քարտուղար Լ. Մկրտչյանի արդյունավետ աշխատանքով։

Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ պատշաճ ուշադրություն է նվիրվում աղջիկ երիտասարդությանը, այնտեղ կոմերիտական աշխատանքում բարձրանում է նրանց դերը։ Ամեն անգամ կոմերիտական ժողովների ու կոնֆերանսների ժամանակ Ապարանի շրջկոմին քննադատում էին այն բանի համար, որ անբավարար աշխատանք է տանում աղջիկ երիտասարդության շրջանում։ Դա պատահական չէր։ Շրջանի աղջիկ երիտասարդության մեծ մասի մոտ ցածր էր ակտիվությունը, նրանք չէին հաճախում ակումբ, խուսափում էին ինքնագործ խմբերին և սպորտային պարապմունքներին մասնակցելուց։ Հաշվի առնելով այդ վիճակը՝ ԼԿԵՄ շրջկոմը այս տարվա մարտ ամսին անցկացրեց աղջիկ երիտասարդների շրջանային հավաք, որը որոշում ընդունեց կազմակերպել աղջիկների ակումբ։ Ակումբի համար հատկացվեց առանձին շենք, կահավորվեց անհրաժեշտ գույքով։ Այժմ այնտեղ գործում են կար ու ձևի, երգի, երաժշտության, գրական-գեղարվեստական, տնտեսավարության և խոհարարության, ֆիզկուլտուրայի և սպորտի խմբակներ։ Շատ ժամանակ չի անցել, սակայն այս միջոցառումը զգալի չափով բարձրացրել է աղջիկների ակտիվությունն ու հետաքրքրությունը դեպի կոմերիտական կյանքը, դեպի հասարակական աշխատանքը։ Ապարանցիների օրինակով աղջիկների ակումբ է ստեղծվել նաև Շամշադինում։ Այս հիանալի նախաձեռնությանը պետք է հետևեն բոլոր կոմերիտական կազմակերպությունները։

Մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ հաղթականորեն կառուցում է կոմունիստական հասարակարգ։ Կոմունիզմը՝ աշխատավոր մարդկության նվիրական ձգտումը, մոտ ապագայում կդառնա իրականություն։ Կոմերիտական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ երիտասարդության մեջ համբերատարությամբ դաստիարակել կոմունիստական վերաբերմունք դեպի հասարակական և պետական սեփականությունը, ստեղծել այնպիսի պայմաններ, որպեսզի յուրաքանչյուր երիտասարդ իր ամենօրյա գործունեությամբ լուծի ընդհանուր հասարակական գործի այս կամ այն մասը. թեկուզ ամենափոքրը, թեկուզ ամենահասարակը։

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՇԵՇՏԱԿԻ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

ՅՈՒ. ՌԻՋԱԵՎ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը նշեց մեր երկրի գյուղատնտեսության հետագա բուռն վերելքի պատմական ծրագիրը։ ՍՄԿՊ Կենտկոմը հետևողականորեն կենսագործելով համագումարի առաջադրած խնդիրները, վերջին տարիներս մի շարք խոշոր միջոցառումներ ձեռնարկեց սոցիալիստական գյուղատնտեսության անսպառ հնարավորություններն արդյունավետ օգտագործելու, երկրի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները տնտեսապես ու կազմակերպորեն էլ ավելի ամրապնդելու, ՍՍՌՄ-ում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։

Այս միջոցառումների անշեղ կենսագործումն այժմ գյուղական յուրաքանչյուր պարտիական կազմակերպության անհետաձգելի խնդիրն է։ Դրանից էլ ելնելով Կրասնոսելսկի շրջանի պարտիական կազմակերպությունները գործնական պայքար են ծավալել իրականացնելու ՍՄԿՊ XX համագումարի որոշումները և ակտիվ կերպով մասնակցելու բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի առաջադրած խնդրի լուծմանը։

Կրասնոսելսկի շրջանը հիմնականում գյուղատնտեսական շրջան է։ Նրա հողակլիմայական պայմանները և առկա հնարավորությունները ցույց են տալիս, որ շրջանում լայն հեռանկարներ կան անասնաբուծությունը, ծխախոտագործությունն ու կարտոֆիլի մշակությունը զարգացնելու համար։ Ելնելով դրանից էլ շրջանի պարտիական կազմակերպություններն ու սովետական օրգանները, կոլտնտեսությունների վարչությունները աշխատավորության բոլոր ջանքերն ուղղել են շրջանի գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու, բնակչության նյութական ու կուլտուրական բարեկեցությունը բարձրացնելու նպատակին։

Շրջանի պարտիական կազմակերպությունները գիտակցում են, որ կոլտնտեսային էկոնոմիկայի զարգացման գործում մեծ նշանակություն ունի կոլտնտեսություններում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը։ Բնակչության հետ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի գլխավոր նպատակն է մոբիլիզացնել կոլտնտեսային գյուղացիության բոլոր ուժերը՝ տնտեսության այդ բնագավառն առաջ մղելու համար։ Արդեն որոշ քայլեր են կատարված անասունների գլխաքանակն ավելացնելու և ցեղը բարելավելու, կաթի արտադրանքն ավելացնելու ուղղությամբ։

Այս տարվա սկզբներին շրջանը պարտավորություն վերցրեց 1957 թվականի համեմատությամբ 1958 թվականին խոշոր եղջերավոր անասունների

քանակն ավելացնել 1000 գլխով (այդ թվում կովերինը՝ 300 գլխով), ոչխարները՝ 5000 գլխով, խոզերը՝ 600 գլխով (որից մայր խոզեր 200 գլուխ), յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելացնել մոտ 200 կիլոգրամով, իսկ կաթի համախառն արտադրանքը՝ 7000 ցենտներով: Բրդի արտադրանքը անցյալ տարվա համեմատությամբ ավելանալու է 160 ցենտներով: Ծխախոտագործության բնագավառում շրջանը պարտավորվեց այս տարի հեկտարից ստանալ 12 ցենտներ բերք, անցյալ տարվա 6,5 ցենտների դիմաց:

Պետք է նշել, որ սկզբնական պարտիական կազմակերպությունները սոցիալիստական պարտավորությունների ընդունման գործում հանդես են եկել որպես այդ գործի իսկական կազմակերպիչներ: Մինչև պարտավորությունների ստանձնումը պարտիական կազմակերպություններն ուսումնասիրել և ի հայտ են բերել ամբողջ շրջանում, ինչպես նաև յուրաքանչյուր կոլտնտեսությունում եղած առկա հնարավորությունները, որի շնորհիվ էլ մեր վերցրած սոցիալիստական պարտավորությունները ռեալ են:

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու և վերցրած պարտավորությունները պատվով կատարելու հարցը հենց տարվա սկզբից եղել է պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Աշխատանքի կարևորագույն բնագավառները գործիմաց և բարեխիղճ կադրերով ապահովելու, աշխատանքի պրոգրեսիվ մեթոդներ կիրառելու շնորհիվ, ինչպես նախնական տվյալներն են ցույց տալիս, Կրասնոսելսկն արդեն որոշակի հաջողությունների է հասել պարտիայի առաջադրանքները կատարելու գործում:

ՀԿՊ Կրասնոսելսկի շրջկոմի բյուրոյի որոշմամբ 47 կոմունիստ և 69 կոմերիտական, իսկ աշխատավորների դեպուտատների գյուղական Սովետների որոշմամբ մոտ 22 դեպուտատ ուղարկվեցին անասնապահության բնագավառ՝ մշտական աշխատանքի: Պարտիայի շրջանային կոմիտեի երաշխավորությամբ Չայքենդի, Օրջոնիկիձեի, Բաշքենդի կոլտնտեսություններում ընտրվեցին նոր նախագահներ (Ջ. Ալիև, Օ. Ասրեսյան և Հ. Ղալեչյան), որոնք կոլտնտեսային արտադրությունը ղեկավարելու հմտություն և կազմակերպչական ջիղ ունեն: Կրասնոսելսկի, Յանղփայայի, Գյոլքենդի, Թթուջրի կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաների վարիչներ և զոոտեխնիկներ նշանակվեցին բարձրագույն կրթությամբ մասնագետներ:

Անասնաբուծության շեշտակի վերելքն ապահովելու գործում վճռական նշանակություն ունի կերի կայուն բազայի ստեղծումը: Այդ նպատակով էլ շրջանի կոլտնտեսությունները ձեռնամուխ են եղել այդ կարևոր գործին: Միայն այս տարի ընդարձակվել են 240 հեկտարով միամյա, 130 հեկտարով բազմամյա խոտերի և 230 հեկտարով սիլոսային կուլտուրաների ցանքերի տարածությունը:

Անասնաբուծության բնագավառում նոր աշխատանքի անցած ընկերները գործնական քայլերի դիմեցին վճռական բեկում ստեղծելու համար: Անցյալում Թթուջրի կովաբուծական ֆերման ետ մնացողների շարքին էր դասվում: Այդ հետևանք էր նրա, որ մութային շրջանում անասուններին կերակրում էին երկու անգամ, չէր պահպանվում ջրելու ռեժիմը, խախտվում էին զոոտեխնիկական կանոնները: Ֆերմայում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը օրական 6 կիլոգրամից չէր անցնում: Այժմ այդ ֆերմայի վարիչն է անասնաբույժ Մ. Գրիգորյանը: Նրա ջանասեր և բարեխիղճ աշխատանքի շնորհիվ



գործերը ֆերմայում լավ են ընթանում: Բարձրացել է կարգապահությունն ու պատասխանատվությունն անասնապահների մեջ, որոնք պահպանելով զոոտեխնիկական կանոնները, ժամանակին խնամում, կերակրում ու ջրում են անասուններին, որի շնորհիվ յուրաքանչյուր կովից ստացվում է 11 կիլոգրամ կաթ: Ներկայումս Թթուջրի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայից շատ շատերն են օրինակ վերցնում:

Պարտիական կազմակերպություններն ամենից առաջ ապահովել են պարտիական-քաղաքական աշխատանքի ճիշտ կազմակերպումը և աշխատանքային կարգապահության ամրապնդման գործը անասնապահների շրջանում: Ահա այս բոլորի շնորհիվ է, որ անասնաբուծության բնագավառում ընթացիկ տարվա անցած ութ ամիսներում շրջանը հետևյալ ցուցանիշն ունի: Շրջանի կոլտնտեսությունները 1958 թվականի համար նախատեսված անասունների գլխաքանակի աճի պլանը կատարել են խոշոր եղջերավորներինը՝ 100 տոկոսով, մանր եղջերավորներինը՝ 118 տոկոսով, խոզերինը՝ 141 տոկոսով: Մինչև սեպտեմբերի 1-ը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել է 166 կիլոգրամով ավելի կաթ, քան անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում: Միջին հաշվով յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասել է 1265 կիլոգրամի: Շրջանում կաթի համախառն արտադրանքն անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 5584 ցենտներով:

Շրջանի կոլտնտեսությունները հաջողությամբ են կատարում իրենց ստանձնած պարտավորությունները: Անցած ութ ամիսների ընթացքում կաթի արտադրության տարեկան պլանը շրջանում կատարված է 90 տոկոսով, իսկ պարտավորությանը՝ 84 տոկոսով: Անցած այս ամիսների ընթացքում շրջանի կոլտնտեսությունները տվել են 29.089 ցենտներ կաթ, այսինքն 2116 ցենտներով ավելի, քան ստացվել էր ամբողջ 1957 թվականին:

Բազմաթիվ կոլտնտեսուհիներ՝ Ս. Զեյնալովան, Զ. Իսմայիլովան (Արդանիշի կոլտնտեսությունից), Գ. Ռահիմովան, Դ. Սանդիկովան (Շորժայի կոլտնտեսությունից) և շատ ուրիշներ իրենց խնամած յուրաքանչյուր կովից արդեն ստացել են 1650—2060 լիտր կաթ: Կաթնատվության բարձրացման գործում զգալի հաջողություններ են ձեռք բերել նաև Թոխլուջայի սովետական տնտեսությունում: Այստեղ յուրաքանչյուր կովի կաթնատվությունը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 213 կիլոգրամով, իսկ համախառն արտադրանքը՝ 676 ցենտներով: Սովետական տնտեսության անասնապահներից Զ. Քյարիմովան, Ս. Հասանովան յոթ ամսվա ընթացքում կատարել են կաթի արտադրության իրենց տարեկան պարտավորությունները:

Շրջանի կոլտնտեսությունները ամբողջ տարվա համար պլանավորված 14130 ցենտների փոխարեն մինչև սեպտեմբերի մեկը պետությանը վաճառել են 15200 ցենտներ կաթ և պարտավորվել են մինչև տարվա վերջը պլանից ավելի վաճառել 2000 ցենտներ: 1958 թվականին կաթի արտադրության գործերն ավելի հաջող է գնում առաջավոր կոլտնտեսություններում, ուր աշխատանքն ավելի լավ է կազմակերպված և որի մասին է խոսում հաջորդ էջում բերված աղյուսակը:

Այդ աղյուսակից երևում է, որ այն ժամանակ, երբ շրջանում միջին յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելացել է 166 կիլոգրամով, Ջիլի կոլտնտեսությունում այդ աճը հասնում է 382 կիլոգրամի, Թթուջրի կոլտն-

*տեսությունում՝ 303 կիլոգրամի, Գյուլքենդի կոլտնտեսությունում՝ 276 կիլոգրամի։ Եթե շրջանի բոլոր կոլտնտեսություններում գործը այնպիսի հաջողությամբ գնար, ինչպիսի հաջողությամբ առաջ են տանում աղյուսակում նշված կոլտնտեսությունները, ապա կաթի արտադրանքը շրջանում մոտ 3000 ցենտներով ավելի կլիներ, քան ներկայումս է։*

### Կաթնատվության աճը մի քանի կոլտնտեսություններում

| Կոլտնտեսության անունը | Առ 1/9 1957 թ. յուրաքանչյուր կովից (կիլոգրամով) | Առ 1/9 1958 թ. յուրաքանչյուր կովից (կիլոգրամով) | Կաթի արտադրութ. առ 1/9 1957 թ. (ցենտներով) | Կաթի արտադրութ. առ 1/9 1958 թ. (ցենտներով) |
|---|---|---|---|---|
| 1. Ձիլ | 968 | 1350 | 784 | 1282 |
| 2. Թթուջուր | 1038 | 1341 | 1598 | 2158 |
| 3. Գյուլքենդ | 1013 | 1289 | 1601 | 2384 |
| 4. Կրասնոսելսկ | 1167 | 1338 | 2953 | 3907 |
| 5. Նոր Բաշգյուղ | 760 | 1039 | 1148 | 1580 |

*Պետք է նշել, որ կաթի արտադրությունն ավելացնելու գործում մենք դեռևս ունենք շատ թերություններ։ Հատկապես աններելի է այն փաստը, որ միևնույն հողակլիմայական պայմանների առկայության դեպքում մի քանի կոլտնտեսությունների արտադրանքը տարբեր չափերի է հասնում։ Օրինակ, Վերին և Ներքին Ճամբարակ գյուղերը ընդամենը 500 մետր տարածությամբ են բաժանվում իրարից։ Նրանց խոտադաշտերն ու արոտավայրերը կարելի է ասել, որ միասին են. այստեղ կովերի ցեղն էլ նույնն է։ Բայց Վ. Ճամբարակում մինչև սեպտեմբերի 1-ը յուրաքանչյուր կովից ստացվել է 1582 կիլոգրամ կաթ, իսկ Ներքին Ճամբարակում ընդամենը 1127 կիլոգրամ։ Սրա պատճառն այն է, որ Ն. Ճամբարակի կոլտնտեսությունում (նախագահ ընկ. Հ. Հայրապետյան, պարտկազմակերպության քարտուղար և կովաբուծական ֆերմայի վարիչ ընկ. Հ. Բաբայան) լավ չէր կազմակերպված անասունների մսուրային շրջանի խնամքը։ Այստեղ սիլոսի որակը շատ ցածր էր, կովերը չէին ջրվում գոմերում, նրանց խնամքը միանգամայն վատ էր։ Արդյունքը եղավ այն, որ մսուրային շրջանում յուրաքանչյուր կովից 320 կիլոգրամից էլ քիչ կաթ ստացվեց՝ Վ. Ճամբարակցիների համեմատությամբ։ Նույնը կարելի է ասել Ղարաղայա և այլ կոլտնտեսությունների մասին։*

*Մինչև վերջին ժամանակներս էլ Կրասնոսելսկում խոզաբուծության զարգացմանը անհրաժեշտ ուշադրություն չէր հատկացվում։ Այժմ պարտիական կազմակերպությունների, սովետական օրգանների ու կոլտնտեսությունների վարչությունների ձեռք առած միջոցների շնորհիվ զգալիորեն բարելավվել է վիճակը անասնաբուծության այդ ճյուղում։ Շրջանի 11 կոլտնտեսություններում կազմակերպվել են խոզաբուծական ֆերմաներ, կարճ ժամանակում խոզերի մայրական կազմն ավելացավ 2,5 անգամ։ Գյուլքենդի կոլտնտեսության խոզաբուծական ֆերմայի աշխատող Ս. Հարությունյանը իր խնամած յուրաքանչյուր մայր խոզից այս տարվա ընթացքում արդեն ստացել է 12 խոճկոր։ Եթե անցյալ տարի շրջանի կոլտնտեսությունները պետությանը հանձնել էին ընդամենը 125 ցենտներ խոզի միս, ապա այս տարվա 8 ամսվա ընթացքում արդեն հանձնվել է 340 ցենտներ խոզի միս։*

*Զգալի են նախնական հաջողությունները ոչխարաբուծության բնագավառում։ Նվազել է մատղաշների անկումը։ Առաջին խուզի ժամանակ (անցյալ*



*տարվա համեմատությամբ) ամեն մի ոչխարից 260 գրամ ավելի բուրդ է ստացվել, կամ ընդհանուր առմամբ անցյալ տարվա համեմատությամբ 107 ցենտներ ավելի։ Բրդի արտադրության գործում առաջ են ընթանում Շորժայի, Օրջոնիկիձեի, Աղբուլաղի կոլտնտեսությունների ոչխարաբուծական ֆերմաները։ Նշված կոլտնտեսություններում գարնան խուզին յուրաքանչյուր ոչխարից ստացել են 2,5 կիլոգրամ բուրդ։*

*Անասնաբուծության զարգացման և, հատկապես կաթի արտադրության բնագավառում ձեռք բերած նախնական հաջողությունները չեն հանգստացնում Կրասնոսելսկի շրջանի աշխատավորներին, որովհետև շրջանում կան ռեալ հնարավորություններ յուրաքանչյուր կովի կաթնատվությունը մոտակա տարիներին հասցնելու 1700 կիլոգրամի, իսկ հետագայում է՛լ ավելի բարձրացնելու։*

*Շրջանում դեռևս շատ ցած է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածությանն ընկնող կովերի և մյուս անասունների գլխաքանակը։ Այժմ գործնական միջոցներ են ձեռնարկված, որպեսզի առաջիկա տարիներին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվին կովերի գլխաքանակը հասցվի 13-ի, իսկ ոչխարներինը՝ 160—170-ի։ Անասունների գլխաքանակի աճը, մանավանդ սեփական հոտի վերարտադրության հաշվին, ապահովելու համար կարևոր նշանակություն ունեն ստերջության վերացումը, անասունների համար ժամանակակից գոմեր կառուցելը և անասունները կերով ապահովելու հարցը։*

*Մինչև վերջին ժամանակներս էլ Կրասնոսելսկում անտեսված էր անասունների արհեստական բեղմնավորման հարցը։ Այս տարի նախատեսված է ձեռք բերել 100 գլուխ խոյ և, կիրառելով արհեստական բեղմնավորում, ծնի կամպանիան ավարտել ոչ ուշ, քան փետրվար ամսին։ Փորձը ցույց է տալիս, որ հոկտեմբերից հետո ոչխարների բեղմնավորումը, մանավանդ լեռնային շրջաններում, դրական արդյունք չի տալիս։ Հայտնի է, որ ապրիլ ամսին ծնված գառները հաճախ հիվանդանում են և կորուստը շատ է լինում։ Կրասնոսելսկի շրջանի կոլտնտեսությունների մեծամասնությունը որոշել են ոչխարների ծնի ժամանակը փոխել և հնարավորին չափով ապահովել ոչխարների տարեկան երկու ծին։*

*Հանրային հոտը կերով ապահովելու նպատակով արդեն կուտակված է 1200 տոննա խոտ, յուրաքանչյուր կովի համար պատրաստված է 7 տոննա սիլոս։ Բացի դրանից նախատեսված է յուրաքանչյուր կովի համար առանձնացնել 1200 կիլոգրամ կերի ճակնդեղ, 600 կիլոգրամ կարտոֆիլ։ Բոլոր նախադրյալները կան սա ևս հաջողությամբ կատարելու համար։*

*Կրասնոսելսկում մշակվող գյուղատնտեսական կուլտուրաների մեջ առաջատար նշանակություն ունի նաև ծխախոտագործությունը, որը կոլտնտեսությունների դրամական եկամտի ավելացման, նրանց տնտեսապես ամրապնդման, ինչպես նաև կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը բարելավելու համար խոշոր դեր է խաղում։ Շրջանի բնակլիմայական պայմաններն էլ բարենպաստ են ծխախոտագործությունից բարձր բերք ստանալու համար։ Սակայն, պետք է նշել, որ շրջանում անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում այդ արժեքավոր կուլտուրայի մշակությանը։ Հենց այդ է պատճառը, որ շրջանում մշակվող 380 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի ստացվեց միայն 6 ցենտներ բերք։ Բաշքենդի*

կոլտնտեսությունը 100 հեկտարից ստացավ ընդամենը 28 ցենտներ, Գյոլքենդի կոլտնտեսությունը 30 հեկտարից՝ 138 ցենտներ ծխախոտ։ Ղարաղայայի կոլտնտեսությունում մեկ հեկտար ծխախոտի ցանքի մշակության համար ծախսվել է 790 աշխօր, բերք է ստացվել միայն 320 կիլոգրամ։ Ջայքենդի կոլտնտեսությունում մեկ հեկտարին ծախսվել է 760 աշխօր, ստացվել է 314 կիլոգրամ բերք և այլն։ Եթե Բասարգեչարի շրջանում ծխախոտի մեկ ցենտների ինքնարժեքը կազմում է 770 ռ., ապա Կրասնոսելսկում դա հասնում է 1566 ռ.։ Բասարգեչարում յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 18 հազար ռուբլու եկամուտ, իսկ Կրասնոսելսկում 5 հազար ռուբլուց չի անցնում։

Այս դրությունից դուրս գալու համար պարտիայի շրջանային կոմիտեն խորհրդակցություններ հրավիրեց բոլոր ծխախոտագործական գյուղերում և նշեց նոր միջոցառումներ։ Մշակվեց ծխախոտագործների վարձատրման նոր կարգ, որի համաձայն կոլտնտեսականներն իրենց աշխօրերի համար վարձատրվում են ըստ հեկտարից ստացած բերքի։

Ձեռնարկված այս միջոցառումները տվել են իրենց արդյունքները։ Կոլտնտեսություններն այժմ աճեցրել են ծխախոտի առատ բերք։ Շրջանի կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները պայքարում են 388 հեկտար ծխախոտի տարածությունից ստանալ առնվազն 4900 ցենտներ բերք, որի շնորհիվ անցյալ տարվա երկու միլիոն ռուբլու փոխարեն այս տարի ծխախոտագործությունից կստացվի վեց միլիոն ռուբլու եկամուտ։ Շրջանում ուժեղ թափով առաջ է գնում ծխախոտի տերևաքաղը և օրեկան հավաքվում է 85—90 հազար թելամետր ծխախոտ։ Այս գործում լավագույն ցուցանիշների են հասել Բաշքենդի, Ջայքենդի, Գյոլքենդի, Նոր Բաշգյուղի, Մարտունու, Թթուջրի, Ն. Ճամբարակի, Ղարաղայայի, Աղբուլաղի և Օրջոնիկիձեի կոլտնտեսությունները։

Շրջանում կառուցվել և շահագործման է հանձնվել 30 աչք նոր չորանոց։ Վերանորոգված են բոլոր հին չորանոցները, պատրաստվել են 1080 չորանոցային նոր շրջանակներ։ Բաշքենդի կոլտնտեսությունը պարտավորվել է յուրաքանչյուր հեկտարից ստանալ 20 ցենտներ ծխախոտ, Ջայքենդինը՝ 21, Գյոլքենդինը՝ 18, Աղբուլաղինը՝ 16, Ղարաղայայինը՝ 17 ցենտներ։ Նրանք հաջողությամբ են կատարում այդ պարտավորությունները։ Այս կոլտնտեսություններում ամեն մի ծխախոտագործ օրական շարում է 130—160 թելամետր ծխախոտ։

Առ 1-ը սեպտեմբերի դրությամբ ծխախոտի տերևաքաղի պլանը շրջանը կատարել է 50 տոկոսով, իսկ Նոր Բաշգյուղի, Ջայքենդի, Ն. Ճամբարակի և Թթուջրի կոլտնտեսությունները արդեն կատարել են տերևաքաղի տարեկան պլանը։ Սակայն ծխախոտագործության բնագավառում շրջանում դեռևս կան զգալի թերություններ։ Ծխախոտի չորացման աշխատանքները կապված են մեծ դժվարությունների հետ. Կրասնոսելսկում տեղումները շատ են և խոնավությունը բարձր է, իսկ չորանոցների կառուցման աշխատանքները ձըգձըգվում են։ Պահանջվող 380-ի փոխարեն շրջանն ունի միայն 210 աչք չորանոց։ Դրա համար էլ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը դեռ անցյալ տարի որոշում էր կայացրել Կրասնոսելսկի շրջանի կոլտնտեսություններին տրամադրել 2000 խոր. մետր անտառանյութ, սակայն մինչև սեպտեմբեր ամիսը ստացվել է միայն 160 խոր. մետր։

Շրջանի կոլտնտեսությունները 1957 թվականին մոտ 1800 հեկտար տա-



րածության վրա ցանել էին կարտոֆիլ, որի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 49 ցենտներ բերք։ Պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսությունների վարչությունների վատ աշխատանքի հետևանքով մի շարք կոլտնտեսություններում բերքատվությունն ավելի ցածր էր։ Այդ հետևանք էր այն բանի, որ կարտոֆիլի ցանքերը մշակելու համար չկային մշտական աշխատող կոլտնտեսականներ։ Շրջանում սահմանված էր արատավոր կարգ, երբ բանվոր-ծառայողներին պարտավորեցնում էին շաբաթօրյակների միջոցով «օգնել» կոլտնտեսություններին՝ մշակելու կարտոֆիլի ցանքերը։ Այդ այն դեպքում, երբ բոլոր կոլտնտեսություններն էլ լիովին ապահովված էին աշխատող ձեռքերով։

Հաշվի առնելով կարտոֆիլի մշակման գործում եղած այդ թերությունները, պարտիայի շրջանային կոմիտեն բոլոր կոլտնտեսությունների վարչությունների և պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց աշխատանքի այդ բնագավառը բարելավելու վրա։ Եվ պետք է ասել, որ այդ կուլտուրայից լավ բերք է սպասվում։ Այժմ 1830 հեկտար տարածության վրա կատարված յուրաքանչյուր հեկտարից սպասվում է մինիմում 90 ցենտներ բերք։ Եթե անցյալ տարի շրջանի կոլտնտեսությունները պետությանն են հանձնել ընդամենը 6 հազար ցենտներ կարտոֆիլ, ապա այս տարի նրանք կվաճառեն 24 հազար ցենտներ կարտոֆիլ։

Կոլտնտեսություններում բարձր բերք ստանալու համար աշխատանքի կարգապահության բարձրացումը ամենակարևորագույն պայմաններից մեկն է։ Հենց այդ պատճառով էլ շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում այս հարցին։ Սկզբնական պարտիական կազմակերպությունները սիստեմատիկաբար քննարկում են կոլտնտեսային օրինակելի Կանոնադրության կենսագործման վերաբերյալ հարցեր, հսկողություն են սահմանում աշխատանքի վարձատրման սիստեմի ճիշտ կիրառման վրա։ 1958 թվականին բոլոր կոլտնտեսություններում քննարկված է օրինակելի Կանոնադրությունը՝ նոր լրացումներով հանդերձ։ Սիստեմատիկ պայքար է տարվում պորտաբույծ տարրերի նկատմամբ։ Այս բոլորի արդյունքը եղել է այն, որ այժմ շրջանի բոլոր կոլտնտեսություններում հաջող է կազմակերպված աշխատանքը և սպասվում է առատ բերք գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներից։ Շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել են մինչև նոյեմբերի 1-ը կատարել իրենց բոլոր տեսակի պարտավորությունները պետության հանդեպ։

Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության մշտական ու մեծ հոգատարության շնորհիվ սոցիալիստական գյուղատնտեսությունը օրեցօր աճում ու զարգանում է։ Այս տեսակետից խոշոր նշանակություն ունեն կոլտնտեսային շինարարության հետագա զարգացման և ՄՏԿ-ների վերակազմման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան և Հունիսյան պլենումների որոշումները, որոնք մեծ հեռանկարներ բացեցին սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար։ Պարտիայի նշած միջոցառումների կենսագործման ուղղությամբ ակտիվ պայքար են մղում Կրասնոսելսկի շրջանի աշխատավորները, որոնք ոչ մի ջանք չեն խնայում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման համար։

---

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ ԱԿՏԻՎ ՄԱՍՆԱԿԻՑ ԴԱՐՁՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆԸ

Ա. ԿՈՍՏԱՆՅԱՆ

Հաշվի առնելով ՍՍՌՄ արհեստակցական միությունների ակտիվ մասնակ-
ցությունը մեր երկրում կոմունիզմի կառուցման և աշխատավորների կոմու-
նիստական դաստիարակության գործում, պարտիան անհրաժեշտ համարեց
հետևողականորեն բարձրացնել արհմիությունների դերը, աշխուժացնել նրանց
գործունեությունը՝ տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում։

Ինչպես նշվեց ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ,
արհմիութենական կազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ մոբիլիզաց-
նել արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների ուժերը ժողովրդա-
կան տնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելքի, Սովետական պետու-
թյան տնտեսական հզորության, նրա պաշտպանության համար։ Արհմիություն-
ները պարտավոր են ակտիվ մասնակցություն հանդես բերել աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման համար ծավալվող սոցիալիստական մրր-
ցությանը մասսայական բնույթ տալու գործում։

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի
պարտիական կազմակերպությունները լայն բացատրական աշխատանք ծավա-
լեցին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումի որոշման շուր-
ջը։ Նախօրոք հրավիրվեց ագիտատորների սեմինար պարապմունք, որտեղ
մանրամասնորեն ուսումնասիրվեց ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի
որոշումը, մշակվեց այդ որոշման առթիվ տարվող ագիտ-մասսայական աշխա-
տանքների կոնկրետ պլան։

Արհմիութենական աշխատանքները բարելավելու նպատակով արտադրու-
թյան շատ առաջավոր կոմունիստներ և ակտիվ անպարտիական ընկերներ
առաջ քաշվեցին որպես կոմբինատի արհմիութենական կազմակերպություն-
ների ղեկավարներ։ Պարտիական կոմիտեի ղեկավարությամբ արհմիութենական
կազմակերպություններն սկսեցին ավելի լրջորեն զբաղվել արտադրական խոր-
հրրդակցությունների հարցով։

Հայտնի է, որ արտադրական խորհրդակցությունները, դրանց ժամանակին
հրավիրումն ու խնամքով նախապատրաստումը աշխատավորներին արտադրու-
թյան կառավարմանը մասնակից դարձնելու կարևորագույն միջոցներից մեկն
է։ Մինչդեռ կոմբինատի շատ օբյեկտներում, ինչպես, օրինակ, գործվածքային
ֆաբրիկայի 3-րդ ցեխում, էլեկտրամեխանիկական արհեստանոցում, մանվածք-
քային ֆաբրիկայի մի շարք բաժիններում արտադրական խորհրդակցություն-
ները հրավիրվում էին դեպքից-դեպք, կամ շատ անգամ քննարկվում էին այն-
պիսի հարցեր, որոնք չէին ընդգրկում արտադրության գլխավոր խնդիրները։
Հաշվի առնելով Լենինգրադի առաջավոր ձեռնարկությունների փորձը, այս



տարվա հունվարին կոմբինատի արտադրական հիմնական օբյեկտներում կազ-
մակերպվեց 6 մշտական գործող արտադրական խորհրդակցություն, որոնցում
ընդգրկվեցին արտադրության 530 առաջավոր բանվորներ ու ինժեներա-տեխ-
նիկական աշխատողներ։ Ցարկոմները, պարտիական կազմակերպությունների
բյուրոների օգնությամբ, կազմեցին աշխատանքի պլան, որը հիմնականում
ուղղված էր արտադրության առջև կանգնած հարցերի լուծմանը։ Թեմատիկ
պլանների մեջ մտցվեցին արտադրության կազմակերպման, թողարկվող ար-
տադրանքի որակի բարձրացման, աշխատանքի և սարքավորումների արտա-
դրողականության բարձրացման, հումքի ռացիոնալ օգտագործման և մի շարք
կոնկրետ հարցեր։

Այսպես, օրինակ, մանվածքային ֆաբրիկայի մշտական գործող արտա-
դրական խորհրդակցությունը փետրվարի 13-ին լսեց հումքի օգտագործման
վիճակը ցեխերում։ Իր զեկուցման մեջ ֆաբրիկայի վարիչ Ա. Այվազյանը նշեց,
որ ոլորող, ժապավենող ցեխերի կոլեկտիվների վատ աշխատանքի պատճա-
ռով միայն հունվար ամսին պլանից ավելի տրվել են 25,8 տոննա հետադարձ
մնացուկներ։

Հաշվի առնելով արտադրության հրամանատարների և շարքային բանվոր-
ների դիտողությունները՝ արտադրական խորհրդակցությունը մշակեց կոնկրետ
միջոցառումներ հումքը խնայողաբար ծախսելու, մեքենաների անխափան աշ-
խատանքն ապահովելու համար։ Մշակվեց և կենսագործվեց տեխնիկական-
կազմակերպական աշխատանքների պլան։ Արդյունքը եղավ այն, որ սկսած
փետրվար ամսից հետադարձ մնացուկների քանակը պակասեց 15,5 տոննայով։
Այժմ ֆաբրիկայի կոլեկտիվը շարունակում է պայքարել հումքի հետագա տըն-
տեսման համար։

Հունվար ամսին գործվածքային ֆաբրիկայի մշտական գործող արտադրա-
կան խորհրդակցությունը լսեց գործվածքային առաջին ցեխի պետ Մ. Բալոյա-
նի զեկուցումը։ Խորհրդակցությանը ելույթ ունեցող ընկերները նշեցին, որ մի
շարք տեղամասերում ու կոմպլեկտներում վատ է կազմակերպված աշխատան-
քը, անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում հերթափոխության ճիշտ ընդուն-
մանը և հանձնմանը։ Այդ պատճառով 7-րդ և 8-րդ կոմպլեկտներում ջուլհակնե-
րը իրենց արտադրական նորմաները կատարում էին 80—90 տոկոսով։ Արտա-
դրական խորհրդակցության պահանջով կազմակերպվեց ջուլհակների վերա-
պատրաստում, նշված կոմպլեկտների վարպետների օգնականներին տեխնի-
կական օգնություն ցույց տալու համար ամրացվեցին լավագույն մասնագետ-
ներ Հ. Մուղնեցյանը, Ա. Ալեքսանյանը և Ս. Ղազարյանը։ Այս կարգի կազմա-
կերպչական միջոցառումները օգնեցին երիտասարդ վարպետ-օգնական-
ներին՝ կատարելու իրենց արտադրական նորմաները։ Այժմ նրանք գտնվում են
ֆաբրիկայի առաջավորների շարքերում, արտադրական նորմաները կատարում
են 110—120 տոկոսով։

Մանարան ֆաբրիկայի մշտական գործող արտադրական խորհրդակցու-
թյան անդամներին հուզում էր աշխատանքի արտադրողականության բարձրաց-
ման հարցը։ Խորհրդակցության նախագահության նախագահ Մ. Ղարիբյանը
զրուցեց պարտբյուրոյի քարտուղար Ս. Ասատրյանի և ֆաբկոմի նախագահ Ա.
Կուրղինյանի հետ, որից հետո որոշվեց այդ հարցը քննարկել արտադրական
խորհրդակցությունում։ Ապրիլին լսվեց ֆաբրիկայի աշխատանքի և աշխատա-
վարձի բաժնի վարիչ Ա. Անտոնյանի զեկուցումը. զեկուցողը և ելույթ ունեցող-

ները բացահայտեցին մի շարք թերություններ աշխատանքի կազմակերպման
բնագավառում։ Հատկապես նշվեց այն, որ ֆաբրիկայի առանձին ցեխերում
թույլ է պայքարը պարապուրդները կրճատելու, եղած հնարավորությունները
լիովին օգտագործելու համար։ Այդ թերությունները վերացնելու համար խոր-
հրրդակցությունը նշեց մի շարք միջոցառումներ, որոնց կիրառման շնորհիվ
աշխատանքի արտադրողականության պլանը կատարվում է 105—108 տո-
կոսով։

Պարտիական և արհմիութենական կազմակերպությունների առաջ ամբողջ
սրությամբ դրվեց սոցիալիստական մրցության հարցը։ Այս հարցի ուսումնա-
սիրությունից պարզվեց, որ կոմբինատի, ֆաբրիկաների առանձին տեղամասե-
րում դեռևս անբավարար էր սոցիալիստական մրցության կազմակերպումը,
ֆաբկոմները, ցեխկոմները ժամանակին չէին ամփոփում ցեխերի, բրիգադա-
ների, առանձին բանվորների ստանձնած պարտավորությունների կատարման
արդյունքները, անբավարար էին կիրառում խրախուսանքի միջոցները։ Մրցու-
թյան հարցը քննության դրվեց կոմբինատի պարտիական կոմիտեում։ Վերա-
նայվեցին ցեխերի և հերթափոխությունների պայմանագրերը։ Նախապատրաս-
տական աշխատանքներն ավարտելուց հետո կոմբինատի բանվոր ծառայողնե-
րից 4765 հոգի ընդգրկվեցին սոցիալիստական մրցության մեջ։ 1958 թվականի
անցած ամիսներում սիստեմատիկաբար իրենց պարտավորությունները կատա-
րել են 4136 հոգի։ Մանարան և ներկման-վերամշակման ֆաբրիկաներում
չկան արտադրական նորմաները թերակատարող բանվորներ։

Ամեն մի ամիս ցեխերում, հերթափոխություններում և բրիգադաներում
ստուգվում են վերցված պարտավորությունների կատարման արդյունքները,
հարկ եղած դեպքում բանվորները ստանձնում են նոր, բարձր պարտավորու-
թյուններ։ Յուրաքանչյուր եռամսյակ գումարվում են կոլեկտիվների ընդհանուր
ժողովներ, որտեղ կնքվում են նաև հաջորդ եռամսյակի պայմանագրերը։ Այդ
ժողովներում են տրվում առաջավոր բանվորներին կոչումներ և միջոցառում-
ներ են նշվում բոլոր բանվորներին առաջավորների մակարդակին հասցնելու
համար։

Սոցիալիստական մրցության պարտավորությունների կատարման ընթաց-
քը ամփոփվում է ֆաբրիկաների և օբյեկտների պրոֆցեխկոմների նիստերում,
կիրառվում են խրախուսանքի միջոցներ։ Պարտավորությունների վերջնական
ամփոփումը ֆաբրիկաների գծով կատարվում է 3 ամիսը մեկ անգամ միացյալ
ֆաբկոմի նիստում։ Այդ մասին զեկուցում է կոմբինատի դիրեկտորը կամ
գլխավոր ինժեները։ Լավագույն ցուցանիշներ ունեցողներին հանձնվում է միջ-
ֆաբրիկային փոխանցիկ կարմիր դրոշը։

Անցած ամիսներին բարձր ցուցանիշների հասնելու համար 21 առաջավոր
բանվորներ գրանցվել են կոմբինատի պատվո գրքում, 86 հոգի՝ պատվո տախ-
տակում։ Բացի այդ, ֆաբրիկաների և օբյեկտների պատվո տախտակին են ար-
ժանացել 203 բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Սոցիալիստական մրցության պարտավորությունները 120—125 տոկոսով
կատարում են մանող բանվորուհիներ՝ Լ. Գասպարյանը, Մ. Խաչատրյանը, Ժ.
Դանիելյանը, Ս. Սահակյանը և շատ ուրիշներ. վարպետի օգնականներ՝ Մ. Ա-
միրյանը, Մ. Սիմոնյանը արժանացել են միջցեխային կարմիր դրոշի։

Աշխատանքային փառքով են պսակել իրենց նախամանող բանվորներ՝
Ա. Առաքելյանը, Վ. Հաջիպողոսյանը և ուրիշներ։ Այս տարի նախամանող ցե-



խում տեղադրվեցին միջին նոր նախամանող մեքենաներ։ Առաջինը Հաջիպո-
ղոսյանը ցանկություն հայտնեց այդ մեքենաների վրա աշխատելու։ Այժմ նա
սպասարկում է երկու մեքենա և սիստեմատիկաբար կատարում իր արտադրա-
կան նորմաները, ապահովում է բարձրորակ նախամանվածքի թողարկումը։
Անցած վեց ամսում լրացուցիչ կարգով նա թողարկել է 9000 կիլոգրամ արտա-
դրանք։

Սոցիալիստական մրցության գործում նոր հաջողությունների են հասել
կոմբինատի փականագործները, խառատները և ձուլողները, որոնք պարտա-
վորվել են տարեկան պլանը կատարել մինչև դեկտեմբերի 5-ը։

Կոլեկտիվի ներքին հնարավորությունների մոբիլիզացմանը մեծ չափով
խթանում է վաղուց արդեն տրադիցիա դարձած ստեղծագործ սոցիալիստական
մրցությունը երեք եղբայրական ռեսպուբլիկաների՝ Կիրովաբադի, Քութայիսի
և Լենինական քաղաքների տեքստիլագործների միջև։ Այդ մրցությունը օգնում
է մեզ՝ մրցակիցներիս, հաջողությամբ կատարելու պարտիայի և կառավարու-
թյան առաջադրած խնդիրները։ Կիրովաբադի տեքստիլագործները փոխադարձ
այցով մեզ մոտ եղան 1957 թվականի հունիսին. դելեգացիայի կազմում էին՝
կոմբինատի գլխավոր ինժեներ Ալի Զադեն, պարտկոմիտեի քարտուղար Ն.
Աբասովը, ինժեներա-տեխնիկական աշխատողներ և բանվորներ։ Անցյալ
տարվա 5 ամիսների աշխատանքների ամփոփումը ցույց տվեց, որ նրանք պար-
տավորությունները կատարել էին ավելի լավ։

Ելնելով անցյալ տարվա արդյունքներից, այս տարի պարտիական, արհ-
միութենական կազմակերպությունները մոբիլիզացրին կոլեկտիվի ուժերը՝
վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար։ Առանձին ար-
տադրական տեղամասերում կատարվեց ուժերի տեղաբաշխում, առաջավոր
տեխնիկայի ներդրում։ Ուժեղ պայքար ծավալվեց տեխնոլոգիայի ճիշտ կիրառ-
ման և աշխատանքային կարգապահության բարձրացման համար։

Այս բանի շնորհիվ կոմբինատի կոլեկտիվը պատվով կատարեց անցած
ամիսների պլանը։ Մանվածքային ֆաբրիկայի կոլեկտիվը պարտավորվել էր
պլանից ավելի տալ 20 տոննա մանվածք. նա դրա դիմաց տվեց 87 տոննա
մանվածք։ Գործվածքային ֆաբրիկան պարտավորվել էր պլանից ավելի թո-
ղարկել 300 հազար մետր գործվածք, թողարկեց 624 հազար մետր, ներկման-
վերամշակման ֆաբրիկան պարտավորվել էր թողարկել 250 հազար մետր պատ-
րաստի գործվածքեղեն, թողարկեց 366 հազար մետր։

Համախառն արտադրանքի պլանը կատարվեց 104,9 տոկոսով, պլանից
ավելի թողարկվեց 4,884 հազար ռուբլու ապրանք կամ 3884 ռուբլով ավելի,
քան վերցված է ամբողջ տարվա պարտավորություններով։ Այս տարի անցյալ
տարվա համեմատությամբ բարձրացավ նաև աշխատանքի արտադրողականու-
թյունը, որի պլանը կատարվեց 103%-ով։ Կոմբինատի կոլեկտիվի դաստիա-
րակությունն այսօր արհեստակցական կազմակերպությունները տանում են ոչ
միայն պլանները կատարելու, այլև կոմբինատի մարկան բարձրացնելու,
ինքնարժեքն իջեցնելու, ժողովրդի աճող պահանջները բավարարելու, լավորակ
ապրանքներ թողարկելու ուղղությամբ։

Այս տարի պարտիական, արհմիութենական կազմակերպությունները ադ-
մինիստրացիայի հետ միասին հատուկ ուշադրություն նվիրեցին կոմբինատում
տեխնիկական պրոգրեսի ապահովման, առաջավոր տեխնիկայի արմատավոր-
ման հարցերին։ Նրանք կոլեկտիվի ժողովներում քննարկելով ՍՄԿՊ Կենտրոնա-

կան Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նամակը՝ արտադրական պրո-
ցեսների մեխանիզացիայի և ավտոմատիզացիայի հետագա զարգացման մա-
սին, մշակեց հատուկ պլան, ըստ որի կոմբինատում տեղադրվելու են ավելի
քան 450 միավոր տարբեր տեսակի սարքավորումներ։ Այդ պլանի մի մասը
արդեն կենսագործվում է։ Մանարան ֆաբրիկայում տեղադրված է 102 թելա-
որս սարք, որը հեշտացնում է բանվորի աշխատանքը 5—8 տոկոսով, նպաս-
տում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Գործվածքային ֆաբրիկայում տեղադրվել են ԱՏ—100—2 սիստեմի բար-
ձրր արագություն ունեցող 200 հաստոցներ։ Դրանց լրիվ օգտագործումով կոմ-
բինատում գործվածքեղենի արտադրությունը օրական կավելանա 15 հազար
մետրով։

Ներկման-վերամշակման ֆաբրիկայում երկրի առաջավոր ձեռնարկու-
թյունների օրինակով մտցվել է գործվածքների սպիտակեցման ավելի արդյու-
նավետ եղանակ։ Այս միջոցառման նպատակն է՝ ցածր տեսակի բամբակից
ստանալ բարձրորակ ու արտաքնապես լավ մշակված գործվածքներ. պետք է
նշել, որ ներկման-վերամշակման ֆաբրիկայի երիտասարդ մասնագետները
հաճախ են հանդես գալիս նման համարձակ նախաձեռնություններով։

Արհեստակցական կազմակերպությունները գյուտարարական, ռացիոնալի-
զատորական աշխատանքներում ներգրավել են 309 բանվորների և ինժեներա-
տեխնիկական աշխատողների։ Նրանց կողմից ստացվել է 323 առաջարկու-
թյուն, որից ընդունվել է 248-ը, ներդրվել՝ 239-ը։ Ընդունված առաջարկու-
թյուններից սպասվում է 1.753.600 ռուբլու օգուտ։ Գյուտարարական-ռացիո-
նալիզատորական աշխատանքներին մասսայական բնույթ տալու նպատակով
կոմբինատում կազմակերպված է գյուտարարական-ռացիոնալիզատորական
ընկերություն, որտեղ ընդգրկված են 231 հոգի։

Արտադրության առաջավոր բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխա-
տողները յուրաքանչյուր շաբաթ քննարկում են ստացված առաջարկություն-
ները, կոնկրետ հանձնարարություններ տալիս՝ կենտրոնական ֆաբրիկաներից
ստացված նորագույն առաջարկություններն ուսումնասիրելու և ներդնելու հա-
մար։ Մանարան, գործվածքային և ներկման-վերամշակման ֆաբրիկաներում
ռացիոնալիզատորական աշխատանքները մասսայականացնելու համար լույս է
տեսնում «Ռացիոնալիզատոր» հատուկ թերթիկ։ Այս տարի այստեղ երեք ան-
գամ անց է կացվել ռացիոնալիզատորների կոնֆերանս։ Գյուտարարներին,
ռացիոնալիզատորներին օգնելու նպատակով կոմբինատի արտադրական ու
տեխնիկական խորհուրդը տարվա սկզբից մշակել է թեմատիկ պլան, որը կողմ-
նորոշում է ընկերներին թեմաների ընտրության գործում։ Կազմակերպչական
միջոցառումները տվել են իրենց դրական արդյունքները. այս տարի կոմբինա-
տում զգալիորեն ավելացել է գյուտարարների և ռացիոնալիզատորների թիվը։
Առանձնապես ավելացել է կին ռացիոնալիզատորների թիվը։ Եթե անցյալ տա-
րիներին կին նորարարների թիվը հասնում էր 10-ի, ապա այս տարի՝ 38-ի։
Արժեքավոր առաջարկություններով հանդես են եկել Ն. Կուխարսկայան, Լ.
Մանուկյանը, Ս. Գասպարյանը և ուրիշներ։

Ռացիոնալիզատորական աշխատանքներին առավել ակտիվ մասնակցու-
թյուն է ցույց տալիս փականագործ Հ. Ադամյանը։ Նա արել է 7 առաջարկու-
թյուն, որոնցից ստացվելու է 12395 ռուբլու օգուտ։ Էլեկտրիկ Ե. Խորոսյանը
9 առաջարկության հեղինակ է, որոնց տնտեսական էֆեկտը հասնում է մոտ



30 հազար ռուբլու։ Ջերմեռացման բաժնի պետ Ա. Պողոսյանի, գործվածքային
ֆաբրիկայի վարիչ Վ. Ավագյանի առաջարկությունների ներդրումից ստացվելու
է մոտ 60 հազար ռուբլու օգուտ։

Կոմբինատի արտադրական օբյեկտներից այժմ ռացիոնալիզատորական
աշխատանքների գծով առաջավորների շարքերում է ներկման-վերամշակման
ֆաբրիկան։ Այս տարի վերամշակողներն արել են 126 առաջարկություն։ Այս-
տեղ յուրաքանչյուր 3 աշխատողից մեկը ռացիոնալիզատոր է։ Սակայն կոմ-
բինատում կան նաև այնպիսի արհմիութենական կազմակերպություններ,
որոնք լրջորեն չեն զբաղվում այդ կարևոր հարցով։ Այսպես, օրինակ, մանա-
րան և գործվածքային ֆաբրիկաներում շատ քիչ է ռացիոնալիզատորների
թիվը։ Մեր ռեսպուբլիկայի ժողտնտխորհի կողմից հայտարարված գյուտարար-
ների-ռացիոնալիզատորների կոնկուրսի արդյունքների ամփոփումը ցույց
տվեց, որ շատ բան կարելի է անել այդ բնագավառում։ Գյուտարարներին,
ռացիոնալիզատորներին տեխնիկական օգնություն ցույց տալու համար վատ
չէր լինի, եթե Հայկական ժողտնտխորհը ըստ վարչությունների լույս ընծայեր
ռեսպուբլիկայի լավագույն ռացիոնալիզատորների աշխատանքի փորձին նվիր-
ված բյուլետեններ։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումներից հետո կոմբի-
նատի արհմիութենական կազմակերպություններն ավելի մոտիկից են զբաղ-
վում բանվոր-ծառայողների շրջանում տարվող դաստիարակչական, կուլտուր-
մասսայական աշխատանքների և բանվորների առօրյա կենցաղի կազմակերպ-
ման հարցերով։ Կոմբինատի պարտիական և կոմերիտական կազմակերպու-
թյունների հետ միասին արհեստակցական կազմակերպությունները առանձ-
նահատուկ ուշադրություն դարձրին նախորդ ուսումնական տարում բանվոր-
ծառայողների հանրակրթական ուսուցման գործը կազմակերպելու վրա։ Կոմ-
բինատում շուրջ 700 ընկերներ սովորում են քաղաքի բանվորական դպրոցներում,
տեքստիլ տեխնիկումում և հանրակրթական այլ խմբակներում։ Կոմբինատի
պրոֆմիութենական կազմակերպությունները մեծ ուշադրություն են դարձնում
ֆաբգործուսի և մասնագիտական տեխնիկական դպրոցի սաների կուլտուր-
կենցաղային պայմանների բարելավմանը։ 1957—58 ուս. տարում մասնագի-
տական-տեխնիկական դպրոցի սաները իրենց պարապմունքներն սկսեցին նոր
և հարմարավետ շենքում։

Արհմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում են
եղել բանվոր-ծառայողների համար կազմակերպվող դասախոսություններն ու
զրույցները։

Մեծ հետաքրքրության են արժանացել «Քո գիտելիքները պետք են հայ-
րենիքին», «Սերը, ամուսնությունը, ընտանիքը սովետական հասարակարգում»,
«Ապահարզանը և նրա դրդապատճառները», «Ինչպես ծախսել աշխատավարձը»
և այլ հետաքրքիր դասախոսություններ։

Ուսումնական տարին ավարտելուց հետո կազմակերպվում են շրջանա-
վարտներին նվիրված երեկոներ, ուր թանկարժեք նվերներ են ստանում դպրոցն
ավարտած և ուսումնական տարում հաջողությունների հասած բանվոր-ծա-
ռայողները։

Կոմբինատի բանվորական հանրակացարաններում ապրում են շուրջ 700
ընկերներ։ Նրանց շրջանում տարվող ճիշտ և խելացի աշխատանքը կօգնի երի-
տասարդության դաստիարակության գործը կազմակերպելուն և նրանց համար

*կենցաղային և կուլտուրական սպասարկման անհրաժեշտ պայմաններ ստեղծելուն։ Արդեն մի քանի ամիս է, ինչ շահագործման է հանձնվել հանրակացարանի նոր կորպուսը, ուր և տեղավորվելու են բանվորի դպրոցի 5-ից մինչև 7-րդ դասարանները։ Հանրակացարանում կա գրադարան, կազմակերպված են ինքնագործ խմբեր, որոնք հաճախակի հանդես են գալիս բանվոր-ծառայողների առջև։ Բանվորների հանգիստը խելացի կազմակերպելու գործում մեծ դեր են խաղում բանվորական ակումբում կազմակերպվող միջոցառումները, հատկապես հանգստի երեկոները։ Ակումբում սիստեմատիկաբար կազմակերպվում են հարց ու պատասխանի երեկոներ, որի համար ֆաբկոմը ստեղծում է անհրաժեշտ պայմաններ։ Այս տարի բանվորական ակումբում կազմակերպվել է 12 հանգստի և թեմատիկ երեկոներ, որոնց մասնակցել են շուրջ 5000 բանվոր-ծառայողներ։ Կոմբինատի բանվորների համար ֆաբկոմը կազմակերպել է մերձեցման երեկոներ՝ Երևանի Օպերայի և բալետի պետական թատրոնի և ռեսպուբլիկայի արվեստի շատ աշխատողների հետ։ Բայց այս աշխատանքները ավելի լավ կընթանային, եթե չձգձգվեր նոր ակումբի կառուցումը։*

*Կոմբինատի արհեստակցական կազմակերպությունները կոմերիտական կազմակերպությունների հետ միասին հոգ են տանում երեխաների ամառային հանգիստը կազմակերպելու նկատմամբ։ Այս տարի կոմբինատի տերիտորիայում կազմակերպվել և գործում էր 4 բակային ճամբար, ուր ընդգրկված էին շուրջ 527 երեխաներ։ Երեխաները մի քանի անգամ եղել են տեքստիլ կոմբինատում և քաղաքի այլ արդյունաբերական ձեռնարկություններում։*

*Կոմբինատի միացյալ ֆաբկոմը հատուկ ուշադրություն է դարձնում բանվոր-ծառայողների դիմումներին և բողոքներին ընթացք տալուն։ Օբյեկտների ֆաբկոմներում, ինչպես նաև կոմբինատի միացյալ ֆաբկոմում ստեղծված են աշխատանքի վեճերի հանձնաժողովներ, որոնք քննում են բանվորների դիմումները և պատասխանում դրանց. անցյալ տարի 7 ամսում աշխատանքի, աշխատավարձի համար բողոքներ ու դիմումներ են եղել 128 հոգուց, իսկ այս տարի այդ նույն ժամանակում՝ ընդամենը 26 հոգուց։*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացման, կոլեկտիվի ներքին ռեզերվները հայտաբերելու գործում մեծ նշանակություն ունի ֆաբրիկաներում աշխատանքի նորմաների ճիշտ սահմանումը։ Ֆաբկոմները, ֆաբրիկաների արտադրական, ցեխային ժողովները քննադատաբար են մոտենում այս կամ այն արտադրական նորմաների վերանայմանը։ Հարցերի քննարկումը և լուծումը միշտ գնում է այն նշանաբանով, որ ապահովվի ամենամյա աշխատանքի արտադրողականությունը, այն հասնի երկրի մյուս առաջավոր ֆաբրիկաների մակարդակին։ Այսպես, օրինակ՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումի որոշումից հետո մեր կոմբինատում երկու անգամ վերանայվել են հիմնական պրոֆեսիաների նորմաները։ Այդ աշխատանքները տարվել են արհեստակցական կազմակերպությունների անմիջական մասնակցությամբ։ Եղել են դեպքեր, երբ կազմակերպությունները համաձայն չեն եղել վերանայել որևիցե նորմա. օրինակ՝ գործվածքային ֆաբրիկայի ջուլհակների նորման միտկալի համար թողնվել է նույնը։*

*Արտադրական նորմաների վերանայումը նպատակ է ունեցել լավացնելու բանվորների աշխատանքի պայմանները, չխախտելու նրանց նյութական շահագրգռվածության սկզբունքը։ Օրինակ, կոմբինատը 1958 թվականին 2 միլիոն*



*ռուբլի ավելի աշխատավարձ է վճարելու 1957 թվականի համեմատությամբ, բանվորների միջին աշխատավարձը բարձրացել է 40—70 ռուբլով։*

*Բանվոր-ծառայողների հասարակական սննդի, առևտրի ճիշտ կազմակերպման գործում մեծ աշխատանք է տանում միացյալ ֆաբկոմին կից բան. մատակարարման հանձնաժողովը (նախագահ Տ. Ջուլհակյան)։ Ֆաբրիկաների լավագույն բանվոր-ծառայողներից շատերը ամրացված են 40 առևտրական կետերի՝ հսկելու համար։ Թերություններ ունենալու համար ներկման-վերամշակման ֆաբրիկայի կոլեկտիվի պահանջով աշխատանքից հանվեց ճաշարանի վարիչ Խ. Մխիթարյանը, նկատողություն արվեց № 29 մթերային խանութի պատասխանատու վաճառող Ա. Ղազարյանին, մանարան ֆաբրիկայի ժողովում բան. հսկիչները նշել են բանավանի № 43 խանութի վարիչ Ա. Առաքելյանի շնորհալի աշխատանքը։ Բանվորական հսկիչներից լավ են աշխատում ջուլհակուհի Ն. Դավթյանը, էլեկտրիկ Շ. Սահակյանը, Մ. Աթոյանը և ուրիշներ, որոնք արձանագրել են առևտրի կանոնների խախտման 50 դեպք։ Պետք է նշել, որ ոչ բոլոր հանձնաժողովներն են բավարար աշխատում։ Օրինակ, դաստիարակչական, կուլտուրական կենցաղային հարցերով զբաղվող հանձնաժողովները զգալի չափով թուլացրել են իրենց աշխատանքները։*

*Այս ամենի հետ միասին անհրաժեշտ է նշել, որ կոմբինատի արհեստակցական կազմակերպությունները, ֆաբկոմները իրենց աշխատանքները չեն կարողացել լիովին վերակառուցել ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումների համաձայն, հաճախ ընդունել են որոշումներ, բայց մինչև վերջ չեն ապահովել դրանց կատարումը. այսպես, օրինակ. մարտ ամսին գործվածքային ֆաբրիկայի մշտական գործող արտադրական հանձնաժողովը լսեց նախապատրաստական բաժնի կողմից ջուլհակներին որակյալ հենքերով ապահովելու հարցը, ընդունվեց կոնկրետ որոշում, բայց այդ որոշումը դեռ մնում է թղթի վրա։ Նույն ֆաբրիկայի արտադրական մի շարք ժողովներում լսվել է արտադրության կուլտուրայի հարցը, սակայն մինչև օրս նրանց մոտ այն չի լուծված։ Ֆաբրիկաներում ցեխկոմները, պրոֆնախագահները անհրաժեշտ չափով չեն խորանում արտադրության էկոնոմիկայի հարցերում։ Հաճախ սոցիալիստական մրցության պայմանագրերով ստանձնում են այնպիսի պարտավորություններ, որոնք գլխավորը կամ որոշիչը չեն տվյալ էտապում։*

*Լենինականի տեքստիլ կոմբինատի պարտիական, արհեստակցական կազմակերպությունների, պարտիական, արհմիութենական և տնտեսական ղեկավար աշխատողների խնդիրն է՝ մոբիլիզացնել կոլեկտիվի ուժերը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումի որոշումները մինչև վերջ կենսագործելու համար։*

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Միջազգային լարվածության մեղմացումը և խաղաղության ապահովումը
մեր օրերի ամենից կենսական խնդիրն է։ Ստեղծագործական եռուն աշխա-
տանքով զբաղված սոցիալիզմի լագերի բազմամիլիոն ժողովուրդները հետե-
վողականորեն պայքարում են աշխարհում կայուն խաղաղություն պահպա-
նելու համար։ Նրանք ցանկանում են խաղաղ և բարեկամաբար ապրել մյուս
բոլոր երկրների ժողովուրդների հետ։ Սովետական Միության Կոմունիստա-
կան պարտիան և կառավարությունը կատարելով իրենց ժողովրդի կամքը,
հաստատակամորեն և հետևողականորեն խաղաղասիրական քաղաքականու-
թյուն են վարում։ Բոլորին քաջ հայտնի է, որ ՍՍՌՄ-ը բազմիցս դիմել է
ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարություններին՝ առաջարկելով արգելել ատոմա-
յին և ջրածնային զենքը, դադարեցնել նրա արտադրությունն ու փորձարկում-
ները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետը որոշում ընդունեց Սովետական Միությու-
նում միջուկային զենքի բոլոր տեսակների փորձարկումները միակողմանիո-
րեն դադարեցնելու մասին։

Սովետական Միության և սոցիալիզմի լագերի մյուս երկրների խաղա-
ղասիրական առաջարկություններն ու միջոցառումները ջերմորեն պաշտպա-
նում են խաղաղ գոյակցության սկզբունքների վրա իրենց արտաքին քաղա-
քականությունը կառուցող բոլոր պետությունները, բոլոր խաղաղասեր մարդիկ։

Սակայն իմպերիալիստական ագրեսիվ շրջանները և, հատկապես, ԱՄՆ-ի
և Անգլիայի կառավարողները համառորեն խոչընդոտում են պետությունների
միջև համագործակցության հաստատմանը, ոտնահարում են ժողովուրդների
ազնիվ ձգտումները, մերժում են Սովետական պետության խաղաղասիրական
առաջարկները, նոր բարդություններ են ստեղծում միջազգային հարաբերու-
թյունների մեջ։ Հենվելով ագրեսիվ ռազմական բլոկների, ուրիշ երկրների
տերիտորիաներում ունեցած իրենց ռազմական բազաների վրա, ամերիկա-
անգլիական իմպերիալիստները ոտնահարում են այդ երկրների սուվերենու-
թյունը, կոպիտ կերպով միջամտում նրանց ներքին գործերին։ Նրանք խորա-
պես ռեակցիոն և, միաժամանակ, անիրագործելի նպատակ են հետապնդում.
խափանել պատմության առաջընթացը, պահպանել և հնարավորության դեպ-
քում ընդլայնել գաղութային տիրապետության ոլորտը, ամենուրեք պահպանել
ժողովուրդներին ատելի ռեակցիոն ռեժիմները։ ԱՄՆ-ը, Անգլիան և նրանց
դաշնակիցները շարունակում են սպառազինությունների մրցավազքը, ուժե-
ղացնում են ատոմային պատերազմի պատրաստությունները, դիմում խիկ
լուրջ սպառնալիք ստեղծելով ընդհանուր խաղաղության և անվտանգության
համար։



Միջազգային քաղաքականության մեջ այդ երկու հակադիր ուղղություն-
ների առկայությունը ոչ թե պատահական գործոնների հետևանք է, այլ բնո-
րոշվում է երկու սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի արմատական
տարբերություններով։

Արդեն մի քանի ամիս է, ինչ համայն մարդկության ուշադրությունն ամե-
նայն լարվածությամբ հառված է Արաբական Արևելքում ստեղծված վտանգա-
վոր իրադրությանը։ Այս տարվա հուլիսին աշխարհը կանգնեց պատերազմի
աղետի եզրին։ Ամերիկա-անգլիական իմպերիալիզմը կոպիտ կերպով ոտնա-
հարելով միջազգային իրավունքի նորմաները, զինված ինտերվենցիա սկսեց
Լիբանանի և Հորդանանի դեմ։

Արաբական երկրների ներքին գործերին զինված ուժերով միջամտելու
պատրվակ ստեղծելու համար իմպերիալիզմի կամակատար Լիբանանի նախ-
կին պրեզիդենտ Շամունը, առանց պառլամենտի սանկցիայի, դիմեց ԱՄՆ-ի,
Անգլիայի և Ֆրանսիայի կառավարություններին՝ խնդրելով զորքեր մտցնել
Լիբանան, պաշտպանելու այն ինչ-որ «անուղղակի ագրեսիայից», «արտաքին
վտանգից»։ Սակայն քաջ հայտնի է, որ Լիբանանում կատարվող իրադար-
ձությունները ունեն զուտ ներքին արմատներ։ Այդ իրադարձությունները քա-
ղաքացիական պատերազմի վերածվեցին և Մերձավոր Արևելքում ամբողջ
իրադրությունը սրվեց այն պատճառով, որ Բաղդադի պակտի անդամ պետու-
թյունները և ԱՄՆ-ը ամեն կերպ ձգտում էին ինչ գնով էլ լինի պահպանել
Լիբանանում հակաժողովրդական ռեժիմը։ Հայտնի է, որ դեռևս 1943 թվակա-
նին ազգային անկախություն նվաճելով, Լիբանանը «ազգային պակտ» ընդու-
նեց, որը նախատեսում էր չեզոքություն և որևէ բլոկի մասնակցելուց հրաժա-
րում։ Սակայն, ժողովրդի կամքին հակառակ ընդունելով «Էյզենհաուերի դոկ-
տրինա»-ն, պրեզիդենտ Շամունը ոտնահարեց երկրի տրադիցիոն քաղաքա-
կանությունը։ Դա առաջացրեց լիբանանյան հայրենասիրական շրջանների ար-
դարացի զայրույթը, որը սպառնում էր սրբել տանել կառավարող դավաճա-
նական կլիկը։

Լիբանանի իրադարձություններին հետևեց ժողովրդական ռևոլյուցիան
Իրաքում (հուլիսի 14-ին), որը կործանեց «արևմուտքի» ամենահուսալի հե-
նարանը Արաբական Արևելքում, հենց Բաղդադում, որի անունով էր կոչվում
նույնիսկ այն պակտը, որը գաղութարարության և ագրեսիվ քաղաքականու-
թյան խորհրդանիշն է։ Իրադարձությունների զարգացումը բացահայտորեն ցույց
տվեց գաղութարարներին, որոնք Իրաքի ռեսպուբլիկայի ստեղծումն ընդունե-
ցին անսքող թշնամանքով։ Անմիջապես տենդագին գործունեություն սկսվեց
Վաշինգտոնում, Լոնդոնում և Անկարայում։ Իմպերիալիստներն առաջին հեր-
թին ձգտում էին ռևանշ վերցնել ազգային-ազատագրական բուռն վերելքի
հետևանքով Մերձավոր Արևելքում իմպերիալիզմի կրած այն քաղաքական
ծանր պարտության համար, որի ամենացայտուն արտահայտությունը վերջին
տարիներս գաղութարարներին տրված հակահարվածն էր Եգիպտոսում և Սի-
րիայում, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծումը և ռեակցիոն ռե-
ժիմի տապալումը Իրաքում։ Ահա թե ինչու իմպերիալիստները դիմեցին բա-
ցահայտ ինտերվենցիայի, մի կողմ նետելով բարեգործի դիմակը։ Ամերիկյան
զինված ուժերը ներխուժեցին Լիբանանի տերիտորիան, իսկ անգլիական գա-
ղութարարները մոռանալով իրենց անփառունակ անցյալը, նորից օկուպացրին
Հորդանանը, որպեսզի հետո ծավալեին ագրեսիան Իրաքի և մյուս արաբական

*երկրների դեմ, և ո՛չ միայն արաբական երկրների դեմ։ Ամերիկա-անգլիական ագրեսորները փորձեցին ոչնչով չարդարացված իրենց այդ գործողությունները «հիմնավորել» Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի կողմից Լիբանանին և Հորդանանին իբր թե սպառնացող ինչ-որ «անուղղակի ագրեսիայի» մասին խոսակցություններով։*

*Սակայն ամբողջ աշխարհին հայտնի է, որ ներկայումս ՄԱՌ-ի դեմ հենց իրենք՝ գաղութարարներն են նման քաղաքականություն վարում։ Նրա հասցեին ինչպիսի հերյուրանք և զրպարտություն ասես չեն տարածում «Ամերիկայի ձայնը», «Բի-բի-սի»-ն, «ԱՄՆ-ի ռադիո»-ն և այլ գաղտնի ռադիոկայաններ, որոնց թիվը հասնում է տասնմեկի։ Երբ Իրաքում տապալվեց միապետությունը և այն դադարեց ՄԱՌ-ի դեմ պրոպագանդայի գործիք լինելուց, եթերում սկսեց լսվել խորհրդավոր «Իրաքի ձայնը», որը կոչ է անում ապստամբել ռեսպուբլիկական կառավարության դեմ։ Իսկ ինտերվենցիայի թեժ մոմենտին էյզենհաուերը կոնգրեսից պահանջեց լրացուցիչ կերպով «Ամերիկայի ձայն»-ին տրամադրել 22,3 միլիոն դոլար՝ ռադիոհաղորդումները Մերձավոր Արևելքում և Աֆրիկայում ընդլայնելու համար։ Այս փաստերը խոսում են հենց իմպերիալիստների անուղղակի ագրեսիայի մասին, որին անմիջապես հետևեց ուղղակի ագրեսիան։*

*Միջազգային հարաբերությունների վերջին հարյուրամյակների պատմությունից հայտնի չէ մի դեպք, որ ագրեսորը ուղղակի և ազնվորեն ասեր. այո, ես զավթիչ եմ և ագրեսոր։ Նա, ով ներխուժել է ուրիշ երկիր, միշտ էլ փորձել է իր այդ գործողությունների համար բարոյական և իրավաբանական հիմքեր գտնել։ Տվյալ դեպքում ագրեսիային «իրավաբանական հիմնավորում» տալու նպատակով իմպերիալիստներն սկսեցին փարիսեցիորեն վկայակոչել ՄԱԿ-ի կանոնադրության 51-րդ հոդվածը, որն անհատական և կոլեկտիվ ինքնապաշտպանության իրավունք է ընձեռում այս կամ այն երկրի վրա զինված հարձակման դեպքում։ Սակայն ՄԱԿ-ի կանոնադրության նկատմամբ ուղղակի ծաղր ու ծանակ էին իմպերիալիստների փորձերը՝ ագրեսիան ներկայացնել որպես Լիբանանի «ամբողջության և անկախության նկատմամբ հոգատարություն» և պնդել, թե իբր ագրեսիան ձեռնարկված է ինքնապաշտպանության նպատակով։ Նրանք շատախոսում էին Լիբանանի և Հորդանանի ներքին գործերի «դրսից ինչ-որ միջամտության» մասին։ Բայց այդ զրպարտչական հերյուրանքները հերքել էին դեռևս ՄԱԿ-ի դիտորդները, որոնք այցելել էին Հորդանան և Լիբանան։ Ագրեսորներն աղմկում էին իրենց անվտանգության մասին, բայց մի՞թե ԱՄՆ-ից հազարավոր կիլոմետր հեռավորության վրա գտնվող Արաբական Արևելքի երկրները կարող են սպառնալ Ամերիկայի անվտանգությանը։*

*Հասարակական կարծիքը խաբելու իմպերիալիստների անշնորհք փորձերը բուռն զայրույթ և ցասում առաջացրին ամբողջ աշխարհում։ «Ինչ տեսակետից էլ նայենք,— գրում էր հնդկական «Ինդիան էքսպրես» թերթը,—դա միջազգային իրավունքի և սովորությունների բացահայտ խախտում է... Այս ամենը ՄԱԿ-ի կանոնադրության ակնհայտ ոտնահարում է...»։*

*Ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիան գաղութարարների տրադիցիոն գործողությունների տիպիկ օրինակ է։ Դրանց իսկական պատճառները հանրահայտնի են։ Այդ գործողությունների գլխավոր շարժառիթը գաղութային դիրքերը պահպանելու, թույլ զարգացած, կախյալ ժողովուրդների հարստությունները կողոպտելու միջոցով շահույթներ կորզելու ձգտումն է։ Վերջին վեց տարիների ընթացքում (1952—1957 թթ.) Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում գործող նավթային մոնոպոլիաների շահույթները կազմել են մի հսկայական գումար՝ ավելի քան 8 միլիարդ դոլար։ ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիաները Մերձավոր Արևելքի երկրներից ամեն տարի ավելի քան մեկ միլիարդ դոլար շահույթ են կորզում (տե՛ս ժուռնալ* «Проблемы мира и социализма», № 1, 1958, стр. 36)*։ Դեղին ոսկին է, որ իմպերիալիստներին հրապուրում է դեպի Արաբական Արևելք, սնուցում է այդ շրջանում նրանց պարբերական ռազմական ավանտյուրաները։*



*Հիրավի, ամերիկյան մամուլը բացահայտ կերպով խոստովանում է, որ իմպերիալիստների ագրեսիան արաբական երկրների դեմ ձեռնարկվել է նավթային չթագադրված արքաների ցուցումով։ «Այն ամենը, ինչ ԱՄՆ-ը անում են Միջին Արևելքում, նրանք անում են նավթային մոնոպոլիաների անունից և նրանց հանձնարարությամբ»,— չի թաքցնում Նյու-Յորքի «Սանդի նյուս» թերթը։ «Պետական դեպարտամենտի քաղաքականությունը,— խոստովանում է Նյու-Յորքի «Դեյլի կոմպաս» թերթը,— սկիզբ է առնում «Ստանդարդ օյլ»-ի գրասենյակներում։ Այստեղից այն անցնում է ռազմական մինիստրություն, որտեղ հավանություն է գտնում բանակի և նավատորմի ղեկավարների կողմից։ Երբ այն հասնում է պետական դեպարտամենտին, նա դառնում է կառավարության քաղաքականությունը...»։*

*Նավթ—ահա Մերձավոր և Միջին Արևելքի վերաբերյալ ամերիկա-անգլիական իմպերիալիզմի բազմաթիվ «պլանների», «պակտերի» և «դոկտրինաների» ոգեշնչման գլխավոր աղբյուրը, ԱՄՆ-ի և Անգլիայի ագրեսիվ արտաքին քաղաքականության շարժիչը։ Ո՛չ տխրահռչակ Բաղդադի պակտը, ո՛չ էլ «Դալես-էյզենհաուերի դոկտրինա»-ն ի վիճակի չէին լիովին երաշխավորել նավթային մագնատների շահերը։ Արաբները մերժեցին դրանք՝ որպես իրենց ազատության և անկախության դեմ ուղղված իմպերիալիստական քաղաքականության արտահայտություն։ Տեսնելով դրանց ձախողումը, ամերիկյան կառավարողները գործի դրին «Ռոքֆելլերի դոկտրինա»-ն՝ ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիաների ծրագիրը, որի հիմնական դրույթները ձևակերպված էին այս տարվա սկզբին հրապարակված «ռոքֆելլերյան խմբի» աղմուկ հանած զեկուցագրի մեջ։ Այս իմպերիալիստական փաստաթղթում անսքող լկտիությամբ կոչ էր արվում հատուկ զորամասեր ստեղծել Արևելքի երկրների, այդ թվում նաև արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները ճնշելու համար՝ հանուն նավթային մոնոպոլիաների գերշահույթների ապահովման։*

*Մերձավոր Արևելքում գաղութարարների ագրեսիան՝ դա չարագուշակ «Ռոքֆելլերի դոկտրինա»-ն է գործողության մեջ։ Արաբական Արևելքի դեմ կատարված ռազմական ինտերվենցիայում շահագրգռված էին ԱՄՆ-ի բոլոր խոշորագույն մոնոպոլիաները։ Գաղութարարների ագրեսիան ձեռնտու է մեծ բիզնեսի, պատերազմի բիզնեսի մարդկանց։ Օգտվելով արաբական երկրների իրադարձություններից ԱՄՆ-ի ֆինանսական մագնատները և արդյունաբերողները ուժեղացրին սպառազինությունների մրցավազքը։ Ամերիկյան բուրժուական թերթերը, որոնք բոլորը ծառայում են մոնոպոլիաների շահերին, չէին թաքցնում իրենց բավականությունը ստեղծված նոր միջազգային իրա-*

դրության առթիվ և նշում էին, որ ճգնաժամն Արաբական Արևելքում կարող
է խթան ծառայել ամերիկյան էկոնոմիկայի աշխուժացման համար և վերաց-
նել խորացող տնտեսական ճգնաժամի վտանգը։ Նրանք ցինիկորեն գրում են
լարվածությունը շարունակելու ցանկալիության մասին, որովհետև այդ են
պահանջում ամերիկյան միլիոնատերերը։ Նրանցից շատերը չեն թաքցնում, որ
ամերիկյան զինվորը ոտք դրեց Լիբանանի հողը, որովհետև ԱՄՆ-ի մոնոպո-
լիաները վախենում են կորցնել միջին արևելյան նավթից ստացվող իրենց
շահույթները։ Եվ ինչպիսի՜ շահույթներ։ Ներդրված ամեն մեկ դոլարի դիմաց
ամերիկյան նավթարդյունաբերողները ստանում են չորս դոլար։

Սովետական Միությունը, որ շարունակ հանդես է գալիս հանուն ամբողջ
աշխարհի խաղաղության և երկրների խաղաղ գոյակցության, վճռականորեն
հանդես եկավ անգլո-ամերիկյան ագրեսիան կանխելու և խաղաղությունն
ապահովելու իր բազմաթիվ առաջարկություններով ու կոնկրետ միջոցառում-
ներով։ Այն բանից հետո, երբ ամերիկյան և անգլիական դիվանագիտության
մանևրների հետևանքով Անվտանգության Խորհրդի աշխատանքը խափանվեց,
Սովետական Միության Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովն
առաջարկեց Մերձավոր Արևելքում ստեղծված կոնֆլիկտը խաղաղ կարգավո-
րելու շտապ միջոցներ ձեռնարկելու համար հրավիրել ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Անգ-
լիայի, Ֆրանսիայի և Հնդկաստանի կառավարությունների ղեկավարների խոր-
հրդակցություն՝ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարի մասնակցությամբ։ Սակայն
ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները սկզբում ձգձգեցին և ապա ուղղակի
վիժեցրին այդպիսի խորհրդակցության հրավիրումը և շարունակեցին զորքերի
կուտակումը Մերձավոր և Միջին Արևելքում, դրանով իսկ ահավոր վտանգ
ստեղծելով համընդհանուր խաղաղության համար։

Այդ օրերին «Պրավդա»-ն գրում էր. «Մարդկությունն ապրում է իր պատ-
մության ամենապատասխանատու ժամերից մեկը։ Աշխարհը հասցված է
ղեկտի եզրին։ Զինված ինտերվենցիան, որ սանձազերծեցին ԱՄՆ-ը Լիբա-
նանում, իսկ այնուհետև Անգլիան՝ Հորդանանում, զենքով Իրաք և Արաբական
Արևելքի մյուս երկրները ներխուժելու սպառնալիքը՝ այս ամենը հանգեցնում
են խիստ վտանգավոր հետևանքների և կարող են առաջ բերել այնպիսի շղղ-
թայաձև ռեակցիա, որը դադարեցնել այլևս անհնարին կլինի»։

Սոցիալիզմի հզոր լագերի պետությունները, գաղութակալության լուծը
թոթափած Ասիայի և Աֆրիկայի երկրները, ամբողջ աշխարհի բոլոր խաղա-
ղասեր մարդիկ վճռականորեն դատապարտեցին ամերիկա-անգլիական զին-
ված ագրեսիան Արաբական Արևելքում։ Այդ վճռականությունը, մասնավորա-
պես իր հատուկ արտահայտությունը գտավ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նա-
խագահ Ն. Ս. Խրուշչովի և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նախա-
գահ Մաո Ցզե-դունի հանդիպման մասին սովետա-չինական վերջին կոմյու-
նիկեում, որում պահանջվում էր անհապաղ դադարեցնել զինված ագրեսիան և
ամերիկա-անգլիական զորքերը դուրս բերել Լիբանանից և Հորդանանից։ «Ալ-
Ահրամ» եգիպտական թերթը սովետա-չինական կոմյունիկեն անվանեց «խա-
ղաղության և խաղաղ գոյակցության նոր կոչ»։ Բուրժուական բազմաթիվ թեր-
թեր, որոնք սոցիալիստական լագերի նկատմամբ ամենևին էլ համակրանք
չեն տածում,ստիպված էին արձանագրել, որ Պեկինում հրապարակված կոմ-
յունիկեն «խաղաղության մանիֆեստ է»։

Զինաթափման և միջազգային համագործակցության Ստոկհոլմի համաշ-



խարհային կոնգրեսի մասնակից ավելի քան 70 երկրների ներկայացուցիչնե-
րը միահամուռ կերպով ընդունեցին բանաձև, որն իմպերիալիստական տերու-
թյուններից պահանջում էր անհապաղ դադարեցնել ագրեսիան ընդդեմ արա-
բական ժողովուրդների։

Խաղաղասեր ուժերի հուժկու բողոքի և արաբական երկրների ժողովուրդ-
ների տված միահամուռ հակահարվածի հետևանքով ագրեսորները օգոստոսի
սկզբին ստիպված էին դադարեցնել Մերձավոր Արևելքում ռազմական գոր-
ծողությունների ընդլայնումը, ագրեսիան սահմանափակել Լիբանանի ու Հոր-
դանանի շրջանակներում և սկսեցին մանևրել փրկելու համար իրենց «հեղի-
նակությունը»։ Զինված արշավանք սկսելով Իրաքի ռեսպուբլիկան ոչնչացնելու
նպատակով, ԱՄՆ-ը և Անգլիան ստիպված էին ճանաչել նրան։

Սովետական Միության պահանջով հրավիրվեց ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբ-
լեայի արտակարգ սեսիա։ ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարություններն այլևս չէին
կարող հրաժարվել ՄԱԿ-ի արտակարգ հատուկ սեսիա հրավիրելուց և այնտեղ
Արաբական Արևելքում իմպերիալիստների ագրեսիան կանխելու մասին Սո-
վետական կառավարության պահանջը քննարկելուց։ ՄԱԿ-ի արտակարգ հա-
տուկ սեսիայի հրավիրումը հրատապ էր դարձել իրոք արտակարգ հանգա-
մանքների՝ արաբական երկրների դեմ ամերիկա-անգլիական զորքերի ինտեր-
վենցիայի պատճառով, որը սպառնալիքի տակ դրեց ընդհանուր խաղաղու-
թյունը և միջազգային անվտանգությունը։ Աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ
այդ օրերին միայն մի բան էին ուզում՝ վերջ տալ ագրեսիային և պատերազմի
վտանգին։

Հանդես գալով սեսիայում ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը փորձեց ար-
դարացնել ագրեսոր պետությունների քաղաքականությունը Մերձավոր և Մի-
ջին Արևելքի երկրներում։ Նա նույնիսկ հայտարարեց, թե ԱՄՆ-ը այսուհետև
նույնպես իրենց զորքերը կուղարկեն ուրիշ երկրներ՝ ի պատասխան այդ մա-
սին «օրինական խնդրանքի»։ Նա իր ելույթում շատ խոսեց այդ երկրների տըն-
տեսական զարգացման հարցի մասին։ Հատկանշական է, որ նրա ելույթի այդ
մասը նախօրոք աղմկալի ռեկլամվում էր ամերիկյան մամուլի կողմից։ Անդ-
րադառնալով դրան «Պրավդա»-ն օգոստոսի 15-ի իր առաջնորդող հոդվածում
գրում էր. «Բայց հարց է ծագում, թե ԱՄՆ-ի և Անգլիայի որոշ շրջաններ ինչո՞ւ
են ձգտում Գլխավոր Ասամբլեայի և համաշխարհային հասարակայնության
ուշադրությունը տնտեսական օգնության հարցերի վրա կենտրոնացնել հենց
այժմ։ Միանգամայն պարզ է, որ դա արվում է՝ նպատակ ունենալով Միավոր-
ված Ազգերի Կազմակերպության ուշադրությունը շեղել գլխավոր հարցի՝ Լի-
բանանից և Հորդանանից օտարերկրյա զորքերն անհապաղ դուրս բերելու
հարցի լուծումից»։

Մեկնաբանելով ամերիկյան քաղաքականությունը, «Նյու-Յորք ուորլդ տե-
լեգրաֆ էնդ սան» թերթը խոստովանում էր. «ԱՄՆ-ի պաշտոնական անձինք
գիտակցել են, որ նախկին քաղաքականությունը ձախողվել է, որ էյզենհաուե-
րի դոկտրինան սխալ է, իսկ Բաղդադի պակտը իր սկզբնական ձևով մեռած է,
այնպես, ինչպես Իրաքի նախկին քաղաքական ղեկավարները, որոնց վրա
Արևմուտքը այդքան մեծ հույսեր էր դրել։ Բոլոր փորձերը սանձահարելու ա-
րաբական նացիոնալիստական շարժումը՝ անհաջողությամբ վերջացան։ Դրա
համար Միացյալ Նահանգները Անգլիայի օժանդակությամբ հուսով էին Մոսկ-

վայից հեռու պահել այն, ինչը էյզենհաուերը իր ելույթում անվանեց «արաբական նացիոնալիզմի մեծ վերելք»»։

Արաբական Արևելքի երկրների հասարակայնությունը էյզենհաուերի առաջադրած «ծրագիրը» գնահատեց որպես ամերիկյան նավթային մոնոպոլիաների շահերը պաշտպանելու նպատակին ուղղված ծրագիր։ Այն վեց կետերը, որոնք իր «ծրագրում» առաջարկեց էյզենհաուերը, իրականում նշանակում են պայքար արաբական ազատագրական շարժման դեմ, այդ շրջանում իմպերիալիստական դիրքերի ամրապնդում, արաբական երկրների բնական հարստությունների կողոպուտի շարունակում։ Մեկնաբանելով էյզենհաուերի ելույթը Դամասկոսի «Ան-Նասր» թերթը գրում էր. «էյզենհաուերի ճառում պարունակվող վեց կետերը վկայում են, որ ԱՄՆ-ը ձգտում են ՄԱԿ-ը օգտագործել որպես վարագույր՝ արաբական երկրների գործերին ամերիկյան միջամտությունը քողարկելու համար։ ԱՄՆ-ը և Անգլիան ձգտում են օկուպացումը հավերժացնել հանուն նավթային մոնոպոլիաների շահերի»։

ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի արտակարգ սեսիայում հայտարարեց, որ Լիբանանում և Հորդանանում ԱՄՆ-ի և Անգլիայի զինված ինտերվենցիայի իսկական պատճառների հարցում համաշխարհային հասարակական կարծիքը մոլորեցնելու իրենց փորձերում այդ երկրների պետական գործիչների ո՛չ մի փաստարկ, ո՛չ մի ճիգ չեն կարող թաքցնել արաբական ժողովուրդների դեմ ԱՄՆ-ի և Անգլիայի ոչնչով չհրահրված զինված ինտերվենցիայի խայտառակ փաստը։

Սովետական Միությունը բանաձևի իր առաջարկած նախագծում պահանջում էր անհապաղ անգլո-ամերիկյան զորքերը դուրս բերել Հորդանանից և Լիբանանից և ՄԱԿ-ի դիտորդներ ուղարկել Մերձավոր Արևելքի երկրները՝ այնտեղ հսկելու որոշման կատարմանը։ Սակայն սովետական առաջարկին հակադրվեց բանաձևի այսպես կոչված նորվեգական նախագիծը, որը թելադրել էին ագրեսոր պետությունների դիվանագետները, և որը փաստորեն արդարացնում էր նրանց ագրեսիան։ Այս նախագծի նպատակն էր մոլորեցնել Ասամբլեայի մասնակիցներին և փաստորեն ինտերվենտների զորքերի դուրս բերման հարցի լուծումը թողնում էր իրենց՝ ագրեսորների հայեցողությանը։ Արևմտյան մի ժուռնալիստի արտահայտությամբ «Ռոքֆելլերն ավելի լավ բան չէր ցանկանա, քան բանաձևի նորվեգական նախագիծն է»։

Մեկ շաբաթվա ընթացքում ամերիկյան և անգլիական ներկայացուցիչներն օգտագործեցին քաղաքական ճնշման բոլոր միջոցները, որպեսզի ագրեսիվ բլոկներում ԱՄՆ-ի հետ կապված երկրների պատվիրակություններին ստիպեին պաշտպանելու «նորվեգական» բանաձևը։ Այդ ճիգերն ապարդյուն անցան։ Նրանք տեսան, որ չեն կարողանա հավաքել բանաձևը անցկացնելու համար անհրաժեշտ ձայների 2/3-ը։ Ասիայի և Աֆրիկայի շատ երկրներ վճռականորեն դեմ արտահայտվեցին նորվեգական նախագծին։ Նորվեգական բանաձևի բացահայտ ձախողումը Դալեսին ստիպեց շտապփույթ մեկնել Վաշինգտոն պրեզիդենտի հետ խորհրդակցելու և իրենց համար ստեղծված խայտառակ վիճակից ելք գտնելու համար։

Բայց մի բան արդէն պարզ էր, որ ՄԱԿ-ում ներկայացված պետությունների ճնշող մեծամասնությունը դատապարտում էր անգլո-ամերիկյան զինված ուժերի ներխուժումը Մերձավոր Արևելք։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Նոր Զելանդիայի, Ավստրալիայի և Իսրայելի պատվիրակություններից բացի, ոչ ոք բացահայտ կերպով հանդես չեկավ ինտերվենցիայի պաշտպանությամբ։ Դա փաստորեն ֆիասկո էր ագրեսորների համար։ Ահա թե ինչու ԱՄՆ-ը և Անգլիան ստիպված էին ձևացնել, թե իրենց ձեռնտու է արաբական տասը երկրների (Իրաքի, Հորդանանի, Լիբանանի, Լիբիայի, Մարոկկոյի, Սաուդյան Արաբիայի, Սուդանի, Թունիսի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի և Եմենի) առաջարկած բանաձևի նախագիծը։



Արաբական երկրների առաջարկած նախագծով Ասամբլեայի հանձնարարությամբ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարը պետք է անհապաղ խորհրդակցի շահագրգռված պետությունների հետ՝ Լիբանանից և Հորդանանից օտարերկրյա զորքերը դուրս բերելու համար։ Նախագիծն արաբական պետություններին առաջարկում է Արաբական լիգայի պակտի հիման վրա ամրապնդել փոխադարձ կապերը, ելնելով միմյանց անկախությունը, սուվերենությունը և պետական կարգը հարգելու, ներքին գործերին չմիջամտելու սկզբունքից։ Այնուհետև նրանում բոլոր երկրներին կոչ է արվում ոչ թե խոսքով, այլ գործով ղեկավարվել խաղաղ գոյակցության հայտնի հինգ սկզբունքներով։ Բանաձևի նախագիծը նախատեսում է, որ 1958 թվականի սեպտեմբերի 30-ից ոչ ուշ Գլխավոր քարտուղարը պետք է զեկուցագիր ներկայացնի իրերի դրության մասին։

Արաբական երկրների բանաձևն ընդունվեց միաձայն։ ԱՄՆ-ը և Անգլիան քվեարկեցին Լիբանանի և Հորդանանի տերիտորիայից զորքերի դուրս բերումը պահանջող բանաձևի օգտին ոչ թե նրա համար, որ նրանք գոհ էին այդ որոշումից, այլ այն պարզ պատճառով, որ ագրեսորների համար ուրիշ ելք չկար։

Ընդունված բանաձևը ամերիկյան և անգլիական իմպերիալիստների բարոյա-քաղաքական պարտության համոզիչ վկայությունն է, Լիբանանում և Հորդանանում իրենց ագրեսիվ գործողությունների համար հավանություն ստանալու նպատակով նրանց փորձերի բացահայտ ձախողումը։ Դա խաղաղության և ազգային անկախության ուժերի հաղթանակն է, որոնք պահանջում էին դադարեցնել ագրեսիան և ինտերվենտների զորքերը դուրս բերել Արաբական Արևելքից։ «Արաբական երկրների բանաձևի նշանակությունն այն է,— գրում է «Ալ-Ախբար» թերթը,— որ նա պահանջում է Մերձավոր Արևելքի պրոբլեմների լուծումը թողնել այդ պետություններին, որը նշանակում է՝ «Ձեռքներդ հեռու Արաբական Արևելքից»»։

ԱՄՆ-ին և Անգլիային չհաջողվեց նաև պառակտել արաբական երկրներին, նրանց ուղղել միմյանց դեմ, ինչի վրա հույս էին դրել ագրեսորները։ Լիբանանում և Հորդանանում ամերիկա-անգլիական ագրեսիայի հարցի քննարկման հետևանքով արաբական երկրներն ավելի սերտորեն համախմբվեցին և միասնական ճակատով հանդես եկան ընդդեմ իմպերիալիզմի։

«Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթի մեկնաբան Ջոզեֆ Օլսոպը կատաղի չարությամբ ստիպված էր խոստովանել, որ «Միջին Արևելքում ամերիկյան քաղաքականությանը ջախջախիչ հարված է հասցված», որ այն «տոտալ պարտություն է կրել»։ Այս անգամ Օլսոպը չի սխալվում։ Ամերիկյան արտաքին քաղաքականությունը սկանդալային պարտություն կրեց։ ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստների փորձերը խանգարելու արաբական ժողովուրդներին՝ պաշտպանելու իրենց ազգային անկախությունը և միասնությունը, խայտառակ կերպով ձախողվեցին։ Գաղութարարներին չհաջողվեց զենքի ուժով իրենց կամքը պարտադրել արաբական ժողովուրդներին։ Գլխավոր Ասամբլեայի արտակարգ սեսիան փաստորեն վերածվեց ագրեսորների նկատմամբ միջազգային դատա-

թանի։ Ասամբլեան դատապարտեց ագրեսորներին։ Ասամբլեայի որոշումը ար-
տացոլեց ժողովուրդների կամքը, որոնք պահանջում են Լիբանանից և Հորդա-
նանից շուտափույթ կերպով դուրս բերել օտարերկրյա զորքերը։

Իրենց գոհունակությունը հայտնելով Ասամբլեայի որոշման առթիվ,
խաղաղասեր ուժերը, սակայն, հասկանում են, որ իմպերիալիստական
ինտերվենցիայի հետևանքով ստեղծված ճգնաժամը դեռ շարունակվում է։
Ավելին։ Ամերիկյան իմպերիալիզմը միջազգային լարվածությունը խորացնելու
նպատակով զինված ուժերի մեծ միավորումներ է կենտրոնացնում Չինական
Ժողովրդական Ռեսպուբլիկայի սահմաններին՝ Տայվան, Կուեմոյ և Մացզու
կղզիներում, բռնել է չին մեծ ժողովրդի դեմ ռազմական պրովոկացիաների
ուղին։ Այդ ՛լկտի ոտնձգությունները ուղղված են չին ժողովրդի ազատության
և անկախության դեմ և սպառնում են աշխարհի խաղաղությանը։

Քողարկվելով Լիբանանից և Հորդանանից զորքերը դուրս բերելու հնարա-
վորության մասին խոսակցություններով, ագրեսորներն իրենց զինված ուժե-
րին ուղղակի հակառակ հրամաններ են տալիս։ Հոգևարքի մեջ գտնվող Բաղ-
դադի պակտում մնացած երկրներին՝ Թուրքիային, Իրանին և Պակիստանին
հրահրում են ուժեղացնելու ռազմական պատրաստությունները։ ՄԱԿ-ի Գլխա-
վոր քարտուղար Համերշելդի առաջին իսկ քայլերը, որոնք ձեռնարկված են
Գլխավոր Ասամբլեայի բանաձևի իրականացման նպատակով, հանդիպում են
ագրեսորների և նրանց կամակատարների բացահայտ սաբոտաժին։ Հուսեյն
Թագավորը հայտարարում է, որ անգլիական զորքերը Հորդանանում կմնան
այնքան ժամանակ, մինչև որ նա ի վիճակի կլինի կատարելու իր խնդիրները։
Այդ խնդիրները, որ Հուսեյնը չի կարողանում լուծել առանց անգլիական զոր-
քերի, իհարկե գաղտնիք չեն. դա դաժան տեռորն է, ազգային-ազատագրական
շարժման ճնշումը։ Հորդանանյան հայրենասերների պայքարի վերելքի պայ-
մաններում, երբ այդ մարիոնետի իշխանությունը պահպանվում է միայն ու
միայն օտարերկրյա սվիններով, նրա այդ հայտարարությունն ինտերվենցիան
հավերժացնելու ցանկության արտահայտություն է։

Արաբական երկրների անկախությանը սպառնացող վտանգը առաջվա
նման դեռ գոյություն ունի, քանի դեռ ամերիկյան և անգլիական զինվորները
չեն հեռացել արաբական երկրներից, տրորում են արաբական հողը, զինված
ուժի և սանձարձակ տեռորի միջոցով ճնշում Հորդանանի և Լիբանանի ժողո-
վուրդների հայրենասիրական ուժերին։

Ի պատասխան ինտերվենտների և նրանց կամակատարների նոր մանևրնե-
րի ու դավադրությունների, արաբական ժողովուրդները և ամբողջ աշխարհի
խաղաղասեր ուժերը կրկնապատկում են իրենց զգոնությունը։ Այս օրերին
Արաբական Արևելքում լայն թափ է ստացել ժողովրդական շարժումը Լիբա-
նանից և Հորդանանից ամերիկյան և անգլիական զինված ուժերը դուրս բերե-
լու մասին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի արտակարգ հատուկ սեսիայի որո-
շումները ճշտորեն կատարելու համար։ Արաբական հասարակայնությունը պա-
հանջում է, որպեսզի անհապաղ միջոցներ ձեռնարկվեն ինտերվենտների զոր-
քերը շուտափույթ դուրս բերելու ուղղությամբ, մանավանդ որ արդեն ինտեր-
վենտները ձգտում են թեկուզ անորոշ ժամանակով ձգձգել ՄԱԿ-ի որոշումնե-
րի կենսագործումը։ Իհարկե, ասել է ՍՍՌՄ արտաքին գործերի մինիստր Ա.
Գրոմիկոն, Ասամբլեան լավ որոշում է ընդունել։ Բայց բավական չէ լա՛վ որո-



շում ընդունելը, հարկավոր է դեռ ապահովել, որ դա կենսագործվի և այն էլ
արագորեն։ Հարկավոր է թույլ չտալ նրա կատարման ոչ մի ձգձգում։

Վերջին իրադարձությունները կրկին հաստատում են ՍՄԿՊ XX հա-
մագումարի այն դրույթը, որ «քանի դեռ երկրագնդի վրա մնում է կապիտա-
լիզմը, կապիտալիստական մոնոպոլիաների շահերը ներկայացնող ռեակցիոն
ուժերը այսուհետև ևս կձգտեն պատերազմական ավանտյուրաների և ագրե-
սիայի, կարող են փորձել պատերազմ սանձազերծել։ Բայց պատերազմների
ճակատագրական անխուսափելիություն չկա։ Այժմ կան հասարակական ու քա-
ղաքական հզոր ուժեր, որոնք լուրջ միջոցներ ունեն, որպեսզի թույլ չտան
պատերազմի սանձազերծում իմպերիալիստների կողմից, իսկ եթե նրանք
փորձեն պատերազմ սկսել՝ խորտակիչ հակահարված տան ագրեսորներին,
վիժեցնեն ավանտյուրիստական պլանները»։

Այդ իրադարձությունները նաև ցույց տվին, որ այլևս հնարավոր չէ միլիո-
նավոր մարդկանց ճնշման ու հարկադրանքի տակ պահել հանուն Նյու-Յորքի,
Լոնդոնի և Փարիզի մի բուռ մարդկանց բարօրության, որոնք միլիարդների շա-
հույթներ են ստանում։ Այժմ ժողովուրդներն իրենք են վճռում իրենց բախտը,
հակահարված տալով իմպերիալիստների ագրեսիվ ոտնձգություններին։ Սո-
ցիալիզմի լագերի երկրների և, առաջին հերթին, ՍՍՌՄ-ի և Չինաստանի ժո-
ղովրդական Ռեսպուբլիկայի բռնած վճռական դիրքի, Ասիայի և Աֆրիկայի
խաղաղասեր երկրների և աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց համառ պայքարի
շնորհիվ իմպերիալիստներին նորից չհաջողվեց պատերազմ սանձազերծել։
Պատերազմը իր ճանապարհին հանդիպեց խաղաղասեր ուժերի անհաղթահա-
րելի դիմադրությանը։ Աշխարհի խաղաղասեր ուժերը կարևոր հաղթանակ նվա-
ճեցին։

---

# ՄԻ ՀԱՋՈՂ ԱՇԽԱՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վերջին տարիներին, մեկը մյուսի հետևից, լույս տեսան մի շարք գրքեր հայ ականավոր ռևոլյուցիոներների կյանքի ու գործունեության վերաբերյալ։ Մի կողմ թողնելով այդ գրքերում եղած թերությունները ու բացերը, չի կարելի, սակայն, չնշել, որ դրանք, ընդհանուր առմամբ, լուրջ ներդրում են սովետահայ պատմա-ռևոլյուցիոն գրականության մեջ։ Լուսաբանելով այս կամ այն գործչի կյանքն ու գործը, այդ գրքերը դրանով իսկ ընթերցողներին հնարավորություն են տալիս ճանաչելու ո՛չ միայն տվյալ անհատին, այլև պատմական այն ժամանակաշրջանը, որի պայմաններում գործել է վերջինս։

Այդ իսկ տեսակետից Հովհ. Ինճիկյանի «Բոգդան Կնունյանց» աշխատությունը* մի շնորհակալ գործ է, մանավանդ, որ մեր գրականության մեջ լենինյան տիպի ականավոր այդ գործչի կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունը բազմակողմանիորեն չի լուսաբանվել։

Ռուսով, Ռուբեն, Բակինեց, Կավկազեց, Բ. Պետրով, Բ. Պետրով-Ռադին, Բ. Ռադին, Բ. Ռուբին ծածկանունների տակ ցարիզմի դժնդակ պայմաններում ստիպված էր թաքնվել ու գործել Բոգդան Կնունյանցը։ Իր մեջ մարմնավորելով կոմունիստ գործչի ազնիվ հատկությունները ու ռևոլյուցիոն ոգին, Կնունյանցը նվիրաբար ծառայեց բանվոր դասակարգի ազատագրության գործին։ Տարիներ շարունակ Կնունյանցը աննկուն աշխատանք էր տանում աշխատավոր զանգվածների շրջանում, կազմակերպելով նրանց պայքարը շահագործողների դեմ։ Նա Անդրկովկասի ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների հիմնադիրներից ու ղեկավարներից էր, ընդհանրապես, Բաքվի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ոգեշնչողներից ու կազմակերպիչներից, մասնավորապես։

Լինելով առաջինը, Հ. Ինճիկյանը իր մենագրության մեջ կարողացել է բազմակողմանիորեն լուսաբանել ականավոր գործչի կյանքը, նրա ռևոլյուցիոն և գրական-պրոպագանդիստական գործունեությունը։ Դրան նա հասել է բավականին քրտնաջան, գիտական պրպտումներով հարուստ աշխատանքով։ Վերջին հանգամանքն էլ պայմանավորել է գրքի հաջողությունը։ Այդ հաջողությանը նպաստել է նաև, մի կողմից, փաստական հարուստ նյութի ընդգրկումը, իսկ մյուս կողմից՝ այն, որ իր գիրքը շարադրելիս հեղինակը, հիմնականում, դուրս է եկել շաբլոնից և հարցերը լուսաբանելիս հանդես է բերել ինքնուրույնություն։ Կնունյանցի կյանքը լուսաբանելիս Հ. Ինճիկյանը տալիս է նրա հետ առնչվող հիմնական դեպքերի շարադրանքը, սակայն գրքում պարտիական քաղաքական այդ ընդհանուր իրադարձությունների մեջ ականավոր ռևոլյուցիոները երբեք չի կորչում, ընդհակառակը, այդ ֆոնի վրա նա ավելի է փայլում որպես մեծ մասշտաբի պարտիական գործիչ։

Հետաքրքրությամբ են կարդացվում Կնունյանցի մանկության, պատանեկության և ուսանողական տարիներին վերաբերող էջերը։ Ավարտելով Շուշիի ռեալական ուսումնարանի լրացուցիչ դասարանի ընդհանուր բաժանմունքը և ապա մեկ տարի աշխատելով Թիֆլիսում՝ երիտասարդ Կնունյանցը 1896 թվականին գալիս է Պետերբուրգ և ընդունվում Տեխնոլոգիական ինստիտուտի քիմիական ֆակուլտետը։ Գրքում ընդգծված է, որ Կնունյանցի ուսումնառության տարիները զուգադիպում են Պետերբուրգում բարձրացող քաղաքական բուռն վերելքի ժամանակաշրջանին, վերելք, որն իր հորձանուտի մեջ է քաշում նաև տաղանդավոր երիտասարդ, 18-ամյա Կնունյանցին։ Այստեղ Կնունյանցը ընթանում է ռևոլյուցիոն ուսանողության առաջին շարքերում, 1900 թվականին Պետերբուրգի ռևոլյուցիոն երիտասարդության պատվիրակության կազմում նա մեկնում է Բեռլին՝ մասնակցելու միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ Վիլհելմ Լիբկնեխտի թաղմանը։

1901 թվականին, որպես Պետերբուրգի Կազանսկի հրապարակում տեղի ունեցած ռևոլյուցիոն ցույցի կազմակերպիչներից և մասնակիցներից մեկը, Կնունյանցը երկրորդ անգամ վտարվում է ինստիտուտից։ Նա գալիս է Բաքու և ամբողջությամբ նվիրվում պարտիական աշխատանքին։ Փաստական հարուստ նյութը հեղինակին հնարավորություն է տվել բազմակողմանիորեն լուսաբանել Կնունյանցի կյանքի այդ շրջանը, որն իրավամբ պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների կատարած անդադրում և անձնվեր աշխատանքի մի ժամանակաշրջան է։ Այս բաժնում երևում է Կնունյանց պրոպագանդիստն ու պարտիական կազմակերպիչը. նա հանդես է գալիս իբրև ՌՍԴԲՊ Բաքվի կազմակերպության հիմնադիրներից ու ղեկավարներից մեկը։

Կնունյանցը «Հայ սոցիալ-դեմոկրատների Միության» կազմակերպիչներից էր։ Ընդգծելով այդ՝ հեղինակը նշում է այն աշխատանքը, որ Ստ. Շահումյանի, Արշ. Զուրաբյանի, Ս. Խանոյանի և պարտիական այլ գործիչների հետ կատարել է Կնունյանցը այդ միության կյանքում։

1902 թվականի երկրորդ կեսից սկսած, Անդրկովկասում անջատ-անջատ գործող սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները միավորելու հարցը դառնում է ավելի հրատապ։ Այդ էին պահանջում բանվոր դասակարգի վերելք ապրող ռևոլյուցիոն շարժումները, դրանք ավելի կազմակերպված ղեկավարելու անհրաժեշտությունը և երկրամասի սոցիալ-դեմոկրատների առջև ծառացած խնդիրների լուծումը։ Այդպիսի միավորման համար արդեն կային նախադրյալներ, արդեն գործում էին Բաքվի, Թիֆլիսի և Բաթումի կոմիտեները, ինչպես նաև սոցիալ-դեմոկրատական շատ խմբակներ Անդրկովկասի զանազան վայրերում։ 1903 թվականի սկզբներից միավորման համար Բաքվի կոմիտեն նախապատրաստական նշանակալից աշխատանք է տանում։ Այդ գործում իր արժանի լուման է ներդնում նաև Բ. Կնունյանցը։ Նույն թվականի մարտին Թիֆլիսում կայացած Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների I համագումարում նա ընտրվում է ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտեի անդամ։ Շուտով Կնունյանցը գնում է Պետերբուրգ, իսկ այնտեղից՝ արտասահման, պարտիայի II համագումարին մասնակցելու համար։

Մեծ ուշադրությամբ են ընթերցվում աշխատության այն էջերը, որոնք վերաբերում են Կնունյանցի ընտանիքին։ Մենագրության մեջ ընդհանուր գծերով բացահայտված է ռևոլյուցիոն մի ամբողջ ընտանիքի գործունեությունը։ Բոգդան Կնունյանցի հետ միասին պարտիական-կազմակերպական նշանակալից աշխատանք էին կատարում նրա կինը՝ Ելիզավետա Գոլիկովան (Լիզա Կնունյանցը), եղբայրները՝ Տիգրանն ու Լյուդվիգը, քույրը՝ Փառանձեմ Ռիզելը (Ֆարո Կնունյանցը), Լյուդվիգի կինը՝ Բաբիկովան։ 1902 թվականի մայիսմեկյան ռևոլյուցիոն ցույցի կապակցությամբ Բաքվում նրանք բոլորը ձերբակալվում են։

Մենագրության ուշագրավ և արժեքավոր բաժիններից մեկը պարտիայի II համագումարում Կնունյանցի կատարած աշխատանքի մանրամասն լուսաբանումն է։ Ամբողջ հասակով ընթերցողին է ներկայանում լենինյան տիպի մի գործիչ, որը համագումարում քննարկված հարցերում կանգնում է լենինյան դիրքերում և վճռական ելույթներ ունենում պարտիան կազմալուծողների դեմ։ Արխիվային հարուստ նյութերի, մասնավորապես II համագումարի արձանագրություններից կատարված քաղվածքների միջոցով հեղինակը ցույց է տվել Կնունյանցի պայքարը հանուն լենինյան իսկրայական ուղղության հաղթանակի։ Համագումարում նա հանդես էր գալիս Ռուսով անվան տակ. «ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի 21 նիստում,— գրում է Հ. Ինճիկյանը,— 45 անգամ Ռուսովը ելույթ է ունեցել, տեղեկանքներ տվել և բանաձևեր առաջարկել» (էջ 63)։ Համագումարում կատարած նրա աշխատանքի մասին ավելի հստակ պատկերացում կազմելու համար տեղին է այստեղ ցիտել Ռուսովի ճառից, որն ամբողջությամբ բերել է Հ. Ինճիկյանը իր գրքում։ Այդ ճառը, ինչպես իրավացիորեն արժեքավորել է հեղինակը, մի մեղադրական էր մարտովականների հասցեին՝ ընդդեմ նրանց կազմակերպական օպորտունիզմի։ Վերջիններիս մեղադրելով դեպի պարտիայի վերադաս օրգանների ընտրությունները ցուցաբերած քաղքենիկան մոտեցման մեջ, Ռուսովը ասում էր. «Եթե մենք այստեղ հավաքվել ենք ոչ թե փոխադարձաբար հաճոյական ճառեր ասելու, ոչ թե քաղքենիական քնքշությունների, այլ պարտիա ստեղծելու համար, ապա մենք ոչ մի կերպ չենք կարող համաձայնել այդ տեսակետի հետ։ Մենք պաշտոնատար անձնավորությունների ընտրության հարցի առջև ենք կանգնած, և այստեղ չի կարող հարց լինել այս կամ այն չընտրված ընկերոջ անվստահության մասին, այլ միայն գործի օգտի մասին, և այն մասին, թե ընտրվող անձը համապատասխանո՞ւմ է այն պաշտոնին, որի համար ընտրվում է։ Ահա թե ինչու ես ընկերներին եռանդագին կոչ եմ անում չմոլորվել քաղքենիական քնքուշ ճառերով՝ չընտրվածների նկատմամբ անվստահության մասին, այլ բոլոր ընտրությունների ժամանակ, ինչպես և բոլոր դեպքերում, կանգնել պարտիայի շահերի, ընդհանուր գործի շահերի տեսակետի վրա» (էջ 86—87)։ Կնունյանցը նույնպիսի դիրքորոշում է ունեցել համագումարում նաև մյուս հարցերը քննարկելիս։ Վ. Ի. Լենինը Կնունյանցի այս ճառը բարձր է գնահատել։ Գրքում մեջ են բերված առաջնորդի խոսքերը. նա խորհուրդ էր տալիս բոլորին, «ովքեր ուզում են ինքնուրույնորեն վերլուծել պարտիական պառակտման պատճառները և գտնել նրա արմատները համա-

* Հովհ. Ինճիկյան — «Բոգդան Կնունյանց»։ Հայպետհրատ, Երևան, 1957 թ., 304 էջ։

գումարում, կարդալ և վերստին կարդալ ընկ. Ռուսովի ճառը, որի փաստարկումները փոքրամասնությունը ոչ միայն չհերքեց, այլև նույնիսկ չվիճարկեց»։

ՌՍԴԲԿ II համագումարից հետո, ինչպես հայտնի է, պարտիայի մեջ սուր պայքար սկսվեց։ Լենինյանները վճռական պայքար էին մղում մենշևիկների կազմալուծիչ, անարխիստական վարքագծի դեմ։ Լայնորեն և մանրազնին ուսումնասիրելով Կնունյանցի գործունեությունը համագումարից հետո, հեղինակը նկարագրել է նրա վճռական պայքարը պարտիայի լենինյան գծի հաղթանակի համար։ Համագումարից հետո գալով Ժնև՝ Կնունյանցը ակտիվորեն աշխատակցում է լենինյան «Իսկրա»-ի 46—51 համարներին։ Այս առիթով էլ Հ. Ինճիկյանը հանգամանորեն վերլուծում և արժեքավորում է Կնունյանցի գրչին պատկանող մի շարք հոդվածներ, որոնք տպագրվել էին «Իսկրա»-ի նշված համարներում։ Անդրադառնալով 1903 թ. օգոստոս-սեպտեմբեր ամիսներին Ժնևում Կնունյանցի կատարած աշխատանքներին՝ հեղինակը իր գրքում բերում է նաև նրա գործունեության հետ առնչվող մի ուշագրավ փաստ. կապ հաստատելով Ժնևում գտնվող հայ ուսանողների հետ՝ Կնունյանցը նրանցից ստեղծում է սոցիալ-դեմոկրատական մի խմբակ, որի հավաքույթներում նա հանդես է գալիս զեկուցումներով։

Հեղինակը հանգամանորեն ուսումնասիրել է Կնունյանցի գործունեությունը Ռուսաստանում և Անդրկովկասում II համագումարի որոշումները մասսայականացնելու և կենսագործելու ուղղությամբ։ Դրա հետ մեկտեղ գրքում առանձնապես ընդգծված է մյուս լենինյանների հետ միասին Կնունյանցի կատարած աշխատանքը պարտիայի III համագումար հրավիրելու համար։ Պարտիական աշխատանքի այս եռուն շրջանում՝ 1904 թվականի փետրվարի 15-ին, Կնունյանցը ձերբակալվում է և բանտ նետվում։ Դա նրա վեցերորդ բանտարկությունն էր։

Բայց բանտից էլ նա շարունակում է վճռական պայքարը լենինյան գծի հաղթանակի համար։ Այդ է վկայում բազմաթիվ կոչերի ու նամակների լուսաբանումը, որին հեղինակը նվիրել է իր աշխատության շուրջ 15 էջերը։

Ուշագրավ է Կնունյանցի նկատմամբ տեղի ունեցած դատական պրոցեսի նկարագրությունը։ Գրքում տրված է ո՛չ միայն պրոցեսի ընթացքը, այլև, հատկապես, դատարանում Կնունյանցի ելույթի շարադրանքն ու նրա նշանակությունը՝ որպես ցարիզմի հակաժողովրդական քաղաքականությունը մերկացնող փաստաթղթի։ Այդ հոյակապ ճառը բոլշևիկյան «Вперед» թերթը տպագրել է որպես առանձնատիպ և ուղարկել պարտիայի բոլոր կազմակերպություններին։ Իսկ Բաքվի կոմիտեն այն հրատարակել ու տարածել է առանձին գրքույկով՝ ռուսերեն, հայերեն և վրացերեն լեզուներով։

Հեղինակը լայն ուսումնասիրության առարկա է դարձրել ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Կնունյանցի պարտիական-քաղաքական և հրապարակախոսական գործունեությունը։ Հ. Ինճիկյանը ըստ արժանվույն գնահատել է այդ շրջանում Կնունյանցի կատարած աշխատանքը, հենվելով իր ձեռքի տակ եղած հարուստ փաստերի վրա։ Վերջին հանգամանքը, ընդհանրապես, ավելի է բարձրացնում գրքի նշանակությունը։ Ըստ էության գրքում ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակ Կնունյանցի ծավալած գործունեությանը հատկացված են չորս բաժիններ, շուրջ 115 էջ։ Գրքում առանձնակի ուշադրություն է դարձված Կնունյանցի կատարած ագիտացիոն աշխատանքի, նրա՝ որպես բոլշևիկ ագիտատոր-կազմակերպչի գործունեության բացահայտման վրա Անդրկովկասում, իսկ հետո, ռևոլյուցիայի բուռն վերելքի շրջանում՝ Պետերբուրգում, ուր նա եկավ 1905 թվականի օգոստոսին և կոոպտացվեց պարտիայի Պետերբուրգի կոմիտեի մեջ։

Պետերբուրգի Սովետում Կնունյանցի, որպես բոլշևիկների ներկայացուցչի կատարած աշխատանքներին հեղինակը հատուկ բաժին է նվիրել։ Այդ բաժինը կրում է «Պայքար բոլշևիկյան գծի համար Պետերբուրգի բանվորների դեպուտատների Սովետում» վերնագիրը։ Ամբողջ հասակով ընթերցողի առաջ հառնում է բոլշևիկյան սկզբունքներով գործող աննկուն մի գործիչ, որը Սովետի նիստերում անողոք քննադատության է ենթարկում մենշևիկների և էսեռների համաձայնողական քաղաքականությունը, պայքարում է բոլշևիկյան որոշումների, որպես մասսաների շահերին համապատասխանող պահանջների կենսագործման համար։ Այդ պայքարում Կնունյանցն ի հայտ է բերում տաղանդավոր հռետորի և պրակտիկ գործչի մեծ շնորհք։ «Մենշևիկների դեմ մղած այդ պայքարում,— գրում է հեղինակը,— Լենինը հենվում էր բոլշևիկների ներկայացուցիչների, գլխավորապես Բոգդան Կնունյանցի՝ որպես Սովետի գործադիր կոմիտեում բոլշևիկների Պետերբուրգի կոմիտեի ներկայացուցչի վրա» (էջ 208)։

Կնունյանցը ո՛չ միայն պրակտիկ մեծ գործիչ էր, այլև տաղանդավոր տեսաբան։ Արժեքավորելով Կնունյանցի գրական-հրապարակախոսական գործունեությունը, Հ. Ինճիկյանը անդրադարձել է նրա գրած բազմաթիվ հոդվածների ու գրքույկների լուսաբանմանը, նրա կատարած, տեսական աշխատանքներին։ Կնունյանցի ուսումնասիրության թեմատիկան ընդարձակ է և բազմազան։ Նա հոդվածներ ու գրքույկներ է գրել ազգային հարցի, պետության, պարտիայի տակտիկական ու կազմակերպական, բանվոր



դասակարգի և նրա պարտիայի դերի և այլ հարցերի շուրջը։ Կնունյանցն այն բոլշևիկներից էր, որոնք պարտիայի կազմավորման սկզբից ևեթ անողոք կռիվ հայտարարեցին բոլոր գույնի նացիոնալիստներին՝ հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի։ Աշխատության մեջ նշանակալից տեղ է տրված հիշյալ հարցի ուսումնասիրությանը, արժեքավորված է Կնունյանցի պայքարը նացիոնալիզմի դեմ՝ սկսած պարտիայի II համագումարից, որտեղ նա ջախջախիչ քննադատության է ենթարկում Բունդի նացիոնալիզմն ու սեպարատիզմը, ընդհուպ մինչև Կնունյանցի գործունեության վերջին տարիները։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի վերելքի շրջանում Կնունյանցը զբաղվում է պարտիայի և բանվոր դասակարգի տակտիկայի ու ստրատեգիայի հարցերի մշակմամբ։ Ճշտելով այդ ուղղությամբ Կնունյանցի լուրջ աշխատանքը, հեղինակը ընդարձակ կերպով շարադրել է նրա գրած մի շարք հոդվածների ու գրքույկների բովանդակությունը։ Վերջիններս մեկնաբանելու և դրանցից ընդարձակ մեջբերումներ կատարելու օգնությամբ հեղինակին հաջողվել է ընթերցողին ներկայացնել Կնունյանցի մարքսիստական ճիշտ ու հասուն տեսակետները այնպիսի հարցերում, ինչպիսիք բանվոր դասակարգի և նրա պարտիայի դերի, բուրժուական ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի, կապիտալիստական հասարակարգի անխուսափելի կործանման հարցերն էին։ Քննադատելով ռեֆորմիստների դասակարգերի հաշտեցման օպորտունիստական տեսությունը՝ Կնունյանցը նշում էր, որ «Մեզ ժամանակակից հասարակության մեջ պայքարն առանձին դասակարգերի միջև ոչ միայն չի թուլանում, այլ, ընդհակառակը, օրեցօր ավելի ու ավելի է սրվում, իր կնիքը դնելով կյանքի բոլոր կողմերի վրա։ Բուրժուազիա և պրոլետարիատ — ահա երկու հակադիր բևեռներ, որոնց շահերի շուրջը կենտրոնանում է տնտեսական և քաղաքական ամբողջ կյանքը, և որոնց պայքարը կազմում է ժամանակակից պատմությունը»,— գրում է Կնունյանցը (էջ 174)։ Մարքսիստական դիալեկտիկայի դիրքերից գնահատելով պատմության զարգացման ընթացքը և սոցիալիզմի հաղթանակի անխուսափելիությունը՝ նա նշում էր այդ գործում պրոլետարիատի և նրա ռևոլյուցիոն պարտիայի հըսկայական դերը։

1905 թվականի դեկտեմբերի 3-ին Պետերբուրգի բանվորների դեպուտատների Սովետի կազմը կալանավորվեց։ Ձերբակալվածների թվումն էր նաև Կնունյանցը։ Երկար ժամանակ բանտում պահելուց հետո ցարական դատարանը Կնունյանցին դատապարտում է ցմահ աքսորի և կալանավորների մի խմբի հետ, որի մեջ էր նաև նրա կինը, ուղարկում է Տոբոլսկի նահանգի Օբդորսկ գյուղը։ Այստեղ նա մնում է մարտից մինչև մայիսի վերջերը, իսկ հունիսի սկզբներին կնոջ հետ միասին փախչում է աքսորից։ Աշխատության մեջ տրված է փախուստից հետո Կնունյանցի կատարած աշխատանքը, մասնավորապես նրա մասնակցությունը Երկրորդ Ինտերնացիոնալի Շտուտգարդի կոնգրեսին (1907 թ. օգոստոս) և ՌՍԴԲԿ 4-րդ կոնֆերանսին «(Երրորդ համառուսաստանյան», 1907 թ. նոյեմբեր), ինչպես նաև լուսաբանված են 1908—1910 թվականներին Կնունյանցի գրած հոդվածները Բաքվում, որտեղ նա այդ տարիներին, թաքնվելով Սմբատ Ալեքսեևիչ Մարգարյան (Մարգարով) անվան տակ, աշխատում է, նախ՝ որպես նավթարդյունաբերողների համագումարի վերահսկիչ հանձնաժողովի քարտուղար, իսկ հետո՝ Բիբի-Հեյբաթի նավթային ընկերության հաշվապահ։ Այստեղ, Բաքվում, ցարական ոստիկանները գտնում են նրա հետքը և 1910 թվականի սեպտեմբերին ձերբակալում նրան։ Բաքվում, Բայիլովի բանտի հիվանդանոցում, 1911 թվականի մայիսի 14-ին, հոգնած ու հյուծված, առողջական ծանր վիճակում Կնունյանցը վախճանվում է սրտի կաթվածից։

Ոչ մի մտքում չունենալով վիճարկելու գրախոսվող աշխատության հաջողված լինելը և նրա հեղինակի կատարած բարեխիղճ ու շնորհակալ գործը, ավելորդ չենք համարում, սակայն, նշել մի քանի թերություններ, որոնք մեր կարծիքով տեղ են գտել այս մենագրության մեջ։

Հենց սկզբից նշենք, որ հեղինակին միշտ չէ, որ հաջողվում է հաղթահարել փաստական նյութը, ինչպես ասում են, դուրս գալ փաստերի տակից, մարսել դրանք։ Աշխատության մեջ կարելի է շատ էջերի հանդիպել, որոնք իրենցից ներկայացնում են այդ նյութի կուտակումը, ուր բացակայում է լուրջ վերլուծությունը, աչքի է զարնում փաստական էմպիրիզմը։ Ինքնին հասկանալի է, որ այդպիսի էջերը կարդացվում են սակավ հետաքրքրությամբ, որովհետև ընթերցողի ուշադրությանն է արժանանում ո՛չ միայն բուն նյութը, այլև նրա մատուցման ձևը։ Այստեղ մեր խոսքը քիչ է վերաբերում Բ. Կնունյանցի աշխատություններից կատարված մեջբերումներին։ Դա հեղինակը փորձում է արդարացնել նրանով, որ Կնունյանցի գրական ժառանգության մեծ մասը ընթերցող լայն մասսաներին տակավին անծանոթ է և այդ նպատակով էլ ինքը շատ է քաղվածքներ կատարում Կնունյանցի աշխատություններից։ Իհարկե, ռևոլյուցիոն գործչի մասին գրված աշխատությունը չի կարող խուսափել և չպետք է խուսափի նրա հոդվածներից ու գրքերից անհրաժեշտ մեջբերումներ կատարելուց, մանավանդ, երբ հեղինակը մտադիր է տվյալ անհատի հրապարակա-

խոսական-գրական գործունեությունը տալ առանձին բաժնով։ Մեր դիտողությունը այդ առթիվ հիմնականում ցիտատների չափի մասին է։ Հեղինակը, թող թույլ տրվի մեզ ասել, որոշ տեղերում սահմանն անցել է։ Ինչ վերաբերում է հեղինակի՝ վերը նշված պատճառաբանմանը, ապա դրա հետ համաձայնել չի կարելի, որովհետև որևէ անձնավորության մասին գրված մենագրության մեջ նրա աշխատություններից ցիտատներ են բերվում վերջինիս կյանքն ու գործը ավելի բազմակողմանի լուսաբանելու և ոչ թե լայն մասսաներին այդ աշխատությունները ծանոթացնելու համար, ինչպես այդ կարծում է Հ. Ինճիկյանը։ Վերջին հանգամանքը վաղուց ի վեր պետք է հանդիսանար ՍՄԿՊ ԿԿ-ին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի և Հայաստանի Պետական հրատարակչության երախտագետ գործը։ Բայց նշված դիտողությունն անելով, ինչպես ասվեց, մենք ոչ այնքան նկատի ունենք Կնունյանցի աշխատություններից բերված ցիտատները, որքան այս կամ այն հարցի և իրադարձության առիթով կատարված ընդարձակ քաղվածքները արխիվներից և այլ աղբյուրներից, փաստական նյութի հաճախ հանդիպող էմպիրիկ շարադրանքը, որից վեր հեղինակը հաճախ չի բարձրանում։

Բերենք մի երկու օրինակ։ Պետերբուրգի բանվորների դեպուտատների Սովետում Կնունյանցի գործունեությանը հեղինակը տրամադրել է մի ամբողջ գլուխ։ Հիմնական շեշտը դնելով հիշյալ հարցի վրա, Ինճիկյանը, սակայն, լայն տեղ է հատկացրել նաև Սովետի գործունեությանը, ընդհանրապես։ Տարվելով զանազան աղբյուրներից, մեջբերումներ կատարելու մեթոդով՝ հեղինակը իր աշխատության այդ բաժինը խճողել է ցիտատներով. 47 էջ զբաղեցնող այդ գլխում (էջ 201—249) զետեղված է 67 ցիտատ, ընդ որում դրանցից 32-ը ուղղակի խոսքի ձևով մեջ են բերված Կնունյանցի միայն մեկ աշխատությունից՝ «Բանվորների դեպուտատների առաջին Սովետը» գրքից։

Բոլորովին կարիք չկար Շտուտգարդի կոնգրեսում և ՌՍԴԲՊ 4-րդ («Երրորդ համառուսաստանյան») կոնֆերանսում քննարկված հարցերի շարադրմանը տրամադրել 7 էջ, մանավանդ որ հեղինակը գրքում չի հիշատակում, թե Կնունյանցը ինչ մասնակցություն է ցուցաբերել այս կամ այն հարցի քննարկմանը, իբրև թե՛ առաջինի, և թե՛ երկրորդի մասնակից։ Նման օրինակները շատ են։

Խոսելով Կնունյանցի կողմից իր կյանքի վերջին շրջանում՝ 1908—1910 թվականներին թույլ տրված սխալների մասին, հեղինակը բավարարվում է բոլշևիկյան մամուլի հետ միասին մենշևիկյան թերթերին նրա աշխատակցելու փաստը սոսկ նշելով և այն ընդհանուր հայտարարությամբ, թե Կնունյանցի մոտ այդ տարիներին արտահայտվել են լիկվիդատորական բնույթի տատանումներ ու սխալներ (էջ 284—285 և 290)։ Բայց թե որո՞նք են այն սխալներն ու տատանումները, որ թույլ է տվել Կնունյանցը, այդ մասին Հ. Ինճիկյանը, ըստ էության լռում է, որը և Կնունյանցի մասին ավելի թյուր տպավորություն է ստեղծում, իսկ պատկերացումն այդ սխալների մասին, կարծես թե ավելի է մեծանում, քան դրանք եղել են։ Պետք էր օրինակներով համառոտակի նշել այդ սխալներն ու տատանումները, միաժամանակ ցույց տալ, որ դրանք երբեք չեն կարող նսեմացնել Կնունյանցի կատարած ռևոլյուցիոն խոշոր աշխատանքը, նրա դերը որպես Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներից մեկի։

Աշխատության մեջ նկատելի են նաև ոճական անհարթություններ. կան նախադասություններ, որոնք հայերեն չեն հնչում, կարծես ռուսերենից թարգմանված լինեն։ Լեզվական անհարթությունը հաճախ, հեղինակի կամքից անկախ, հանգեցնում է ոչ ճիշտ մտքերի։ Ահա մեկ օրինակ։ Որպեսզի ցույց տա աշխատավորների ակտիվ մասնակցությունը Պետերբուրգի Սովետի նիստերին, հեղինակը գրում է. «Չնայած այն հանգամանքին, որ Սովետի նիստերը դռնբաց էին և տեղի էին ունենում մայրաքաղաքի մեծ դահլիճներում, այնուամենայնիվ, ցանկացողներից շատերը հնարավորություն չունեին ներկա գտնվել՝ տեղ չլինելու պատճառով» (էջ 210)։ Հ. Ինճիկյանին թվում է, թե նիստերի դռնբաց լինելու հետևանքով այնտեղ ավելի քիչ թվով մարդիկ պետք է գնային, այլապես նա հակառակը չէր կարծի, գրելով, թե չնայած դռնբաց լինելուն՝ շատ ցանկացողներ հնարավորություն չունեին ներկա գտնվելու։ Պարզ է, որ հենց նիստերի դռնբաց լինելու հանգամանքն էր դրանք դարձրել մարդաշատ և ոչ թե ընդհակառակը։ Նման և այլ տիպի լեզվական թերությունների ու սխալ ձևակերպումները աշխատության մեջ քիչ չեն։

Նշված դիտողությունները, սակայն, չեն նսեմացնում Հ. Ինճիկյանի մենագրության գիտական և քաղաքական նշանակությունը։ Այդ թերություններով հանդերձ էլ «Բոգդան Կնունյանց» աշխատությունը գիտական լուրջ գործ է և արժանի մեր ընթերցողների ուշադրությանը։

Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ԱՆՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ ԴԱՌՆ ՊՏՈՒՂՆԵՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի, ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի և Հայկական ՍՍՌ Ներքին գործերի մինիստրության Արխիվային բաժնի ջանքերով ռուսերեն լեզվով լույս է տեսել փաստաթղթերի մի ստվարածավալ ժողովածու՝ «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում» խորագրով [1]։

Այս ժողովածուի մեջ բերված են բազմաթիվ փաստաթղթեր, որոնց միջոցով ընթերցողը պատկերացում է ստանում Հայաստանի բանվորների, գյուղացիների ու զինվորների ռևոլյուցիոն պայքարի մասին՝ հանուն սովետական կարգերի հաղթանակի ու ամրապնդման։

Հրապարակված են մի շարք նոր փաստաթղթեր (№ № 112, 113, 114, 115, 174, 176, 180 և այլն), որոնք պերճախոս կերպով բացահայտում ու մերկացնում են ԱՄՆ-ի ու Անգլիայի զավթողական-գաղութատիրական պլաններն ու մտադրությունները Անդրկովկասի և Հայաստանի նկատմամբ։

Դրական պետք է համարել, որ փաստաթղթերի ժողովածուում տեղ են գտել պարտիական մի շարք որոշումներ ու կոչեր, որոնք ցույց են տալիս Կոմունիստական պարտիայի ոգեշնչող ու ղեկավարող դերը սովետական կարգերի համար մղված պայքարում։

Ընթերցողների և ուսումնասիրողների գործը հեշտացնելու համար ժողովածուն ունի կարևորագույն դեպքերի ժամանակագրություն, անվանացանկ և աշխարհագրական տեղանունների ցանկ։ Ծանոթագրությունների բաժնում ողջունելի պետք է համարել մի շարք բոլշևիկների գործունեության համառոտ բնութագրումները։

Այս բոլորի հետ միասին ժողովածուն իր մեջ պարունակում է մի շարք լուրջ սխալներ ու թերություններ, որոնք խստորեն իջեցնում են նրա քաղաքական ու գիտական մակարդակը։

Չպետք է մոռանալ, որ պատմական փաստաթղթերի ժողովածուն սկզբնաղբյուր է և նրա ամեն մի նյութը պետք է այս կամ այն հարցի վերաբերյալ ճիշտ կողմնորոշի ընթերցողին։ Ուստի փաստաթղթերն ընտրելիս պետք է խիստ ուշադիր լինել և պահանջված պատասխանատվություն հանդես բերել։ Այս կարևոր հանգամանքը շատ դեպքերում, դժբախտաբար, անտեսել են ինչպես ժողովածուն կազմողները, այնպես էլ նրա խմբագիրներ ընկ. ընկ. Ա. Մնացականյանը, Ա. Հակոբյանը և Ղ. Դալլաքյանը։ Պարզ պետք է ասել, որ նրանք մի շարք հարցերում ցուցաբերել են քաղաքական կուրություն, գիտական անբարեխղճություն։

Այդ բանն զգացվում է հենց սկզբից, ժողովածուին կցված նախաբանից, որը ավելի շուտ մի սխեմատիկ ինֆորմացիա է. մինչդեռ գործը կշահեր, եթե դրա փոխարեն ժողովածուին կցվեր գիտական առաջաբան, որի մեջ տրվեր բերված փաստաթղթերի ընդհանուր տեսությունը և ընթերցողի ուշադրությունը սրվեր առավել կարևոր հարցերի վրա։

Ժողովածուում հանդիպում ենք մի շարք փաստաթղթերի, որոնք մեր կարծիքով չպետք է հրատարակվեին այնտեղ, մանավանդ առանց վերապահումների։ Դա կարող է անփորձ ընթերցողին թյուրիմացության մեջ գցել և նույնիսկ ապակողմնորոշել։ Ընդհանրապես պետք է նշել, որ ժողովածուի նյութերը չեն ենթարկվել գիտական-թեմատիկ դասակարգման։ Հիմք է ընդունվել միայն ժամանակագրական կարգը (թեև փաստաթղթերի մեջ դա բազմիցս խախտվել է ու աղավաղվել) և հաճախ այս կամ այն պարտիական, ռևոլյուցիոն փաստաթուղթը կարելի է գտնել թշնամական բովանդակություն ունեցող փաստաթղթերի կույտի մեջ։ Պետք է պարզ ասել, որ բազմաթիվ փաստաթղթերի ընտրության ժամանակ կոպիտ կերպով խախտվել է լենինյան պարտիականության սկզբունքը, ոտնահարվել պատմական ճշմարտությունը և տուրք տրվել բուրժուական օբյեկտիվիզմին։ Այսպես, օրինակ, ժողովածուում զետեղված են դաշնակցական մի շարք փաստաթղթեր (№ № 168, 169, 170, 172, 173, 201 և այլն), որոնք աղճատելով իրականությունը, փորձում էին դաշնակցական դահիճներին ներկայացնել որպես «ժողովրդասերների»։ Ավելորդ է նաև էսէռական փաստաթղթերի (№ 33 և այլն) հրապարակումը։

---

[1] „Великая Октябрьская Социалистическая революция и победа Советской власти в Армении", Ереван, 1957, 681 стр.

Բոլորովին իզուր և բավականաչափ շատ տեղ է տրված բուրժուական Ժամանակավոր կառավարության Անդրկովկասյան օրգանների կազմման մասին փաստաթղթերին և էսեռա-մենշևիկյան գործիչների այնպիսի պաշտոնական գրագրություններին, որոնք դարձյալ կարող են ապակողմնորոշել ընթերցողին։ Օրինակ, ավելորդ էր զետեղել № 3 փաստաթուղթը՝ Անդրկովկասյան հատուկ կոմիտեի Երևանի նահանգական օրգան կազմելու մասին, բայց խիստ անհրաժեշտ էր հաղորդագրություն Երևանում բանվորական և զինվորական դեպուտատների Սովետ կազմելու մասին, որը դժբախտաբար չկա ժողովածուում։ Ի դեպ նկատենք, որ դրությունը համարյա այդպես է նաև Հայաստանի մյուս վայրերի Սովետների վերաբերյալ։

Մյուս կողմից՝ առանց վերապահումների հրատարակվել են «պաշտպանողական», էսեռա-մենշևիկյան, դաշնակցական Սովետների, պրոֆմիությունների և այլ հիմնարկների գործունեության մասին այնպիսի փաստաթղթեր, որոնք խաբուսիկ պատրանքներ են ստեղծում դրանց «ժողովրդայնության» մասին։ Օրինակ, ինչի համար է հրատարակվել (այն էլ առանց որևէ մեկնաբանության) № 118 փաստաթուղթը՝ Ժորդանիայի ստորագրությամբ, որտեղ խոսվում է ֆրոնտից վերադարձող զինվորական էշելոնների մասին։ Այստեղ ոչ միայն վարկաբեկվում են բոլշևիկները, այլև մենշևիկներն իրենց ձևացնում են որպես աշխատավորների ու զինվորների միակ պաշտպանը և իբր մտահոգված են էշելոնների անվտանգ վերադարձով։ Թե դա ինչ սուտ մեքենայություն էր, ցույց տվեց Շամխորի 1918 թվականի հունվարի կոտորածը, որին զոհ գնացին հազարավոր զինվորներ։ Չէ որ դրա կազմակերպողներից էին արյունոուշտ ու արգահատելի Ժորդանիան և Գեգեչկորին, որոնց կեղծ զեկուցագրերը զետեղված են ժողովածուում, իսկ Ստ. Շահումյանի՝ որպես Կովկասի Գործերի Ժամանակավոր Արտակարգ Կոմիսարի պաշտոնական բողոքը Ելիզավետպոլի իրադարձությունների մասին բոլորովին շրջանցված է։

Սխալ է նաև № 13 փաստաթղթի հրապարակումը, որտեղ բուրժուական Ժամանակավոր կառավարությունը անվանվում է «ռևոլյուցիոն» (էջ 26) և դա չի հերքվում նույնիսկ ծանոթագրության մեջ։

Պարզ է, որ դաշնակցական, էսեռա-մենշևիկյան նման փաստաթղթերի ընտրությունն ու հրապարակումը կատարվել է մեթոդոլոգիական արատավոր դիրքերից և միայն վատ ծառայություն է մատուցվել սովետական ընթերցողին։

Ժողովածուի էական թերություններից մեկն էլ այն է, որ ռևոլյուցիոն շարժումների վերաբերյալ համեմատաբար քիչ փաստաթղթեր են հրապարակվել։ Հատկապես անհանդուրժելի է, որ նախառևոլյուցիոն Հայաստանի արդյունաբերական կենտրոնների՝ Ալավերդու և Ղափանի վերաբերյալ ընթերցողը շատ կցկտուր տեղեկություններ է ստանում։ Ինչպես երևում է, ժողովածուն կազմողները և խմբագիրները շատ քիչ են մտահոգվել այդ ուղղությամբ։ Այլ կերպ նրանք կարող էին գտնել համապատասխան փաստաթղթեր և լույս ընծայել։

Պատասխանատվության և գործիմացության պակասությունը հատկապես զգացվում է մայիսյան ապստամբության վերաբերյալ նյութերում։ Գաղտնիք չէ, որ 1920 թվականի մայիսյան ապստամբությունն ամենախոշոր ու մասսայական ռևոլյուցիոն շարժումն է եղել Հայաստանում։ Ուստի, անհրաժեշտ էր հատուկ ուշադրություն դարձնել այս ժողովրդական ելույթի փաստական ճիշտ նկարագրության վրա։ Իսկ ինչ ենք տեսնում մենք ժողովածուում։ Արդարությունը պահանջում է ասել, որ, իհարկե, վերահրատարակված են մի շարք կարևորագույն փաստաթղթեր, բայց դրանց կողքին միաժամանակ, այն էլ առանց վերապահումների ու անհրաժեշտ ծանոթագրությունների, զետեղված են դաշնակցական, թշնամական բազմաթիվ հաղորդագրություններ (մեծ մասամբ լրագրային), որոնք օբյեկտիվ չեն և չէին կարող լինել և միայն չարամտորեն վարկաբեկում են մայիսյան ապստամբությունն ու բոլշևիկներին։ Հենց այդպիսին են №№ 219, 223, 224, 225, 226, 227, 230, 252 և այլ փաստաթղթեր, որոնք չպետք է հրապարակվեին, առավել ևս առանց կոմենտարիաների։ Ակներևորեն, ժողովածուի խմբագիրները այստեղ թույլ են տվել քաղաքական լուրջ սխալ։

Զարմանք է առաջացնում այն հանգամանքը, որ ժողովածուում տեղ չեն գտել մայիսյան ապստամբության վերաբերյալ եղած ու արդեն հայտնի բոլշևիկյան մի շարք փաստաթղթեր։ Օրինակ, ինչո՞ւ ժողովածուի մեջ չեն մտցվել Ալեքսանդրոպոլի Ռևկոմի և պարտիական աշխատողների 1920 թ. մայիսի 13-ի նիստի արձանագրությունը, Արմենկոմի զեկուցագիրը մայիսյան ապստամբության վերաբերյալ, Ս. Մուսայելյանի երրորդ զեկուցագիրը Կովկասի Երկրային Կոմիտեին (մյուս երկու զեկուցագրերի հաջորդականությունն էլ ժողովածուում խախտված է), Ալեքպոլի բոլշևիկյան կոմիտեի նամակները Արմենկոմին և այլն։ Կազմողներն ու խմբագիրները անտեսել են նաև Սովետական պետության Արտաքին գործերի կոմիսար Չիչերինի 1920 թ. հունիսի 4-ի դիմումը, ՌՍՖՍՌ-ի



ներկայացուցիչ Լեգրանի 1920 թ. օգոստոսի 16-ի և 26-ի նոտաները և այլն։

Շատ քիչ փաստաթղթեր են հրատարակվել Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների ու նրանց գործունեության վերաբերյալ։ Նույնիսկ չի օգտագործվել «Պրավդա»-ի հոդվածը Հայաստանի բոլշևիկների առաջին կոնֆերենցիայի մասին, բոլորովին մի կողմ է թողնվել նաև Ա. Միկոյանի և Ս. Կիրովի նամակագրությունը։ Չեն հրապարակվել Կովկասյան Երկրային Կոմիտեի դիմումը երկրամասի պարտիական կազմակերպություններին՝ ակտիվորեն մասնակցելու Սովետների Համառուսաստանյան II համագումարի աշխատանքներին, Կովկասյան Երկրային կոմիտեի բանաձևը՝ բոլշևիկյան պարտիայի Կենտկոմին լիակատար վստահություն հայտնելու մասին, Կովկասյան Երկրային Կոմիտեի 1919 թ. ապրիլյան, սեպտեմբերյան և դեկտեմբերյան կոչերը, ինչպես նաև 1920 թ. հունվարի 20-ի կոչը Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի բանվորներին, գյուղացիներին ու զինվորներին։ Չի օգտագործված բացառիկ կարևոր նշանակություն ունեցող մի այնպիսի փաստաթուղթ, ինչպիսին է ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեի 1920 թվականի մարտի 15-ի դիմումը Վրաստանի, Հայաստանի ու Ադրբեջանի աշխատավորության անունից Համառուսաստանյան Կենտգործկոմին, Ժողկոմսովետին, Կոմինտերնին ու Կարմիր Բանակին՝ օգնություն ստանալու և ներքին ու արտաքին հարստահարողների դեմ պայքարելու համար։ Չի բերված նաև Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի ու Հյուսիսային Կովկասի երիտասարդության անունից ՌԿԵՄ Անդրկովկասյան մարզային կոմիտեի կողմից 1920 թվականի ապրիլին գրած դիմումը Սովետական կառավարությանը։ Անտեսված է մի այնպիսի կարևոր փաստաթուղթ, ինչպիսին է Օրջոնիկիձեի և Կիրովի 1920 թվականի մայիսի մեկի հուշագիրը (Կովկասյան ֆրոնտի Ռազմա-ռևոլյուցիոն խորհրդի անունից) Հայաստանի դաշնակցական կառավարությանը։ Հոդվածի սահմանները թույլ չեն տալիս մեկ առ մեկ թվարկելու այն բոլոր նման փաստաթղթերը, որոնք տեղ չեն գտել ժողովածուում։

Այսպիսով, պարտիական կազմակերպությունների և ռևոլյուցիոն շարժումների մասին բերված փաստաթղթերն էլ լրիվ չեն կա՛մ ընտրված են ոչ ճիշտ։

Ժողովածուի կազմման ու խմբագրման նկատմամբ ոչ լուրջ վերաբերմունքը դրսևորվել է ոչ միայն նյութերի ընտրության, այլև նրանց վերնագրման, տարեթվերի, դեպքերի ու դեմքերի ճշտման, ծանոթագրման մեջ։ Այստեղ առկա են բազմաթիվ աղավաղումներ, անճշտություններ ու անորոշություններ։

Սկսենք ժողովածուի № 1 փաստաթղթից։ Դա ՌՍԴԲՊ(բ) Կենտկոմի Մանիֆեստն է հրատարակված 1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայի առթիվ։ Նախ այն պետք է ընդգծված կերպով վերնագրվեր «Ռուսաստանի բոլոր քաղաքացիներին» (ինչպես կոչվել է թռուցիկը) և ապա տրվեր ճիշտ մեկնաբանություն— «ՌՍԴԲՊ(բ) մանիֆեստը՝ ցարիզմի տապալման և բանվոր դասակարգի ու ռևոլյուցիոն բանակի խնդիրների մասին»։ Ավելի տարօրինակն այն է, որ այդ փաստաթուղթը ժողովածուում թվագրված է՝ 1917 փետրվարի 26, մինչդեռ «Մանիֆեստը» թռուցիկի ձևով հրատարակվել ու տարածվել է 1917 թվականի փետրվարի 27-ին, այսինքն՝ ցարիզմի տապալման օրը, ուստի և այն սկսվում է հետևյալ բառերով. «Քաղաքացիներ. Ընկան ռուսական ցարիզմի ամրոցները»։

№ 57 փաստաթուղթը («Ալեքսանդրոպոլի կայազորի զինվոր-գյուղացիների նակազը համառուսաստանյան գյուղացիական համագումարի դելեգատին») ժողովածուում թվագրված է 1917 թվականի սեպտեմբերի 23, այնինչ գյուղացիական դեպուտատների համառուսաստանյան առաջին համագումարը տեղի է ունեցել 1917 թվականի մայիս-հունիսին։ Դուրս է գալիս, որ 1917 թվականի սեպտեմբերին նակազ ստացած Ալեքսանդրոպոլի դելեգատը պետք է համագումարին ներկայանար նույն թվականի մայիս-հունիսին։ Ահա, նոր հետընթաց տարեգրություն։

№ 146 փաստաթղթում մատնանշվում է, որ Սովետական պետության Արտաքին գործերի ժողկոմ Չիչերինի 1918 թ. ապրիլի 13-ի հեռագիրը ուղարկված է եղել Թիֆլիսի գերմանական դեսպանին։ Բայց դա ճիշտ չէ, որովհետև այն ժամանակ Թիֆլիսում ու ողջ Անդրկովկասում չկար գերմանական դեսպան։ Հեռագիրն ուղարկված է եղել Անդրկովկասյան Սեյմի անունով և լույս է տեսել Վրաստանի մենշևիկյան կառավարության կողմից հրատարակված փաստաթղթերի ժողովածուում (1920 թ.)։ Փաստաթղթերի վերնագրի մեջ նույնպես կան անճշտություններ (էջ 195)։

№ 177 փաստաթուղթը՝ դա Երևանի երիտասարդ կոմունիստների («Սպարտակ») կազմակերպության կոչն է, որը հրատարակվել է առանձին թռուցիկով և ոչ թե «Սպարտակ» թերթի № 1-ում, ինչպես մատնանշված է ժողովածուում (էջ 266)։

№ 263 փաստաթղթում թույլ է տրված սխալ, որ իբր «ցարական ռեժիմի ժամանակ Հայաստանում համարյա գոյություն չի ունեցել հողային հարց» (էջ 376)։ Հարկավոր էր ծանոթա-

գրության մեջ ճիշտ կողմնորոշել ընթերցողին։

№ 280 փաստաթղթի հին սխալը չի ուղղված։ Բոլշևիկ-ռևոլյուցիոներ Լիպարիտ Մխչյանի անվան փոխարեն գնացել է սոսկ Մկրտչյան ազգանունը։ Ինչպես այս, այնպես էլ փաստաթղթում հիշատակված մյուս անունները չեն ծանոթագրված։

№ 379 փաստաթուղթը մեկնաբանվում է որպես ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյում ընդունված զեկուցում ու բանաձև, մինչդեռ դա Դիլիջանի գավառային կոմիտեի զեկուցագիրն ու բանաձևն է՝ ուղարկված Կովկասյան Բյուրո (այդ երևում է նույնիսկ փաստաթղթի բովանդակությունից)։

№ 393 և № 400 փաստաթղթերն էլ թվագրված են 1921 թ. ապրիլի 3 և երկուսի տակ էլ ստորագրում է Հայաստանի Ռևկոմի նախագահը, բայց մի դեպքում՝ Աթարբեկովը, իսկ մյուս դեպքում՝ Կասյանը։ Թյուրիմացությունից խուսափելու համար պետք է ցույց տրվեր, որ Գ. Աթարբեկովը Հայաստանի հյուսիսային շրջանների Ռևկոմի (այդպիսի օրգանի ստեղծումը թելադրվել էր դաշնակցական ավանտյուրայի լիկվիդացման անհրաժեշտությամբ) նախագահն էր (դրա համեմատ էլ պետք է ճիշտ վերնագրվեր առաջին փաստաթուղթը), Կասյանը՝ ընդհանուր Հայաստանի Ռևկոմի նախագահը։

№ 422 փաստաթուղթը, որը կրում է 1921 թ. հունիսի 24-ի տարեթիվը, վերնագրված է. «Հայաստանի ՍՍՌ-ի Ռևկոմի դեկրետը պարենհարկի մասին»։ Մինչդեռ այն ժամանակ Հայաստանում այլևս Ռևկոմ չկար, այլ Ժողկոմսովետ, ինչպես և ստորագրված է փաստաթղթի տակ։

№ 427 փաստաթուղթը, որը Չիչերինի հեռագիրն է Հայաստանի Ռևկոմի նախագահ Ս. Կասյանին, թվագրված է 1921 թ. հունիս։ Դա ճիշտ չէ, որովհետև ինչպես արդեն նշեցինք այդ ժամանակ Հայաստանում Ռևկոմ չկար, իսկ թուրքերը դեռևս 1921 թ. ապրիլից չկային Ալեքսանդրապոլում։ Ըստ երևույթին այդ փաստաթուղթը պետք է թվագրվի մինչև 1921 թ. փետրվարին տեղի ունեցած դաշնակցական ավանտյուրան։

№ 430 փաստաթուղթն ունի առնվազն արտառոց վերնագիր՝ «Աշխատավոր գյուղացիության ողջույնը Սովետական Հայաստանի կառավարությանը և Կարմիր Բանակին՝ Զանգեզուրում նստած դաշնակցականների պրովակացիայի առթիվ» և այլն։ Անհնար է բոլոր կոնկրետ սխալներն ու թերությունները թվարկել։

Ժողովածուին կցված ծանոթագրությունները խիստ անկատար են և բոլորովին չեն բավարարում ընթերցողի պահանջները։ Բազմաթիվ կարևոր հարցեր, դեպքեր ու դեմքեր չեն ծանոթագրված։ Այդ անթույլատրելի է մանավանդ այն ժամանակ, երբ խոսքը բոլշևիկներին է վերաբերում։ Օրինակ, № 118 փաստաթղթում մատնանշվում է, որ «Մյասնիկովի հրամանը չի վերաբերում Կովկասյան բանակին» (էջ 158)։ № 26 ծանոթագրության մեջ բնութագրվում է Ալ. Մյասնիկյանը, բայց ոչ մի խոսք չի ասվում նրա տվյալ հրամանի մասին։ Այսպիսի փաստեր ինչքան ուզեք։

Մյուս կողմից՝ կազմած ծանոթագրությունների մեջ էլ զգացվում է անտեղյակություն ու անփութություն։ Այսպես, օրինակ, № 51 ծանոթագրությունում մատնանշվում է, որ Ա. Մռավյանը Արմենկոմի անդամ է 1920 թվականի սեպտեմբերից, մինչդեռ պետք է լինի 1919 թվականի սեպտեմբերից։ Նույն կարգի սխալ կրկնվում է № 54 ծանոթագրությունում, որտեղ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների սեպտեմբերյան խորհրդակցությունը 1919 թվականից փոխադրվում է 1920 թվականը (էջ 649)։ Իրականությանը չի համապատասխանում նաև № 102 ծանոթագրության այն պնդումը, թե Բ. Բորյանը 1907 թ. ձերբակալվելով մնում է բանտում մինչև 1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիան։

№ 18 ծանոթագրության մեջ աղավաղված են մի շարք փաստեր և գերագնահատված է Բ. Ղարիբջանյանի դերը։

Ժողովածուի բացերից է նաև այն, որ վերջում չի տրված օգտագործված փաստաթղթերի ու նյութերի անվանացանկ։

Ժողովածուն ծանրաբեռնված է ընդհանուր և գործի հետ անմիջական առնչություն չունեցող բազմաթիվ նյութերով։

Թվում է ընդհանուր պատկերը պարզ է։ «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում» փաստաթղթերի ժողովածուն իր դրական կողմերի հետ միասին, ինչպես տեսանք, ունի նաև արատներ, անհանդուրժելի սխալներ ու թերություններ։ Ուստի, մեր կարծիքով պետք է համապատասխան աշխատանք կատարելուց հետո կազմակերպել նույն թեմայով փաստաթղթերի ժողովածուի նոր, գիտական հրատարակություն, մանավանդ, որ մոտենում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակը։ Դա կլինի արժանի նվեր պանծալի հոբելյանին։

Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

# ԳԻՐՔ ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ

Շնորհալի և խիստ օգտակար գործ է կատարել «Советский писатель» հրատարակչությունը՝ լույս ընծայելով սովետական անվանի ժուռնալիստ Միխաիլ Կոլցովի «Իսպանական օրագիրը»։

Որքա՜ն ջերմ և որքա՜ն կորովալի է գրված այդ գիրքը։

Լինելով գրչին կատարելապես տիրապետող ժուռնալիստ, հեղինակն այնպե՜ս ճշմարտացի և այնքա՜ն պատկերավոր է նկարագրում Իսպանիայի ժողովրդի ծանր կռիվները ֆաշիստների դեմ, որ ընթերցողը տարված ընթանում է նրա հետևից՝ Իսպանիայի խրամատներով, տագնապում է վիրավոր մարտիկների վերջին գոչյուններից, հրճվում է դեմոկրատիայի հաղթությամբ և վշտանում նրա պարտություններով։

1936 թվականին իտալո-գերմանական ֆաշիզմը փորձեց զենքի միջոցով խեղդել դեմոկրատական Իսպանիան, տապալել օրինական իշխանությունը։ Եվ ահա, Կոլցովի օրագիրը սկսվում է 1936 թվականի օգոստոսի 3-ից, երբ Մոսկվայի Կարմիր հրապարակում մասսայական միտինգ կայացավ մայրաքաղաքի աշխատավորների մասնակցությամբ։ Միտինգի մասնակիցներն ի լուր աշխարհի միաբերան հայտնեցին, որ սովետական ժողովուրդը օգնելու է դեմոկրատական Իսպանիային։

«Օրագրում» կարդում ենք, որ օգոստոսի 6-ին, օդանավակայանում, վաղ առավոտյան քաղում էին խոտ, որը տոթից սկսել էր դեղնել։ Երկինքն ամպամած էր, բայց չոր։ Ռժևի մոտ սքանչելի աճած կոլտնտեսային վուշը պայքարում է շոգի դեմ։

Այսպիսի հատակ, գեղեցիկ պատկերներով լի է «Իսպանական օրագիրը», որը մի ամբողջ ժողովրդի ռևոլյուցիոն ոգորումների և միջազգային ֆաշիստական հորդաների դեմ մղվող անհավասար մարտերի մարտիրոսագրությունն է։ Մարտիրոսագրություն, որում հարյուրավոր աննշան ու նշանավոր մարդիկ, բազմաթիվ
հասարակական-քաղաքական կազմակերպու-
թյուններ իրենց խիստ յուրահատուկ ձնութա-
գրումն ու գնահատականներն ունեն։

Օգոստոսի 8-ին Կոլցովը օդանավով իջնում է իսպանական հողի վրա։ Նրան առաջնորդում են Կատալոնիայի ռազմա-օդային ուժերի պետի մոտ։ Այդ վայրկյանից սկսվում է սովետական ժուռնալիստի, «Պրավդա»-ի թղթակցի ռազմական մկրտությունը։ Նա անցնում է Սանդինոյի փողոցներով, որոնք ամրացված են բարիկադներով. բարիկադները շինված են բամբակներով լեցուն պարկերով և քարերով։ Այժմ նա մտնում է մի խոշոր քաղաքի, որը «բարձր վերելքի, երջանկության և խելահեղության օրեր է ապրում։ Դա իսպանական Նյու-Յորքն է՝ Բարսելոնը, Միջերկրական ծովի ամենագողտրիկ գեղեցկուհին։ Ահա նրա արմավենիների շլացնող բուլվարները, նրա հսկայական պողոտաները, ֆանտաստիկ դղյակները, որոնք վերականգնել են բյուզանդական և Բոսֆորի տաճկական պալատների ճոխությունը։ Փողոցները հեղեղված են մարդկանցով, որոնք ընթանում են Բակունինի, Լենինի և Ժորեսի նկարներով» և այլն։

«Իսպանական օրագրում» նախ և առաջ աչքի է զարնում հեղինակի սուր դիտողականությունը։ Նա նկատում է հասարակական կյանքի այնպիսի կարևոր «մանրուքներ», որոնք բնորոշում են քաղաքական իրադարձությունների ներքին մեխանիզմը, հակաֆաշիստական ուժերի թուլությունն ու մեծ արժանիքները։

Այստեղ Կոլցովը հանդես է գալիս ո՛չ միայն որպես միջազգային քաղաքական կյանքի լավագույն գիտակ և բազմակողմանի զարգացած էրուդիտ, այլև որպես գրող ու արվեստագետ, որը երբեք չհեռանալով պատմությունից, վերակերտում է այն այնպիսի վարպետությամբ, որ ընթերցողը հրապուրվում է հենց առաջին էջից։ Բնորոշ է, որ Կոլցովի «օրագիրը» լինելով 1936—1937 թվականների ճշգրիտ տարեգրություն, իր ռոմանտիկական պաթոսում անմահացրել է ժողովուրդ-հերոսին և նրա առաջնորդ Իսպանիայի կոմունիստական պարտիային։

Անկեղծ ջերմությամբ և արժանի դրվատանքով ուրվագծված են միջազգային դեմոկրատիայի բոլոր կամավորական զորախմբերը, որոնք հերոսաբար կռվեցին Մադրիդի պաշտպանության համար։ Մեծարելով ֆաշիզմի դեմ մաքառող անվեհեր մարտիկներին, Կոլցովը միշտ էլ նշում է ռազմավարության բնագավառում եղած սխալներն ու թերությունները։ Հեղինակի սուր աչքից չեն վրիպում իսպանական

կան ճյուղերի վերականգնման ու զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության աճման պրոցեսը։

Ժողովածուն կազմողների (խմբագրությամբ՝ Ա. Մարուխյանի) ջանքերով տարբեր արխիվներից հանվել ու տեսակավորվել են բազմաթիվ արժեքավոր վավերագրեր. օգտագործված է մոտ 50 արխիվային ֆոնդ։ Ժողովածուում զետեղված է 284 փաստաթուղթ, որոնց ճնշող մասը, բացի դեկրետներից, հրապարակվում է առաջին անգամ. բացի այդ, այստեղ տեղավորված են 1929 թվականի մի քանի փաստաթղթեր, որոնք պարունակում են անհրաժեշտ տվյալներ վերականգնման շրջանի արդյունքների մասին։

Ստվարածավալ ժողովածուի սկզբում տեղավորված են Հայաստանը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա հռչակելու մասին Դեկլարացիան, Հայաստանի Ռևկոմի ողջույնը Վ. Ի. Լենինին, Հայաստանի Ռևկոմի նախագահին հղած Վ. Ի. Լենինի հեռագիրը, Ի. Վ. Ստալինի՝ «Կեցցե՛ Սովետական Հայաստանը» հոդվածը, Կովկասի կոմունիստներին Վ. Ի. Լենինի գրած նամակը։ Այդա ժամանակագրական կարգով ժողովածուի տասնմեկ բաժիններում սիստեմավորված են փաստաթղթերը։

Առաջին բաժնում զետեղված են այն փաստաթղթերը, որոնք ցույց են տալիս Հայաստանի տնտեսական վերածննդի գործում Սովետական Հայաստանի կառավարության ու Կոմունիստական պարտիայի առաջին միջոցառումները. հրապարակված են Սովետական կառավարության առաջին դեկրետներն ու հրամանները, Հայաստանի Կոմպարտիայի համագումարների և կոնֆերանսների բանաձևերն ու որոշումները։ Ահա Հայաստանի Ռևկոմի դեկրետները՝ արդյունաբերական ձեռնարկությունների, երկաթուղիների, բանկերի ազգայնացման, հողը, անտառները, ջրերը և ընդերքը համաժողովրդական սեփականություն դարձնելու, հողային ռեֆորմի անցկացման մասին և այլն։

Հաջորդ բաժնում եղած վավերագրերը պատմում են Հայաստանի ժողովրդական տնտեսության վերականգնման ուղղությամբ ՌՍՖՍՌ և մյուս սովետական ռեսպուբլիկաների եղբայրական անշահախնդիր օգնության և աջակցության մասին։ Այդա ինը բաժիններում՝ ըստ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի, տեղավորված են մնացած փաստաթղթերը։ Վերջում՝ հավելվածով տրված են աշխարհագրական տեղանունների ցանկը, օգտագործված փաստաթղթերի և ֆոնդերի ցուցակը և այլն։

«Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնումը» ժողովածուի լույս ընծայումը խրախուսանքի արժանի գործ է։ Հրապարակված վավերագրերը ընթերցողին ակնառու կերպով ծանոթացնում են Հայաստանի սոցիալիստական էկոնոմիկայի բուռն զարգացման առաջին արդյունքներին՝ վերականգնման շրջանի արդյունքներին։ Վերոհիշյալ ժողովածուն հավաստի աղբյուր է ծառայելու այն պատմաբաններին ու տնտեսագետներին, որոնք առաջիկայում գրելու են Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության պատմությունը։

---



Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении. тел. 2—03—18, 2—56—92, 2—04—66.



ՎՖ 06657 Պատվեր 2256 Տիրաժ 6400

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 20/IX 1958 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

Գինը 2 ռ. 50 կ.

# ВНИМАНИЕ!

## В МАГАЗИНАХ АРМКНИГОТОРГА ПРОДАЕТСЯ НИЖЕСЛЕДУЮЩАЯ ЛИТЕРАТУРА НА РУССКОМ ЯЗЫКЕ:

**Эльчибекян А. М.**—"Великая Октябрьская Социалистическая революция и победа Советской власти в Армении", АН Арм. ССР, 1957 г., цена 4 руб.

**Иоанисян А. Р.**—„Присоединение Закавказья к России и международные отношения в начале XIX века", АН, Арм. ССР, 1958 г., цена 13 руб. 40 коп.

**Карапетян А.**—"Против иррационализма в философии и искусствоведении", Айпетрат, 1957 г., цена 10 руб. 40 коп.

**Тахтаджян А.**—„Флора Армении", т.3, АН Арм. ССР, 1958 г., цена 12 руб.

**Арисян Л.**—„Из истории теории познания", Айпетрат, 1957 г., цена 4 руб. 40 коп.

**Гюрджян Г. М.**—"Альбом репродукции", Издательство „Советский художник", 1957 г., цена 6 руб. [illegible]0 коп.

**„Антология армянской советской литературы"**, Айпетрат, 1957 г., цена 24 руб.

**Гайфеджян В., Саркисян А.**—„Геворк Башинджагян", Айпетрат, 1957 г., цена 2 руб. 70 коп.

**„Братство"**— литературно-художественный сборник писателей Закавказья, Айпетрат, 1957 г., цена 13 руб. 10 коп.

**Дурново Л.**—„Краткая история древнеармянской живописи", Айпетрат, 1957 г., цена 9 руб. 15 коп.

**Саркисян С. К.**—„Аграрная политика османского правительства в Западной Армении", Айпетрат, 1957 г., цена 2 руб. 45 коп.

**Мурадян Н.**—„Армянская советская музыкальная культура", АН Армянской ССР, 1957 г., цена 2 руб.

**ГРАЖДАНЕ!**

**ПРИОБРЕТАЙТЕ НУЖНУЮ ВАМ ЛИТЕРАТУРУ.**

УПРАВЛЕНИЕ КНИЖНОЙ ТОРГОВЛИ